ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1964 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



---

# ՄԵԾ ԱՆԵԼԻՔՆԵՐ, ՎԱՌ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Նոր տարվա, 1964 թվականի սկիզբը մեր ռեսպուբլիկայի աշխատավորու- թյան կյանքում համընկավ քաղաքական ու աշխատանքային մեծ վերելքի հետ: Հունվարի 7-ից 8-ը տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարը, որը լսեց ու քննարկեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քար- տուղար ընկ. Յա. Ն. Զարոբյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմու- նիստական պարտիայի Կենտկոմի 1961 թվականի նոյեմբերից մինչև 1964 թվականի հունվարն ընկած ժամանակամիջոցի գործունեության մասին և նրա կատարած աշխատանքը գտավ բավարար: Համագումարը նաև լսեց ու քննար- կեց Հայաստանի կոմպարտիայի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկու- ցումը, ընտրեց ՀԿՊ Կենտրոնական կոմիտեի և վերստուգիչ հանձնաժողովի նոր կազմ:

Համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում մեծ տեղաշար- ժեր են տեղի ունեցել մեր երկրի կյանքում: Իրագործելով ՍՄԿՊ XXII համագու- մարի, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների պատմական որոշումները, ռեսպուբլիկա- յի պարտիական կազմակերպությունները խոշոր հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում: Դրանք առանձնապես ակնառու են արդյունաբերության զարգացման ասպարեզում:

Արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1962 թվականին կատարվեց 102,7, իսկ 1963 թվականին՝ 102 տոկոսով. արդյունաբերական արտադրանքի ծավալը, նախորդ երկու տարիների համեմատ, համապատաս- խանաբար աճել է 9,4 և 9,2 տոկոսով: Այդ աճը ձեռք է բերվել ինչպես արտա- դրական պրոցեսների կատարելագործման, ներքին ռեզերվների լավագույն օգտագործման, այնպես էլ արտադրական նոր կարողությունների գործարկ- ման հաշվին:

Ռեսպուբլիկայում հատկապես արագ տեմպերով են զարգացել արդյունա- բերության առաջատար ճյուղերը՝ քիմիական, հանքային արդյունաբերությու- նը, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը և գործիքաշինությունը:

Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է երկու անգամ, իսկ 1961 թվականի համեմատությամբ՝ 43 տոկոսով: Իրենց հետագա զարգացումը ստացան ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան, հանքարդյունաբերությու- նը, մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական, ռադիոէլեկտրոնային, սար- քաշինական, թեթև ու սննդի արդյունաբերությունը: Մեծ չափով զարգացել է ռեսպուբլիկայի էներգետիկ բազան: 1963 թվականին (1961 թվականի համե- մատությամբ) ավելի է արտադրվել՝ կաուչուկ 10 տոկոսով, մետաղահատ հաս- տոցներ՝ 46, էլեկտրաշարժիչներ՝ 53, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկ-

ցիաներ և դետալներ՝ 63, տրիկոտաժեղեն՝ 17, կահույք՝ 12 տոկոսով և այլն:

Վերջին երկու տարում գործարկվեցին 42 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և արտադրամասեր, այդ թվում Կիրովականի մետաքսաբերքի գործարանը, Ազարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, Երևանի և Կիրովականի ջերմա-էլեկտրակայանները և այլն: Կառուցվել և շահագործման են հանձնվել 53 հազար բնակարան, 50 դպրոց, նոր հիվանդանոցներ 1100 մահճակալով, նախադպրոցական հիմնարկություններ՝ 5000-ից ավելի տեղով, բազմաթիվ գյուղատնտեսական օբյեկտներ: Իրենց հետագա զարգացումն են ստացել երկաթուղային, ավտոմոբիլային և օդային տրանսպորտը, կապի միջոցները:

Արդյունաբերության մեջ զբաղված պրոֆեսիոնալ բարձր վարպետություն ունեցող ինժեներա-տեխնիկական կադրերի, բանվորների, արտադրության կազմակերպիչների, հազարավոր ռացիոնալիզատորների ու գյուտարարների ջանքերով յուրացվել է ավելի քան 200 տիպի ժամանակակից մեքենաների, հաստոցների, սարքերի, բազմաթիվ նյութերի ու առարկաների արտադրությունը: Աճել է ռեսպուբլիկայի բանվոր դասակարգը, պատրաստվել է ավելի քան 44 հազար նոր բանվոր և բարձրացվել է մոտավորապես 69 հազար մարդու որակավորումը:

Համագումարում ըստ արժանվույն նշվեց և բարձր գնահատվեց մեր արդյունաբերության առաջավորների, կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների հայրենանվեր աշխատանքը:

Համագումարի ամբիոնից հպարտորեն հնչեցին ընկ. Յա. Ն. Զարոբյանի այն խոսքերը, որ «Սովետական Հայաստանի արդյունաբերության բուռն զարգացումն այժմ այնպիսի որակական մակարդակի է հասել, որ մեր շատ ձեռնարկություններ իրենց արտադրանքի բարդությամբ կանգնել են արդի համաշխարհային արդյունաբերության բարձր տեխնիկա ունեցող ձեռնարկությունների շարքում»:

Այժմ Հայաստանի ձեռնարկությունների դրոշմը կրող 100 անուն արդյունաբերական արտադրանք արտահանվում է աշխարհի 57 երկրներ: Սա վկայում է այն հսկայական թռիչքի մասին, որ կատարել է Հայաստանը նախասովետական շրջանի աղքատությունից ու հետամնացությունից մինչև առաջնակարգ ինդուստրիալ պետությունը:

Սակայն որքան էլ մեծ են մեր հաջողությունները, մենք չենք կարող հանգստանալ ձեռք բերածով, առավել ևս անտեսել թերությունները ու բացերը:

Համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ հանգամանորեն բացահայտվեցին այն լուրջ թերությունները, որ դեռևս կան ռեսպուբլիկայի արդյունաբերության առանձին ճյուղերում: Բավական է ասել, որ 1962 թվականին ժողտնտխորհի 31, իսկ 1963 թվականին 34 արդյունաբերական ձեռնարկություններ չկատարեցին իրենց պլանները և երկրին պարտք մնացին 33,6 միլիոն ռուբլու արտադրանք: Բազմաթիվ ձեռնարկություններում անբավարար են կատարվում աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները: Տակավին մեզ չի բավարարում լայն սպառման ապրանքների որակը: Համագումարը նշեց, որ ժողտնտխորհը, պարտիայի քաղկոմները, շրջկոմները, արդյունաբերական կոմիտեները և սկզբնական պարտիական կազմակերպությունները թույլ են վերահսկում արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը:

Համագումարը սահմանեց ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգաց-







ման գլխավոր ուղղությունները ու կարևորագույն խնդիրները, անհրաժեշտ համարելով 1964—1965 թվականներին ապահովել ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության առնվազն 26 տոկոս աճ: Համագումարը միաժամանակ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց ավելի ուժեղացնել կազմակերպչական աշխատանքը արդյունաբերական ձեռնարկություններում, ծավալել սոցիալիստական մրցություն՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով պետական պլանները, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ և որակով կատարելու համար:

Ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի աճող պահանջմունքները բավարարելու նպատակով համագումարը խնդիր դրեց արագացնել Տաթևի հիդրոէլեկտրակայանի, Հրազդանի ջերմաէլեկտրակայանի շինարարությունը, ավարտել Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանների կառուցումը, արագացնել Արփա գետի ջրերը Սևանա լիճը շուռ տալու աշխատանքները: Առանձնապես լայն զարգացում է ստանալու քիմիական արդյունաբերությունը, որը, համաձայն ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, ընթանալու է հանքային պարարտանյութերի, սինթետիկ կաուչուկի, թելերի, նոր պոլիմերների, պլաստմասսաների ստացման համար օգտագործվող նյութերի, ապակեպլաստիկների և այլ նյութերի արտադրությունն ավելացնելու ուղիով:

Համագումարը կոնկրետ խնդիրներ առաջադրեց ռեսպուբլիկայի արդյունաբերության, շինարարության աշխատողներին, պարտիական կազմակերպություններին՝ բոլոր գծերով ապահովելու յոթնամյակի վերջին երկու տարվա պլանների հաջող կատարումը:



Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում զգալի տեղաշարժ է կատարվել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ: 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, ծխախոտի արտադրությունն ավելացավ 45, բանջարեղենինը՝ 29,8 տոկոսով, ավելացավ նաև հացահատիկի, կաթի, ձվի և այլ մթերքների արտադրությունը, հանրային անասունների ու թռչունների գլխաքանակը: 1963 թվականին կլիմայական աննպաստ պայմանների հետևանքով չապահովվեց բամբակի, ծխախոտի, խաղողի, պտուղների արտադրության աճը: Վերջին երկու տարում չեն կատարվել գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության պլանները, հատկապես կրճատվել է կարտոֆիլի արտադրությունը, լրիվ չափով չեն կատարվել խաղողի ու պտղատու այգիների ընդլայնման յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները: Առկա են ոռոգման ջրի, հանքային և օրգանական պարարտանյութերի ոչ ռացիոնալ օգտագործման բազմաթիվ փաստեր: Փոքր չէ հետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների թիվը, որտեղ ցածր է աշխատանքի արտադրողականությունը, բարձր է արտադրանքի ինքնարժեքը: Նման տնտեսություններում գործի գլուխ են կանգնած մարդիկ, որոնք ընդունակ չեն ապահովելու արտադրության վերելքը: Գյուղատնտեսական արտադրության մեջ թույլ են արմատավորվում գիտության նվաճումները ու առաջավորների փորձը:

Հանգամանորեն քննարկելով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև

ծառացած խնդիրները, համագումարը պարտիական և գյուղատնտեսական օրգաններին պարտավորեցրեց ձեռնարկել կոնկրետ միջոցներ, որոնք ապահովեն կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից 1964—1965 թվականների պլանների անվերապահ կատարումը:

Համագումարը նշելով գյուղատնտեսության առանձին ճյուղերի զարգացման կոնկրետ ուղիները, խնդիր դրեց հասնել գյուղատնտեսական մթերքների արտադրության այնպիսի մակարդակի, որպեսզի 1964 թվականին պետությանը վաճառվի և հանձնվի 60 հազար տոննա, իսկ 1965 թվականին՝ 65 հազար տոննա հացահատիկ, համապատասխանաբար 110 հազար տոննա և 115 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 13 հազար տոննա և 14 հազար տոննա ծխախոտ, 28 հազար տոննա և 41 հազար տոննա կենդանի քաշով անասուններ ու թռչուններ, 155 հազար տոննա և 170 հազար տոննա կաթ, 62 միլիոն և 70 միլիոն հատ ձու, 4,3 հազար տոննա և 4,3 հազար տոննա բուրդ:

Մեր ռեսպուբլիկայի պայմաններում խիստ կարևոր նշանակություն ունի ոռոգելի հողատարածության ընդլայնման մասին ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների կենսագործումը: 1964—1965 թվականներին ոռոգելի սիստեմների կառուցմանը ավելի շատ կապիտալ միջոցներ են տրամադրվելու, քան անցած հինգ տարիներում: Մոտ ապագայում, 1963 թվականի համեմատությամբ ոռոգելի հողատարածությունները կավելանան 180 հազար հեկտարով: 1965 թվականին խաղողի այգիների տարածությունը կհասնի 45 հազար հեկտարի. ավելանալու են ծխախոտի, խորդենու և բանջարաբոստանային կուլտուրաների տարածությունները:

Համագումարը Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությանը, կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություններին և պարտիական կոմիտեներին պարտավորեցրեց արմատապես բարելավել գյուղատնտեսության, հատկապես ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարումը, խորամուխ լինել նրանց տնտեսական գործունեության մեջ և, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության առանձնահատկությունները, մշակել ու իրագործել կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովեն հանրային արտադրության կազմակերպական-տնտեսական ամրապնդումը:

Համագումարը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է վերացնել կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման լուրջ թերությունները, այդ պոստերում առաջ քաշել ընդունակ կազմակերպիչների, նախ և առաջ գյուղատնտեսության մասնագետներից, որոնք կարողանան ապահովել գյուղատնտեսական արտադրության զարգացման բարձր տեմպեր, հանրային տնտեսության շահութաբեր վարում, աշխատանքի ճիշտ կազմակերպում և գյուղատնտեսության աշխատավորների նյութական բարձր շահագրգռվածություն:

«Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության պատվի գործն է,— հաշվետու զեկուցման մեջ ասաց ընկ. Զարոբյանը,— հաջողությամբ կենսագործել ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի որոշումները և մոտակա տարիներս հասնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի»:



Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարը նշեց այն հաջողությունները, որ վերջին երկու տարում ձեռք են բերվել աշխատավորության նյութական բարեկեցության և նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման բնագավառում: Բավական է ասել, որ բնակչության սոցիալ-կուլտուրական կարիքների համար պետական հատկացումները, 1958 թվականի համեմատությամբ, 1963 թվականին ավելացան մոտ երկու անգամ, իսկ ռեսպուբլիկայի ազգային եկամուտը յոթնամյակի անցած տարիներին աճեց 45 տոկոսով: Աճում են բանվորների և կոլտնտեսականների դրամական եկամուտները: Տարեցտարի ավելանում են պետական հատկացումները լուսավորության, առողջապահության զարգացման և բնակչության կենսաթոշակային ապահովության նպատակով: Համագումարը տվեց աշխատավորների նյութական բարեկեցության, առողջապահության, ժողովրդական կրթության գործի հետագա բարելավման կոնկրետ ծրագիր:

Համագումարը պարտիական կոմիտեներին, քաղկոմներին, ժողովրդական կրթության օրգաններին պարտավորեցրեց առաջնահերթ ուշադրություն դարձնել երեխաների հանրակրթական պատրաստությանը, բարելավել նրանց ուսուցման և կոմունիստական դաստիարակության գործը, աշակերտների գաղափարական-քաղաքական և գեղարվեստական դաստիարակությունը, վերացնել դպրոցներից աշակերտների մաղումը, բարելավել աշակերտների արտադրական ուսուցումը:

Պարտիական ու սովետական կազմակերպությունները պետք է իրագործեն ուսուցիչների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման լայն միջոցառումներ, ամենօրյա հոգատարություն հանդես բերեն ուսուցչի, նրա գաղափարական-քաղաքական և պրոֆեսիոնալ աճի նկատմամբ:

Վերջին երկու տարում ռեսպուբլիկայում տեղի է ունեցել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության քանակական ու որակական աճ: Բուհերի և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը երկու տարում ավելացել է 18 տոկոսով և հասել՝ 50 հազար մարդու:

Սակայն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների գործունեության մեջ լուրջ թերություններ կան: Դեռևս ցածր է ուսանողների առաջադիմությունը, դասախոսներն անբավարար են մասնակցում ուսանողների կոմունիստական դաստիարակության գործին: Համագումարը բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցների գլխավոր խնդիրը համարեց ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի համար մասնագետների պատրաստման գործի հետագա բարելավումը, սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը:

Նշելով ռեսպուբլիկայի գիտնականների կատարած լուրջ հետազոտությունները ժամանակակից գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառներում, համագումարը նրանց առաջնակարգ խնդիրը համարեց բոլոր ուժերն ուղղել ժողովրդական տնտեսության զարգացման և աշխատավորների բարեկեցության համար կարևոր նշանակություն ունեցող առավել հրատապ գիտական պրոբլեմների լուծմանը:

Հայաստանի կոմպարտիայի համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացման, անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների վերացման և պարտիական կյանքի լենինյան նորմերի լրիվ վերականգնման վերաբերյալ ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների որոշումների իրականացման ուղղությամբ: ՍՄԿՊ Կենտկոմն իր ամենօրյա ղեկավարությամբ մեծ օգնություն է ցույց տալիս Հայաստանի պարտիական կազմակերպությանը:

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումների հիման վրա կատարված արտադրական սկզբունքով պարտիական օրգանների վերակառուցումը պարտիական կազմակերպություններին հնարավորություն տվեց հաղթահարել աշխատանքի հնացած ձևերն ու մեթոդները, կազմակերպչական, կենդանի և անմիջական աշխատանք կատարել ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, սկզբնական պարտիական կազմակերպություններում:

1961 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1964 թվականի հունվարի 1-ը Հայաստանի կոմպարտիան աճել է ավելի քան 11,300 մարդով և այժմ իր շարքերում ունի 98.344 կոմունիստ: Նրանց ավելի քան 60 տոկոսն այժմ զբաղված է նյութական արտադրության ոլորտում, իսկ 50 հազարից ավելի կոմունիստներ բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեն:

Պարտիական-քաղաքական աշխատանքում այնուամենայնիվ էական թերություններ կան: Պարտիական որոշ կոմիտեներ տակավին չեն հրաժարվել ժողովրդական տնտեսության ղեկավարման հնացած ձևերից, մակերեսորեն են ղեկավարում սկզբնական-պարտիական կազմակերպություններին, տարվում են նիստերով: Առանձին պարտկոմներում երբեմն թույլ են տրվում պարտիական կյանքի նորմերի, պարտիական ղեկավարության սկզբունքների, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման լենինյան սկզբունքների կոպիտ խախտումներ, կազմակերպչական աշխատանքը փոխարինում են դեկլարատիվ որոշումներով: Կան դեպքեր, երբ հաշտվում են առանձին կոմունիստների կողմից պարտիական ու պետական կարգապահության կոպիտ խախտումների հետ, բռնում պարտիայի ու պետության խաբելու ուղին, զբաղվում աշխատանքի ... pardon

Համագումարը խնդիր դրեց կատարելագործել պարտիական աշխատանքի մեթոդներն ու ձևերը, բարձրացնել պարտիական մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը, խստորեն պահպանել պարտիական կյանքի լենինյան նորմերը:

Համագումարը Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմին, Մինիստրների սովետին, ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական բոլոր օրգաններին հանձնարարեց խիստ կարգ հաստատել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման գործում, պետական ապարատի աշխատանքում վճռականորեն արմատախիլ անել բյուրոկրատիզմը, ֆորմալիզմը և քաշքշուկը:

Համագումարն արձանագրեց, որ պարտիական կազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի և պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, նկատելիորեն բարելավել են գաղափարական աշխատանքը, ընդլայնել նրա ոլորտը, կիրառել են մասսաների քաղաքական լուսավորության նոր, ավելի կատարյալ ձևեր: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները նկատելիորեն բարելավել են կադրերի տնտեսագիտական ուսուցումը: Ընթացիկ ուսումնական տարում քաղաքական լուսավորության ցանցի 210 հազար ունկնդիրներից գրեթե 84,5 հազար մարդ կամ 42 տոկոսը ընդգրկվել են տնտեսագիտական ուսուցման զանազան օղակներում: Լայն զարգացում են ստացել քաղաքական ու արտադրական պրոպագանդայի այնպիսի մասսայական ձևեր, ինչպիսիք են՝ կոմունիստական աշխատանքի դպրոցները, տեխնիկական ու գյուղատնտեսական գիտելիքների ժողովրդական համալսարանները, արտադրական ուսուցման դպրոցներն ու դասընթացները, կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրման խմբակները, դպրոցները և այլն:

Սակայն գաղափարական ճակատում դրական արդյունքների հետ մեկտեղ, դեռևս քիչ չեն թերությունները և, բնականաբար, շատ են մեր անելիքները: Մինչև վերջ չեն հաղթահարվել կյանքից գաղափարական աշխատանքի կտրվածությունը, ֆորմալիզմը, դեռևս թույլ է գաղափարական աշխատանքի ազդեցությունը տնտեսական խնդիրների լուծման վրա: Բանվորների, կոլտնտեսականների և ծառայողների որոշ մասը գաղափարական ներգործության ոլորտից դուրս է:

Համագումարը ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների ոգով արմատապես բարելավել քաղաքական աշխատանքը, աշխատավորների ջանքերը մոբիլիզացնել պարտիայի քաղաքականությունը կենսագործելու համար, նոր լիցք հաղորդել կոմունիզմի ակտիվ ու գիտակից կառուցողների դաստիարակման գործին, ապահովել գաղափարական և կազմակերպական աշխատանքի միասնությունը, լիովին հաղթահարել կյանքից, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրներից քաղաքական աշխատանքի կտրվածությունը:

Ձնայած մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության աշխատանքում եղած որոշ տեղաշարժերին, նրանց գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ: Թերթերը, ամսագրերը, ռադիոն, հեռուստատեսությունը քննադատության մշտական կրակի տակ չեն պահում այն ամենը, ինչ արգելակում է մեր առաջընթացը, սովետական մարդկանց խանգարում ապրելու և աշխատելու կոմունիստաբար: Լուրջ թերություններ կան հրատարակչությունների, գրքի առևտրի կազմակերպությունների ու պոլիգրաֆ արդյունաբերության աշխատանքում:

Համագումարը մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության օրգանների հիմնական խնդիրը համարեց՝ աշխատանքի դրական փորձի լայն պրոպագանդան, ժողովրդատնտեսական պլանների կատարման համար ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեության և աշխատավորների հերոսական առօրյայի խոր լուսաբանումը, պայքարը լճացածության, բյուրոկրատիզմի ու պահպանողականության դեմ:

Համագումարը խնդիր դրեց ամեն կերպ ընդլայնել ու ամրապնդել արտասահմանի առաջադեմ հայ աշխատավորների հետ մեր ունեցած կապերը, ուժեղացնել գաղափարական ազդեցությունը նրանց և, հատկապես, երիտասարդության վրա, առաջադիմական կազմակերպություններին օգնություն ցույց տալ ռեակցիոն ուժերի դեմ մղվող պայքարում:

Նշելով այն հաջողությունները, որ ձեռք են բերել ռեսպուբլիկայի գրողնե-
րը, նկարիչները, կոմպոզիտորները, համագումարը վեր հանեց այն լուրջ թե-
րությունները, որոնք կան գրականության ու արվեստի բնագավառում։ Հա-
յաստանի գրողների միությունն իր աշխատանքը դեռևս չի վերակառուցել
պարտիայի առաջադրած խնդիրներին համապատասխան։

Գրողների միությունն ու գրական մամուլը միշտ չէ, որ ներգործուն ու
օրակյալ օգնություն են ցույց տվել գրողներին՝ նրանց ստեղծագործություն-
ների գաղափարական-գեղարվեստական մակարդակի բարձրացման գործում.
մի շարք դեպքերում պարտիական սկզբունքայնություն հանդես չի բերվել
գրական որոշ երկեր գնահատելիս։

Համագումարը պարտիական կոմիտեներին պարտավորեցրեց բստ ամե-
նայնի բարելավել ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի շրջա-
նում կատարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, ապահո-
վել նրա ակտիվ մասնակցությունը կոմունիստական շինարարությանը։



ՀԿՊ XXIII համագումարը ցուցադրեց ռեսպուբլիկայի պարտիական կազ-
մակերպության, բոլոր կոմունիստների անխախտ միասնությունը, սերտ հա-
մագործակցությունը Սովետական Միության կոմունիստական պարտիայի,
ընկ. Ն. Ս. Խրուշչովի գլխավորած Կենտրոնական կոմիտեի շուրջը, արտա-
հայտեց նրանց վճռական կամքը պարտիայի որոշումները մինչև վերջ կեն-
սագործելու, կոմունիզմի կառուցման ասպարեզում նոր նվաճումների հասնե-
լու գործում։

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարից հետո
կարճ ժամանակ է անցել։ Բայց նրա որոշումների քննարկումները արդյունա-
բերական ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում,
սովխոզներում և ուսումնական, գիտական հաստատություններում վկայում են
այն մասին, որ համագումարը աշխատանքային և քաղաքական ակտիվու-
թյուն է առաջ բերել աշխատավորության շրջանում, նոր լիցք է հաղորդել մեր
բանվորներին, կոլտնտեսականներին, ինտելիգենցիային՝ կոմունիզմի կա-
ռուցման համար նրանց ամենօրյա պայքարում։

Ձեռնամուխ լինելով համագումարի որոշումների կենսագործմանը, Հա-
յաստանի կոմունիստները, մեր բոլոր աշխատավորները, ոգևորված երկրի
զարգացման վառ հեռանկարներով, ջանք չեն խնայի պարտիայի առաջադրած
մեծ ու հոյակապ խնդիրները հաջողությամբ լուծելու։



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱԶԳԱՅԻՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ՓՈԽՀԱՐՍՏԱՑՈՒՄԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

*Համարյա կես դար է անցել այն ժամանակներից, երբ մեր երկրում իշխում էին կապիտալիստներն ու կալվածատերերը, երբ ցարական ինքնակալությունը, մեծ Լենինի դիպուկ արտահայտությամբ, Ռուսաստանը վերածել էր «ժողովուրդների բանտի» ու վարում էր ազգային ձուլման, ռուսացման չքողարկված քաղաքականություն։ Կայսրության տերիտորիայում ապրող տասնյակ ազգերի ու ազգությունների լեզուներն ստորացված էին ոչ պաշտոնական, «տեղական» լեզուների աստիճանի, որը նրանց քաղաքական ու տնտեսական կախվածության ուղղակի հետևանքն էր։ Ցարական մինիստր Դ. Տոլստոյը պաշտոնական մի գրության մեջ բացահայտորեն նշում էր ազգային հարցում ցարական կառավարության հիմնական ձգտումը. «Մեր հայրենիքի սահմաններում ապրող բոլոր այլազգիների կրթության նպատակը,— հրահանգում էր ցարական սատրապը,— անվիճելիորեն պետք է լինի նրանց ռուսացումը և ձուլումը ռուս ժողովրդի մեջ»։*

*Անդառնալիորեն պատմության գիրկն անցած այս մռայլ փաստերը հիշելու կարիքը դուցե չլիներ, եթե այժմ բուրժուական գաղափարախոսները չփորձեին աղավաղել մեր սոցիալիստական իրականությունը և այդ, արդեն մոռացվող փաստերը ներկայացնել որպես սովետական երկրի այսօրը։ Մենք լավ ենք հասկանում, որ բուրժուազիայի գաղափարախոսներն այլ կերպ վարվել չեն կարող, քանի որ նրանց հիմնական զբաղմունքներից մեկը հենց մեր կյանքի խեղաթյուրումն է։ Այդ անազնիվ գործի ամենաեռանդուն մասնակիցներն են նաև արտասահմանյան մի քանի երկրներում խրամատավորված դաշնակցական թափթփուկները, որոնց ստահոդությամբ հռչակված օրգանները մասնագիտացել են մեր իրականության կեղծման ասպարեզում։ Հենց վերջերս նրանց օրգաններից մեկը՝ «Հայրենիք» հավակնոտ անունով, իր էջերը լցրեց նենգ զրպարտություններով, թե իբր Սովետական Միությունում տարվում է ռուսացման քաղաքականություն, ազգերն ու ազգային լեզուները հալածվում ու վերացվում են, թե իբր այնտեղ արդեն «ազգություն չկա, կա ինտերնացիոնալիզմը միայն»։ Ընդ որում այդ պարոնների բերանում ինտերնացիոնալիզմը հայհոյական բառ է և նույնացվում է «ազգուրացություն» հասկացության հետ։*

*Մեր իրականությանը քիչ թե շատ ծանոթ մարդն անգամ անմիջապես կնկատի այս հայտարարությունների ոչ միայն կեղծությունը, այլև դրանց*

բուն նպատակը՝ հնարավորին չափ վարկաբեկել ու արատավորել սոցիալիզմի նվաճումները։ Սակայն մեր իրականության օգտին խոսում են աներկբա փաստերը, իսկ փաստերը, ինչպես ասում են, համառ բաներ են։

Ազգային հարցում սոցիալիզմի խոշորագույն նվաճումներից մեկը հենց մեր երկրի ազգերի ու ազգությունների լեզուների լիակատար իրավահավասարության և նրանց ազատ զարգացման պայմանների հաստատումն է։ Դա արտահայտվում է ամենից առաջ նրանում, որ մեր երկրի ազգերի լեզուները կատարում են այնպիսի հասարակական ֆունկցիաներ, որոնցից նրանք նախկինում զրկված էին։ ՍՍՌՄ բնակչության 97,6 տոկոսն ունի իր ազգային պետականությունը (մոտ 90 տոկոսը միութենական ազգային ռեսպուբլիկաների և 6,4 տոկոսը՝ ինքնավար ազգային ռեսպուբլիկաների բնակչությունը)։ Այդ ազգերի ու ազգությունների լեզուները որոշակի ռեսպուբլիկաների սահմաններում պաշտոնական (պետական) լեզուներ են և նրանցով են վարվում պետական, տնտեսական և կուլտուրական հարաբերությունները։ Որպես միութենական ռեսպուբլիկա ձևավորված տասնհինգ առավել խոշոր ազգերի լեզուները միաժամանակ և Միության պաշտոնական լեզուներն են, որոնցով հրապարակվում են ՍՍՌՄ բարձրագույն պետական մարմնի՝ Գերագույն Սովետի հրամանագրերը, որոշումներն ու պաշտոնական հաղորդագրությունները, Սովետական Միության կոմունիստական պարտիայի պաշտոնական փաստաթղթերը, մակագրություններ են արվում ՍՍՌՄ պետական գերբի, պետական բանկի տոմսերի (դրամանիշների) վրա։

Ազգային լեզուների զարգացման մյուս օրինաչափությունը մեր երկրում նրանց համեմատական փաստական հավասարության հաստատումն է։ Ասում ենք համեմատական, որովհետև այս հարցում բացարձակություն հնարավոր չէ։ Բանն այն է, որ ՍՍՌՄ-ում, ըստ 1959 թ. համամիութենական մարդահամարի տվյալների, ապրում են 115 ազգերի և ազգային խմբերի ներկայացուցիչներ։ Այդ 115-ից 53-ն իրենց հիմնական զանգվածով մեր երկրում ապրող ազգերն ու ազգություններն են, որոնք էլ հենց օգտվում են սովետական ազգային պետականության տարբեր ձևերից (միութենական ռեսպուբլիկա, ինքնավար ռեսպուբլիկա կամ մարզ, ազգային շրջան), իսկ մյուսները այլ երկրներում ապրող ազգերի փոքրաքանակ հատվածներն են, կամ էլ էթնիկական փոքրաքանակ խմբերի ներկայացուցիչները։ Վերջին երկու խմբերի առանձին ազգությունների մեջ մտնող մարդկանց թիվը մեծմասամբ չի գերազանցում մի քանի հազարից, իսկ երբեմն էլ հաշվվում է հարյուրներով կամ, նույնիսկ, տասնյակներով։ Անտարակույս է, որ այդպիսի փոքրաթիվ միավորումների լեզուներն ի վիճակի չեն իրականացնել զարգացման արդի աստիճանին հատուկ մի շարք ֆունկցիաներ, օրինակ, գիտական և տեխնիկական գրականության հրատարակություն և, անշուշտ, չեն կարող ունենալ պետականության ֆունկցիան։

Առաջին խմբի մեջ մտնող ազգերի ու ազգությունների լեզուներն օգտագործվում են ոչ միայն բանավոր ու գրավոր խոսքում, կրթության մեջ, այլև ռադիո և հեռուստատեսային հաղորդումների, ներկայացումների ու կինոնկարների, գիտական հետազոտության, մամուլի և գրականության հրատարակման համար։

Ինչ վերաբերում է միութենական ռեսպուբլիկաների ժողովուրդների ազգային լեզուներին, ապա վերոհիշյալից պարզ է, որ մեր երկրում նրանք օգտվում են այնպիսի սուվերենությամբ, ինչպիսին չունեն անկախ համարվող բուրժուական շատ ու շատ երկրներ, որոնք կյանքի բազմաթիվ բնագավառներում ստիպված են օգտագործել ոչ թե իրենց մայրենի լեզուն, այլ որևէ օտար լեզու։

Հասարակական ֆունկցիաների իրականացման համար ստեղծված լայն հնարավորությունների շնորհիվ մեր երկրի ազգերի ու ազգությունների լեզուներն այժմ ավելի հարուստ բառային կազմ ունեն, քան երբևէ անցյալում։ Մասնավորապես գիտության ու տեխնիկայի բուռն առաջընթացն ամեն տարի հարյուրավոր նոր տերմիններ ու բառակապակցություններ է մտցնում լեզուների մեջ։ Մյուս կողմից ազգային լեզուների գիտական ուսումնասիրությունն ու նորմավորումը, որը լեզուների մեծ մասի համար հնարավոր դարձավ միայն ռևոլյուցիայից հետո, օժանդակում են անցյալում մշակված ձևերի խելացի օգտագործմանը և լեզուների հետագա ինքնակատարելագործմանը։ Այդ պայմանավորված է ազգերի ոչ միայն իրավահավասարությամբ, այլև նրանց տնտեսական, քաղաքական ու հոգևոր (կուլտուրական) կյանքի աննախընթաց զարգացմամբ և այդ զարգացման աստիճանների՝ նախկինում եղած էական տարբերությունների հաղթահարմամբ։ Սա էլ հենց նրանց զարգացման նոր օրինաչափություններից մեկն է։

Տարբեր ազգերի պատկանող և, հետևաբար, տարբեր լեզուներով խոսող մարդիկ միմյանց հետ անմիջականորեն հաղորդակցության մեջ են մտնում մեկը մյուսի լեզուն սովորելու և դրա հիման վրա թարգմանության միջոցով։ Սակայն հաղորդակցության այս ուղին սահմանափակ է, որովհետև ազգի լայն զանգվածները բացի մայրենի լեզվից կարող են, որպես կանոն, տիրապետել ևս մեկ լեզվի՝ սովորաբար հարևան ժողովրդի լեզվին։ Եվ երբ տարբեր ազգերի միջև առաջանում է հաղորդակցության անհրաժեշտություն, ապա նրանք դրա համար օգտագործում են ազգերից մեկն ու մեկի լեզուն, այն, որն ավելի տարածված է։ Այդ լեզուն սովորում են տարբեր ազգերի ներկայացուցիչներ և այն, բնականաբար, դառնում է ազգամիջյան հաղորդակցության լեզու։ Այդպիսին է եղել արաբերենը միջին դարերում Մերձավոր և Առաջավոր Արևելքի ժողովուրդների համար և լատիներենը՝ Եվրոպայի ժողովուրդների համար։ Ոչ հեռու անցյալում միջազգային կուլտուրական ու դիվանագիտական (քաղաքական) հաղորդակցման լեզուն ֆրանսերենն էր։ Վերջապես, մեր օրերում ամբողջ երկրագնդի մասշտաբով ազգամիջյան հաղորդակցման լեզուներ են՝ անգլերենը, ռուսերենը, ֆրանսերենը, իսպաներենը, գերմաներենը, արաբերենը և չինարենը, որոնցից օգտվում են հարյուրավոր ժողովուրդներ։

Հասկանալի է, որ նման լեզու անհրաժեշտ է միասնական (բազմազգ) պետության մեջ ապրող ժողովուրդների համար։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «...տնտեսական շրջանառության պահանջները մշտապես կստիպեն մի պետության մեջ ապրող ազգություններին (որքան ժամանակ նրանք կցանկանան միասին ապրել) սովորել մեծամասնության լեզուն» (Երկեր, հ. 20, էջ 4)։

Ազգամիջյան հաղորդակցության լեզու առավել ևս անհրաժեշտ է մեր երկրի ժողովուրդների համար, որոնք ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ու հոգևոր տեսակետից մի միասնական ամբողջություն են կազմում։ Եվ բնական է, որ մեր երկրում ազգամիջյան հաղորդակցության ու համագործակցության լեզուն ռուսերենն է, ոչ միայն որպես ամենախոշոր ազգի, մեծամասնության լեզու, այլև որպես ՍՍՌՄ բոլոր ազգերի հետ անմիջականորեն շփվող

ազգի լեզու, որպես մեր երկրի (և աշխարհի) ամենաբարձր տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման հասած ազգերից մեկի լեզու, որպես միջազգային դարձած լեզու։

Ռուսաց լեզվի այդ յուրահատուկ դերը օրինաչափորեն հանգեցրել է նրա կամավոր ուսումնասիրմանը Սովետական Միության բոլոր ազգերի ու ազգությունների կողմից։ Ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, կյանքում տեղի ունեցող այդ պրոցեսը «դրական նշանակություն ունի, քանի որ դա նպաստում է փորձի փոխանակմանը և այն բանին, որ յուրաքանչյուր ազգ և ազգություն հաղորդակից է լինում ՍՍՌՄ մյուս բոլոր ժողովուրդների կուլտուրական նվաճումներին և համաշխարհային կուլտուրային»։

Մեր երկրում հանդես է գալիս մի նոր երևույթ՝ ազգերի ու ազգությունների մասսայական երկլեզվություն։ Այդ նշանակում է, որ այս կամ այն ազգի ներկայացուցիչն իր մայրենի լեզվի հետ միասին տիրապետում է նաև Միության մեջ ամենատարածված լեզվին և նրա օգնությամբ կարող է ազատ հաղորդակցել մյուս բոլոր ազգերի ներկայացուցիչների հետ։

Եվ սա ամենևին էլ ազգային լեզուների սահմանափակում ու, առավել ևս, վերացում չէ, ինչպես փորձում են ներկայացնել սոցիալիզմի հակառակորդները։ Այդ բանում անձամբ համոզվել են, մասնավորապես, բազմահազար հայ տուրիստներ, որոնք այցելել են Սովետական Հայաստան։ Կարիք կա՞ արդյոք ապացուցելու, որ մեզ մոտ, ինչպես և միութենական մյուս ռեսպուբլիկաներում պետական, տնտեսական ու կուլտուրական հաղորդակցության լեզուն, ամբողջ կրթության, այդ թվում և միջնակարգ ու բարձրագույն մասնագիտական կրթության լեզուն հիմնականում մայրենի լեզուն է։ Եվ այն, որ մեր ժողովրդի մի զգալի մասը մայրենի լեզվին զուգընթաց բավականին լավ տիրապետում է ռուսաց լեզվին և կարողանում ըստ հարկին գործածել այն, միայն և միայն առավելություն կարող է լինել։

Ազգային հարցի սովետական առանձին հետազոտողներ, ճիշտ չհասկանալով այս երևույթը, հանգում են, օրինակ, այսպիսի եզրակացության. «Ռուսաց լեզուն արդեն դարձել է ՍՍՌՄ ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման լեզու և նրանց մոտ կազմավորվում են հոգևոր կերպարի ընդհանուր գծեր։ Այսպիսով, նյութական, հոգևոր, լեզվական տեսակետից սովետական ժողովուրդը ձևավորվել է որպես որոշակի ընդհանրություն» (տե՛ս В. Келле, М. Ковальзон, Исторический материализм, курс лекций, изд. «Высшая школа» М., 1962 г., էջ 292)։

Սովետական ժողովուրդը, ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, տնտեսական և հոգևոր (գաղափարական) ընդհանրություն է։ Ասել, որ նա նաև լեզվական ընդհանրություն է, նույնն է, թե ասել, որ բոլոր սովետական մարդիկ արդեն մի լեզվով են խոսում։ Իսկ դա, իհարկե, ճիշտ չէ, քանի որ ՍՍՌՄ-ում ամեն ազգ իր լեզվով է խոսում (ըստ 1959 թ. մարդահամարի Սովետական Միության բնակչությունը խոսում է 115 լեզուներով)։ Դրա հետ միասին տարբեր ազգերի մեջ մտնող մարդկանց մի զգալի մասը խոսում է նաև մի այլ լեզվով։

Մեր վիճակագրությունը, ցավոք սրտի, տվյալներ չի տալիս երկլեզվության աստիճանը որոշելու համար։ Փաստերի մոտավոր ընդհանրացման հիման վրա միայն կարելի է նշել, որ օրինակ, Սովետական Հայաստանում երկրորդ լեզվին (հիմնականում՝ ռուսաց լեզվին) տիրապետում են մի քանի



հարյուր հազար մարդ։ Միաժամանակ Հայաստանում ապրող հազարավոր ռուսներ բավականին լավ տիրապետում են հայոց լեզվին։ Մոտավորապես նույնպիսի հարաբերակցություն կա նաև մյուս ռեսպուբլիկաներում, ընդ որում երկլեզվյան է հիմնականում քաղաքային բնակչությունը։

Ազգային ռեսպուբլիկաների կազմում գտնվող այլազգի որոշ հատվածների համար բնորոշ է երեք լեզուներին տիրապետելը։ Այսպես, օրինակ, Վրաստանում ապրող հայերի մի զգալի մասը խոսում է հայերեն, վրացերեն և ռուսերեն։ Հայաստանում ապրող ադրբեջանցիների մի մասը՝ ադրբեջաներեն, հայերեն, ռուսերեն և այլն։ Սակայն այս երևույթը, որը բխում է ազգերի որոշ միախառնվածությունից, համարյա թե բոլորովին չի ուսումնասիրված։

Սոցիալիզմի երդվյալ հակառակորդները, կանգնելով իրականության կեղծման ուղու վրա, փորձում են ամեն կերպ ապացուցել, որ ՍՍՌՄ-ում ազգային լեզուները վերացվում, ասիմիլյացվում են։ Այդ նպատակով նրանք վերը քննարկված երկլեզվության երևույթը գիտակցաբար նույնացնում են լեզվական ասիմիլյացիայի հետ. նրանց կարծիքով, եթե մի որևէ ազգ խոսում է նաև մի այլ ազգի լեզվով, նա ասիմիլյացիայի է ենթարկվում։ Սակայն երկլեզվությունն ու լեզվական ասիմիլյացիան իրականում բոլորովին տարբեր բաներ են։ Երկլեզվությունը, ինչպես վերը ցույց տրվեց, մայրենի լեզվի հետ միասին, նրան զուգահեռ մի այլ լեզվի տիրապետելն է, իսկ լեզվական ասիմիլյացիան, որը ազգային ասիմիլյացիայի սկիզբն է, նշանակում է մայրենի լեզվի փոխարեն այլ լեզվի տիրապետելը, այսինքն՝ պատկանել մի ազգի, բայց չիմանալ նրա լեզուն և խոսել ուրիշ ազգի լեզվով։

Պատմությունը մեզ բազմաթիվ փաստեր է թողել ժողովուրդների ասիմիլյացիայի մասին։ Այսպես, հենց Անդրկովկասում ապրող ժողովուրդների կողմից ասիմիլյացիայի են ենթարկվել ուրարտացիները (խալդերն) ու աղվանները, որոնք կորցրել են իրենց լեզուն, ձուլվել մյուս ազգերի մեջ, խոսել նրանց լեզվով։ Նոր շրջանում նույնպես հազվագյուտ չէ այդ երևույթը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «Կապիտալիստական հասարակության տնտեսական զարգացումը մեզ ցույց է տալիս ամբողջ աշխարհում թերզարգացած ազգային շարժումների օրինակներ, խոշոր ազգերի, մի շարք մանր ազգերից կամ ի վնաս մի քանի մանրերի կազմավորվելու օրինակներ, ազգային ասիմիլյացիայի օրինակներ» (Երկեր, հ. 20, էջ 24)։

Մինչսոցիալիստական հասարակարգերում ասիմիլյացիան, որպես կանոն, քաղաքական կախվածության հետևանք է, ստիպողական երևույթ, որը տեղի է ունենում մեծ մասամբ հարկադրման, այս կամ այն ազգի լեզուն պաշտոնապես սահմանափակելու և այլ նման ուղիներով։ Այդ տեսակետից հատկապես բնորոշ են Ամերիկայի Միացյալ Նահանգները, ուր աշխարհի տարբեր երկրներից ներգաղթած տասնյակ ազգերի ներկայացուցիչներ ստիպված են տիրապետել անգլերենին, որովհետև այլապես նրանք ամերիկյան քաղաքացիություն չեն ստանա։ Իսկ մեկ-երկու սերնդի ընթացքում մայրենի լեզուն արդեն կորչում է, այդ ազգերի ներկայացուցիչների շառավիղները ամերիկացիներ են և խոսում են միայն մեկ լեզվով՝ անգլերենով։ Մենք դրանում լիովին համոզվեցինք, երբ մի խումբ ամերիկահայեր հայրենադարձվեցին. նրանց զավակները համարյա գլխովին անգետ էին հայերենին և խոսում էին միայն անգլերեն, թեև մի մասի ծնողները նույնիսկ ամերիկահայ

մամուլի ականավոր գործիչներ էին: Այսպիսով, ԱՄՆ-ում լեզուները, ըստ էության, ձուլվում են: Սակայն այդ ձուլումից մի ինչ-որ նոր լեզու չի ստացվում և այդ անհնար էլ է: Պարզապես բոլոր լեզուները ձուլվում են անգլերենի մեջ: Դրանից այս կամ այն չափով հարստանում է անգլերենը, սակայն մյուս լեզուները ԱՄՆ-ում վերանում են որպես հաղորդակցման միջոց:

Իհարկե, միշտ չէ, որ դա բռնության կամ ստիպողականության հետևանք է: Տնտեսական ու կուլտուրական կյանքի միջազգայնացման տենդենցը, որը հատուկ է հասուն կապիտալիզմին, հող է ստեղծում փոխադարձ ասիմիլյացիայի համար, հաճախակի է դարձնում խառն ամուսնությունները և այլն:

Կա՞ արդյոք ասիմիլյացիա Սովետական Միությունում: Այո՛, կա: Դա բնական պրոցես է մի երկրում, ուր բազմաթիվ ազգեր են ապրում, և այն էլ շատ դեպքերում, ապրում են միախառնված: Առավել ևս դա անխուսափելի է դառնում, երբ վերանում է ազգային մեկուսացումը և սերտանում են ազգերի փոխադարձ կապերն ու համագործակցությունը: Սակայն դրա իրականացման ուղիներն ու եղանակները, ինչպես և հետևանքները սոցիալիզմի ժամանակ այլ բնույթ են կրում: Մեզ մոտ ասիմիլյացիան չունի հարկադրական մոմենտ և չի հանգեցնում ազգերի ու նրանց կուլտուրաների, նրանց լեզուների վերացման, քանի որ այն լիովին կամավոր է, այնուհետև այն մասնակի է և հիմնականում կատարվում է ազգերի տերիտորիայում ոչ կենտրոնացած խմբերով ապրող այլ ազգերի հատվածների ու առանձին ներկայացուցիչների շրջանում, և դրա հետ միասին այն փոխադարձ է:

Վերջին տարիներս որոշ հեղինակներ տալիս են մեր երկրում կատարվող ասիմիլյացիայի միակողմանի բացատրություն, այն դիտելով որպես սոսկ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանին հատուկ երևույթ, աչքաթող են անում նրա փոխադարձությունը և, 1959 թ. մարդահամարի արդյունքներից բերելով տվյալներ մի քանի ազգությունների որոշ մասի կողմից այլ ազգի լեզուն մայրենի լեզու համարելու մասին, եզրակացնում են. «Այսպիսով, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանում նախադրյալներ են պատրաստվում ազգերի հետագա ձուլման համար» (տե՛ս «О закономерностях возникновения и развития социалистического общества», ժողովածու, ՍՍՌՄ ԳԱ հրատարակություն, Մոսկվա, 1960, էջ 245):

Նման եզրակացությունը հիմնավոր չէ: Նախ՝ լեզվական ասիմիլյացիան տանում է ոչ թե դեպի լեզուների համաձուլում կամ նոր լեզվի ստեղծում, ինչպես ենթադրում են ոմանք, այլ դեպի լեզուների ձուլում մի որևէ ազգային լեզվի մեջ: Այնուհետև՝ այդ երևույթը մեր երկրում ամենևին էլ նոր չէ և ոչ էլ, մասնավորապես, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանին յուրահատուկ երևույթ, ինչպես այդ հեղինակներն են կարծում:

Այդ բանում համոզվելու համար հարցը պետք է դիտել իր պատմական զարգացման մեջ: Ըստ 1926 թ. համամիութենական մարդահամարի տվյալների ՍՍՌՄ ամբողջ բնակչության 94,3 տոկոսը մայրենի լեզու է համարել իր ազգության լեզուն, իսկ 5,7 տոկոսը՝ այլ ազգերի, հիմնականում ռուս ազգի լեզուն: Եթե նշված հեղինակների եզրակացությունը ճիշտ լիներ, ապա դրանից հետո անցած ժամանակաշրջանում այլ ազգի լեզուն որպես մայրենի լեզու ընդունողների տեսակարար կշիռը պետք է զգալիորեն ավելանար: Մինչդեռ 1959 թ. մարդահամարի տվյալները տալիս են ճիշտ նույն համամասնությունը՝ 94,3 և 5,7:



Այսպիսով, 1926 թ. մինչև 1959 թ. ընկած ժամանակաշրջանում չի նկատվում ազգային ասիմիլյացիայի աճի տենդենց: Ավելին, եթե հաշվի առնենք, որ այդ նույն ժամանակաշրջանում զգալիորեն ուժեղացել է Միության բնակչության ազգային կազմի խառնման պրոցեսը՝ կապված Հայրենական պատերազմի ժամանակ տարբեր ազգերի բնակչության խոշոր տեղաշարժերի հետ, հետպատերազմյան շրջանում երկրի արևելյան շրջանների տնտեսական յուրացման հետևանքով այդ մասի բնակչության ազգային կազմի փոփոխության (բազմազգության), ինչպես և անհատի պաշտամունքի տիրապետության ժամանակ տեղ գտած օրինականության խախտման հետևանքով որոշ ազգությունների տերիտորիալ տեղափոխումների հետ, ապա վստահորեն կարելի է ասել, որ ազգային ասիմիլյացիան նշված ժամանակաշրջանում ոչ թե աճել, այլ նվազել է:

Այնուհետև, առանձին հեղինակներ լեզվական ասիմիլյացիան քննարկում են միակողմանիորեն, բերելով տվյալների միայն այն մասը, որը վերաբերում է այլ ազգերի ներկայացուցիչների կողմից ռուսաց լեզուն մայրենի լեզու համարելուն և, որպես կանոն, չեն հիշատակում այլ ազգերի լեզուները որպես մայրենի լեզու համարելու մասին վիճակագրության մեջ եղած տվյալները: Այսպիսի մոտեցման հետևանքով ստեղծվում է այն թյուր տպավորությունը, թե մեր երկրում տեղի է ունենում միակողմանի ասիմիլյացիա, այսինքն՝ բոլոր ազգերն ու ազգությունները իբր արդեն ձուլվում են մեկ ազգի մեջ:

Այնինչ 1959 թ. մարդահամարի տվյալները ցույց են տալիս, որ մեր երկրում տեղի ունի ոչ թե բոլոր ազգերի ասիմիլյացիա մեկ ազգի մեջ, այլ ազգերի ու ազգությունների որոշակի հատվածների փոխադարձ լեզվական ասիմիլյացիա: Այսպես, 1959 թ. ՍՍՌՄ-ում տարբեր ազգությունների պատկանող 10 մլն 182 հազար մարդ մայրենի լեզու է համարել ոչ թե իր ազգի լեզուն, այլ ռուսաց լեզուն. միաժամանակ տարբեր ազգերի պատկանող 1 մլն. 735 հազար մարդ մայրենի լեզու են համարել այլ ազգերի լեզուն (ոչ ռուսերենը): Այդ թվի մեջ մտնում են նաև 177 հազար ռուսներ, որոնք մայրենի լեզու են համարել ոչ թե ռուսերենը, այլ ուկրաիներենը (139 հազար հոգի), լատիշերենը (8237 հոգի), էստոներենը (5011 հոգի), վրացերենը (1915 հոգի), ադրբեջաներենը (205 հոգի), հայերենը (200 հոգի) և այլն: Այլ ազգի պատկանող 544 հազար մարդ մայրենի լեզու են համարել ուկրաիներենը, 288 հազար մարդ՝ բելոռուսերենը, 372 հազար մարդ՝ թաթարերենը, 110 հազար մարդ՝ վրացերենը, 6 հազար՝ հայերենը, 48 հազար մարդ՝ ադրբեջաներենը և այլն:

Այսպիսով, ակնհայտ է, որ լեզվական փոխադարձ ասիմիլյացիայի են ենթարկվում բոլոր ազգերի, այդ թվում և ռուս ազգի ներկայացուցիչները:

Կապիտալիզմի ջատագովները, չհասկանալով, կամ ավելի ճիշտ, գիտակցաբար անտեսելով լեզվական ասիմիլյացիայի կամավորությունը, նրա բնական պրոցես լինելը և նրա փոխադարձությունը, ինչպես տեսանք, հայտարարում են, թե Սովետական Միության մեջ ազգային լեզուները վերանում են:

Այդ պնդումը ճշմարիտ կլիներ այն դեպքում, եթե մեր երկրում նվազեր ազգային լեզուներով խոսող մարդկանց թիվը: Մինչդեռ 1926 և 1959 թթ. մարդահամարների տվյալների համեմատությունը ցույց է տալիս, որ ՍՍՌՄ կազմում մտնող ազգերի լեզուներով խոսողների թիվը գնալով ոչ թե նվազում, այլ զգալիորեն ավելանում է: Այսպես, օրինակ, 1926 թ. ուկրաիներենը





մայրենի լեզու են համարել 27 մլն. 171 հազար, իսկ 1959 թ.՝ 33 մլն. 224
հազար մարդ, բելոռուսերենը (համապատասխանաբար) 4 մլն. 738 հազար
և 6 մլն. 952 հազար մարդ, ուզբեկերենը՝ 3 մլն. 869 հազար և 6 մլն. 7 հա-
զար մարդ, թաթարերենը՝ 2 մլն. 884 հազար և 4 մլն. 945 հազար մարդ, ադրբ-
բեջաներենը՝ 1 մլն. 601 հազար և 2 մլն. 917 հազար մարդ, վրացերենը՝ 1
մլն. 757 հազար և 2 մլն. 765 հազար մարդ, հայերենը՝ 1 մլն. 449 հազար և
2 մլն. 510 հազար մարդ, բաշկիրերենը՝ 384 հազար և 616 հազար մարդ և
այլն, և այլն։

Այս կապակցությամբ պետք է նշել մի կարևոր հանգամանք ևս. սոցիա-
լիզմի պայմաններում աճել է ոչ միայն նշված ազգերի լեզուն մայրենի լեզու
համարողների թիվը, այլև մայրենի լեզվին տիրապետելու աստիճանը։ Մինչև
Հոկտեմբերյան ռևոլյուցիան ազգային լեզվի գիտությունը սահմանափակվում
էր հիմնականում բանավոր խոսքով՝ նույնիսկ սեփական գիր ու գրականու-
թյուն ունեցող ազգությունների մոտ։ Այսպես, օրինակ, դեռևս 1926 թ. իրենց
ազգային լեզուներով գրագետ էր ուկրաինացիների 21,6, բելոռուսների 15,4,
հայերի 25 տոկոսը, տաջիկների, կիրգիզների, ղազախների, թուրքմենների,
ուզբեկների, բաշկիրների 1,5-ից 10 տոկոսը։ Իսկ այժմ, երբ ՍՍՌՄ բոլոր
ժողովուրդներն ունեն գիր ու գրականություն և մայրենի լեզվով կրթություն,
այդ ազգերի լեզուներով խոսող մարդիկ, համարյա առանց բացառության,
տիրապետում են և՛ բանավոր, և՛ գրավոր խոսքին, իսկ զգալի չափով՝ նաև
մի այլ լեզվի բանավոր և գրավոր խոսքին։

Ազգային լեզուների բուռն զարգացումն արտահայտվում է նաև այդ լե-
զուներով հրապարակվող գրականության վիթխարի աճի մեջ։ Ռևոլյուցիայից
առաջ տաջիկերեն, մոլդավերեն, կիրգիզերեն, թուրքմեներեն լեզուներով ոչ
մի գիրք կամ լրագիր չէր հրատարակվում. 1913 թ. հրատարակվել է բելո-
ռուսերեն 2, ուզբեկերեն 37, ղազախերեն 40, հայերեն 257, վրացերեն 232,
ադրբեջաներեն 91 գիրք, իսկ 1961 թ. հրատարակվել է բելոռուսերեն 441
գիրք, 23 ամսագիր, 157 թերթ, հայերեն 914 գիրք, 35 ամսագիր, 80 թերթ,
կիրգիզերեն 459 գիրք, 12 ամսագիր, 59 թերթ և այլն։

Սակայն, այս բոլորից ճիշտ չէր լինի եզրակացնել, թե սոցիալիզմի պայ-
մաններում անպայման աճում է բոլոր լեզուներով խոսողների թիվը, անպայ-
ման պահպանվում են բոլոր ազգագրական խմբերը։ Ըստ 1926 թ. մարդա-
համարի, մեր երկրում եղել են 140-ից ավելի լեզուներով խոսող մարդիկ,
իսկ 1959 թ. մարդահամարի տվյալներով այդ թիվը իջել է 115-ի։ Բանն այն
է, որ 1926 թ. որպես առանձին լեզու հաշվի են առնվել մի քանի մանր ազ-
գախմբերի լեզուները, որոնք, ըստ էության, ոչ թե ինքնուրույն լեզուներ են,
այլ այս կամ այն ազգության առանձին փոքրաթիվ հատվածի խոսակցական
բարբառը։ Ազգային համախմբման (կոնսոլիդացիայի) բնական պրոցեսի
հետևանքով այդ մանր ազգախմբերը ձուլվում են մայր ազգության մեջ։ Այս-
պես, օրինակ, տաջիկների մեջ ձուլվում են, այսպես կոչված՝ պամիրյան տա-
ջիկները՝ յագնոբցիները, շուգնանցիները, ռուշանցիները, բարտանգցիները,
յազգուլեմները։ Վրացիների մեջ համարյա լիովին ձուլվել են նրանց ցեղա-
կից ազգախմբերը՝ աջարները, մենգրելները, սվանները։ Ուզբեկների մեջ
ձուլվում են կուրամիններն ու ղփչաղները, ադրբեջանցիների մեջ՝ ղարափա-
փախները։ Հյուսիսային Կովկասում առանձին մանր ազգախմբեր կոնսոլի-
դացվում են ավարների և մյուս, համեմատաբար խոշոր ազգությունների հետ։



Մոկշա և էրզյա ազգախմբերը միաձուլվել են մեկ միասնական մորդվա ազգության մեջ և այլն (այս մասին ավելի հանգամանորեն տե՛ս П. Г. Подъячих, Население СССР, М., 1962. էջ 111—112)։

Մենք համառոտակի կանգ առանք ՍՍՌՄ-ում ազգային լեզուների զարգացման և նրանց փոխհարաբերության որոշ կողմերի վրա։ Ասվածից ակնհայտ է, որ ՍՍՌՄ-ում ազգային լեզուների զարգացման բնագավառում չկա բռնության ու ստիպողականության մոմենտ, լեզուները զարգանում են ազատ և միաժամանակ փոխադարձաբար ազդում են մեկը մյուսի վրա։ Ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, պարտիան այդ բնագավառում խնդիր է դնում «Հետագայում ևս ապահովել ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների ազատ զարգացումը, ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովել լիակատար ազատություն՝ խոսելու, իր երեխաներին դաստիարակելու և ուսման տալու ցանկացած լեզվով, թույլ չտալով ոչ մի արտոնություն, սահմանափակում կամ հարկադրանք այս կամ այն լեզվի գործածության հարցում։ Ժողովուրդների եղբայրական բարեկամության և փոխադարձ վստահության պայմաններում ազգային լեզուները զարգանում են իրավահավասարության և փոխհարստացման հիման վրա»։

Լեզուների փոխադարձ ազդեցությանն ու փոխհարստացմանը նպաստող գործոններից մեկը մեր երկրում ժողովրդական կրթության մեջ ինտերնացիոնալ և ազգային մոմենտների ճիշտ զուգակցումն է։ Մեր դպրոցները, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները ազգային են ըստ դասավանդման լեզվի, սակայն նրանք ինտերնացիոնալ են ինչպես սովորողների կազմով, այնպես էլ դասավանդվող նյութով։ Այդ նպաստում է, մի կողմից տարբեր ազգերին պատկանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությանը և մյուս կողմից՝ ոչ միայն ազգային լեզուների զարգացմանը, այլև ազգային լեզուների փոխադարձ ազդեցությանն ու փոխադարձ հարստացմանը, որը թեև այս կամ այն չափով տեղի է ունեցել բոլոր նախորդ հասարակարգերում, սակայն սոցիալիզմի պայմաններում նոր որակ է դարձել ու լայն ծավալ ստացել։ Անցյալում մի լեզուն մյուսի վրա ազդում էր, որպես կանոն, այն դեպքում, երբ այդ լեզվով խոսող ազգն իշխում էր մի այլ ազգի վրա, այսինքն՝ դա սովորաբար մի լեզվի միակողմանի ազդեցությունն էր մյուսի վրա։ Սոցիալիզմի պայմաններում, ուր ազգերը գտնվում են քաղաքական, տնտեսական ու կուլտուրական ամենասերտ կապերի մեջ, ունեն սոցիալական ձգտումների ու հոգևոր կերպարների ընդհանրություն, լեզուները փոխադարձաբար ազդում են մեկը մյուսի վրա և փոխադարձաբար հարստացնում մեկը մյուսին։ Այդ արտահայտվում է առավելապես լեզուների ամենաարագ փոփոխվող (կյանքում կատարվող փոփոխություններն անմիջականորեն արտացոլող) մասի՝ բառային կազմի մեջ։ Իհարկե, ազգային լեզուները, որոնք հարյուրավոր և հազարավոր տարիների զարգացման արգասիք են, կյանքի մեջ մի քանի տասնյակ տարում կատարված փոփոխությունների հետևանքով էական փոփոխությունների ենթարկվել չեն կարող, սակայն նրանք հարստանում են սոցիալական նոր երևույթներն ու գիտակսին նոր հասկացություններն արտահայտող բառերով ու բառակապակցություններով։ Այդ տեսակետից հատկանշական է, որ մի ազգի գիտնականների կամ տեխնիկների կողմից մշակված տերմինները անմիջապես անցնում են մյուս ազգերին և մտնում նրանց լեզվի մեջ։

Այս փոխազդեցության մեջ բնականորեն առաջատար դեր է խաղում ռուս-
սաց լեզուն։ Դա պայմանավորված է մի շարք հանգամանքներով. ա) լինե-
լով միջազգային գործածության լեզուներից մեկը, նա անմիջականորեն շփ-
վում է միջազգային մյուս լեզուների հետ և յուրացնում նորագույն գիտական
տերմինոլոգիան, որը և նրա միջոցով փոխանցվում է մյուս ազգային լեզու-
ներին. բ) զարգացման աստիճանով ու լեզվի ներքին հնարավորություններով
հավասար լինելով բոլոր զարգացած ազգային լեզուներին, ռուսաց լեզուն,
սպասարկելով անհամեմատ մեծ թվով մարդկանց (124 միլիոն մարդ, գումա-
րած ռուսերենը որպես երկրորդ լեզու իմացող մի քանի տասնյակ միլիոն
մարդ), գործնականում անսահմանափակ հնարավորություններ ունի գիտու-
թյան ու տեխնիկայի անխտիր բոլոր ուղղությունների վերաբերյալ գրականու-
թյուն հրատարակելու համար։ Մի քանի միլիոն և, առավել ևս, մի քանի
հարյուր հազար հոգուց բաղկացած ազգի համար այդ բանը գործնակա-
րեն սահմանափակվում է ընթերցողների քանակով, որը գիտական մի որևէ
նորագույն ուղղության համար կարող է հաշվվել նույնիսկ միավորներով։
Հետևապես, ռուսաց լեզուն ավելի լայն հնարավորություններ ունի գիտական
նոր հասկացությունների համար բառային արտահայտություններ մշակելու
և մյուս ազգային լեզուներին փոխանցելու համար. գ) կապված լինելով տեխ-
նիկայի բոլոր նորագույն բնագավառների հետ, նա արդեն մշակած ունի հա-
մապատասխան տերմիններ։ Անկասկած, մեր մյուս ազգային լեզուներն էլ
ունեն այդ բոլոր տերմինները մշակելու ներքին հնարավորություն։ Սակայն
այլ բան է լեզվական հնարավորությունը, այլ բան լեզվական իրականու-
թյունը, որովհետև վերջինիս համար անհրաժեշտ է արտադրության, տեխնի-
կայի տվյալ բնագավառի առկայություն ազգի կյանքում, որի պահանջներն
են միայն, որ հանգեցնում են տերմինների մշակման։ Այսպես, օրինակ, հա-
յոց լեզուն ժամանակակից ամենազարգացած լեզուներից մեկն է, սակայն
նրա բառային կազմի մեջ դեռևս չկան, ասենք, սև մետալուրգիայի տեխնո-
լոգիային կամ էլ ինքնաթիռային տեխնիկային վերաբերող շատ տերմիններ,
որովհետև այդ արտադրությունը մեզ մոտ չի ծավալված։
Այս ամենի հետևանքով ռուսաց լեզվից մյուս ազգերի լեզուներին են
անցնում հասարակական-քաղաքական, գիտական և տեխնիկական տերմին-
ներ, որոնց ճնշող մեծամասնությունը միջազգային բնույթ ունի։ Կոմունիզմ,
սոցիալիզմ, սովետ, ատոմ, պրոտոն, տրակտոր, ռադիո, կապրոն, բենզոլ,—
նույնիսկ այս թռուցիկ հիշատակումը ցույց է տալիս, թե կենսականորեն որ-
քան անհրաժեշտ տերմիններ են ռուսաց լեզվի միջոցով անցնում մյուս լեզու-
ներին։
Մյուս կողմից մեր երկրի ազգային լեզուներն էլ են ռուսերենին փոխան-
ցում որոշ կենցաղային բառեր, իսկ ազգային ռեսպուբլիկաներում գիտության
ու տեխնիկայի բուռն զարգացման շնորհիվ՝ նաև նոր գիտական ու տեխնիկա-
կան տերմիններ, որոնք փոխանցվում են մյուս ազգային լեզուներին և մտ-
նելով ռուսաց լեզվի բառային կազմի մեջ դառնում միջազգային տերմին-
ներ։ Այդպիսին են, օրինակ, Սովետական Հայաստանում գիտության և տեխ-
նիկայի զարգացման շնորհիվ մշակված երևանիտ, նաիրիտ, սևանիտ, դի-
տիլեն, գանգլերոն և այլ տերմինները, որոնք անցել են ռուսաց լեզվին և
դարձել միջազգային գործածության բառեր։
Ահա այսպես է իրականացվում լեզուների փոխադարձ հարստացումը,



և այդ պրոցեսը գնալով զարգանում է՝ մեր սոցիալիստական ազգերի տեխնի-
կական ու կուլտուրական անշեղ վերելքին համընթաց։
Մի քանի խոսք «զուտ լեզվի» տեսության մասին։ «Զուտ լեզու», այ-
սինքն՝ այլ լեզուներից ոչ մի բան չփոխառնող լեզու գոյություն չունի և չի
էլ կարող գոյություն ունենալ։ Արտասահմանյան որոշ օրգանների փորձը՝
ամեն տերմին անխտիր հայերեն թարգմանելու, արհեստական և անկենսու-
նակ երևույթ է։ Լեզուն հարստանում և կատարյալ է դառնում, երբ այն այլ
լեզուներից փոխառնում և յուրացնում է համապատասխան տերմիններ։ Այդ
պրոցեսի յուրահատկության ուսումնասիրությամբ զբաղվում են լեզվաբան-
ները։ Մենք միայն կարող ենք ասել, որ փոխառությունը ոչ միայն կամավոր
պետք է լինի, այլև չպետք է վերածվի օտար տերմինների հարկի ու անհարկի
գործածության և դրանք պետք է, եթե կարելի է ասել, «մարսվեն» ազգային
լեզուների կողմից։ Եթե որևէ օտար տերմին իր համար ճանապարհ է հարթում
լեզվի մեջ, մերվում նրա օրենքների հետ, այն արդեն դառնում է այդ լեզվի
բառակազմի մասը և սխալ կլինի այն սեփականով փոխարինել։ Սակայն դա
չի արդարացնում կենցաղային երևույթների, գիտական հասկացությունների
համար օտար և շատ հաճախ տվյալ լեզվին խորթ հնչող բառերի գործածու-
մը, երբ լեզուն ունի համապատասխան բառեր։ Օտարամոլությունից, օտար
տերմինների անհարկի գործածությունից լեզուն մաքրելը, ինչպես ժամանա-
կին նշել է Վ. Ի. Լենինը, ամեն մի լեզվի զարգացման կարևոր պայմաններից
մեկն է։
Եզրափակենք։ Մենք փորձեցինք համառոտակի շոշափել ՍՍՌՄ-ում ազ-
գային լեզուների զարգացման ու նրանց փոխազդեցության որոշ հարցեր։
Անկասկած, այս շարադրանքը հարցը սպառելու հավակնություն չունի։ Հուսով
ենք, սակայն, որ նրանում բերված փաստերը ցույց տվին, որ մեր հակառա-
կորդները կանխամտածված կեղծիք են կատարում, երբ հայտարարում են,
թե մեր երկրում ազգային լեզուները հալածվում ու վերանում են։ Ինչպես
տեսանք, սոցիալիստական հասարակարգում ազգային լեզուները գործում
են լիակատար իրահավասարության պայմաններում։ Նրանք, մի կողմից,
անընդհատ զարգանում, կատարելագործվում ու ծաղկում են, հաղթահարելով
անցյալին բնորոշ լեզվի սոցիալական ու տեղական տարբերությունները
(ժարգոններն ու բարբառները), ավելի ու ավելի լայնորեն են իրականացնում
իրենց յուրահատուկ հասարակական ֆունկցիաները, մյուս կողմից, ուժեղա-
նում է նրանց սերտ համագործակցությունն ու փոխադարձ ազդեցությունը,
փոխադարձ հարստացումը։ Սրանք են ազգային լեզուների զարգացման հիմ-
նական օրինաչափությունները սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին
անցման շրջանում։



# ԱՆՀԱՏԻ ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒ-ԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Մ. ԳԱԼՈՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում տեղ գտած սխալների ու թերությունների մերկացման և նրա հետևանքների վերացման ուղղությամբ ձեռնարկած միջոցառումների կիրառմամբ պարտիան լիովին վերականգնեց անհատի ու հասարակության փոխհարաբերության մարքս-լենինյան ըմբռնումը։ Հասարակության մեջ անհատի դրության, նրա շահերի և արժանիքների հարցը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև մղվող գաղափարական պայքարի կարևորագույն հարցերից մեկն է։ Ուստի անհատի պրոբլեմի նկատմամբ սևեռուն ուշադրությունը բխում է հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունից։

Մեռնող իմպերիալիզմի գաղափարախոսները, դասակարգային նեղ շահերից ելնելով, անվերջ կրկնում են, թե իբր կոմունիզմն անխուսափելի կոնֆլիկտ է ստեղծում անհատի ու հասարակության միջև, տանում է դեպի անհատի ճնշում, շահագրգռվածության վերացում և այլն։ «Սոցիալիզմի թշնամիները,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— չեն հրաժարվում անգամ ընդունելու մեր հաջողությունները նյութական արտադրության ոլորտում, բայց հենց տեղնուտեղը պնդում են, թե դրանք ձեռք են բերվել իբր թե մարդու ազատության և իրավունքները ոտնահարելու հաշվին։ Իմպերիալիստները հասկացությունները իրենց արշինով են չափում և անհատի ազատությունը տեսնում են անհատականը հասարակականին, անհատը կոլեկտիվին անարխիկ կերպով հակադրելու մեջ»։

Սոցիալիստական իրականությունն օբյեկտիվորեն հերքում է մեր գաղափարական հակառակորդների «փաստարկումները»։ Սոցիալիզմը մարդուն ազատագրել է շահագործումից, գործազրկությունից ու աղքատությունից, ազգային խտրականությունից, այն մարդ անհատին հասցրել է պատշաճ բարձրության, մինչդեռ կապիտալիզմը բարբարոսաբար հարյուր միլիոնավոր մարդկանց դատապարտել է անլուր տառապանքների և առանց խղճի խայթի խոսում է անհատի ազատության մասին։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան վերացրեց մարդու կողմից մարդու շահագործումը, դրանով իսկ ազատագրեց անհատին տնտեսական, սոցիալական ու քաղաքական ճնշումից, վճռական նախադրյալներ ստեղծեց նրա ֆիզիկական, հոգևոր և բարոյական ուժերի զարգացման հա-



մար։ Անհատի ծաղկումը անհնար է առանց նրա ազատության, իսկ այն պայմանավորված է ազատ հասարակությամբ։ Ուստի, միայն սոցիալիզմն է ապահովում անհատի իրական ազատությունը։ Ն. Ս. Խրուշչովն այդ կապակցությամբ ասել է. «Իսկական ազատության և երջանկության չափանիշը այն հասարակարգն է, որը մարդուն ազատում է շահագործման ճնշումից, նրան լայն դեմոկրատական իրավունք է տալիս, ապահովում է արժանավոր պայմաններում ապրելու հնարավորությունը, վստահություն է տալիս վաղվա օրվա նկատմամբ, բացահայտում է նրա անհատական ընդունակություններն ու տաղանդները, ամրապնդում է այն գիտակցությունը, որ իր աշխատանքը գնում է ամբողջ հասարակության օգտին։ Հենց սոցիալիզմն է հանդիսանում այդպիսի հասարակարգ» (նույն տեղում, էջ 112)։

Անհատի ազատությունը և նրա բազմակողմանի զարգացման հնարավորությունները պայմանավորված են հասարակության տնտեսական կյանքով, նրա օրենքների գործադրության բնույթով։ Ուստի ազատության աստիճանը, նրա սահմանները տնտեսական տարբեր պայմաններում միատեսակ չեն. ազատության հասկացությունն ու նրա բովանդակությունը պատմական են։ Անհատի ազատությունը կայանում է նրանում, որ մարդիկ գիտակցելով կյանքի, հասարակության զարգացման օրենքները, դրանք ծառայեցնում են իրենց որոշակի նպատակներին։ Մինչդեռ անտագոնիստական հասարակարգերում մարդիկ հասարակական օրենքների ստրուկն են։ Միայն կոլեկտիվ սեփականության պայմաններում է անհատը հնարավորություն ստանում ըմբռնելու հասարակական զարգացման իմաստը։

***



Անհատի և հասարակության փոխհարաբերության հարցը միշտ եղել է սոցիոլոգների ու մտածողների ուշադրության կենտրոնում։ Սակայն մինչև մարքսիզմը այն գիտական լուծում չի ստացել և չէր էլ կարող ստանալ, քանի որ նախամարքսյան սոցիոլոգներն ու մտածողները հեռու էին հասարակական երևույթների մատերիալիստական հայացքից։ Նրանք դատում էին վերացականորեն «հասարակություն ընդհանրապես», «անհատ ընդհանրապես» և դրա հիման վրա էլ ստեղծվել են մի շարք հակագիտական կոնցեպցիաներ։

Այդ կոնցեպցիաներից մեկի համաձայն անհատի և հասարակության փոխհարաբերությունն անլուծելի անտինոմիա է։ Նման պնդումը ելնում է այն հայացքից, ըստ որի իբր մարդուն ի ծնե ներհատուկ են այնպիսի հատկություններ, ինչպես՝ եսասիրությունը, շահամոլությունը, անսահման ագահությունը, մասնավոր սեփականության տենչը և այլն, և այդ «հավիտենական» բնազդները ծնում են մշտական անտագոնիզմ անհատի ու հասարակության շահերի միջև։ Այս կոնցեպցիայից բխում է երկու հակադիր հետևություն, նախ՝ անհատի անսահմանափակ իրավունքների ընդունումը, հասարակության առաջ նրա ամեն տեսակ պարտականություններից ձերբազերծվելը և երկրորդ՝ անհատի անվերապահ ենթարկումը հասարակությանը՝ ոչ մի իրավունք նրան չվերապահելով։

Այս կոնցեպցիայի կողքին մինչմարքսյան փիլիսոփայության մեջ առաջ եկավ դրան ուղղակի հակադիր մի ուրիշ տեսություն, որի համաձայն անհատի ու հասարակության շահերը միշտ և բոլոր պայմաններում համընկնում

են։ Խնդիրը միայն այն է, որ մարդը միշտ հասկանա, թե որն է իր անձնական շահը։ Այդպիսի հայացք զարգացնում էին գլխավորապես լուսավորության դարաշրջանի մատերիալիստները։

Նման թեորիաների հիմքում ընկած էր մի ընդհանուր արատ. դրանք ելնում էին այն բանից, որ մարդը բնության զարգացման արդյունք է և նրա այդ բնական էությունն անփոփոխ է։ Հասարակական պատմության իդեալիստական և մետաֆիզիկական մեկնաբանությունը նրան հնարավորություն չտվեց հասկանալու այն ճշմարտությունը, որ մարդը ոչ միայն բնության զարգացման արդյունք է, այլև «հասարակական հարաբերությունների ամբողջություն» և երկու դեպքում էլ նա ենթակա է փոփոխման ու զարգացման։

Գերմանական ականավոր մտածող Լյուդվիգ Ֆոյերբախի մասին գրած իր թեզիսներում Մարքսն ասել է, որ նա կրոնական էությունը հանգեցնում է մարդկային էությանը։ Բայց մարդու էությունը ինչ-որ աբստրակտ, առանձին անհատին ներհատուկ բան չէ, այլ հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջություն է։ Այդ նշանակում է, որ մարդկային անփոփոխ բնություն գոյություն չունի և մարդն իր հասարակական պատմության արդյունքն է։ Հասարակական հարաբերությունների ամբողջության փոփոխությունը անհատի զարգացման պայմանն է, որովհետև անհատի հոգևոր հարստությունն ամբողջովին կախված է նրա իրական հարաբերությունների հարստությունից։ Որքան հարուստ է անհատի գործողության շրջանակը, այնքան հարուստ է ինքն անհատը, որքան հարուստ է մարդու ինտելեկտը, այնքան ավելի բարերար են ներգործում նրա ձևավորման վրա արտաքին գործոնները։

Հայտնի է, որ գոյություն ունեն որոշակի հասարակական-տնտեսական ֆորմացիաներ իրենց հատուկ հասարակական հարաբերություններով, ուստի մարդն իր էությամբ լինելով հասարակական հարաբերությունների ամբողջություն, պետք է դիտվի կոնկրետ, որպես որոշակի պատմական դարաշրջանի մարդ։ Իսկ հակադիր դասակարգերի բաժանված հասարակության մեջ՝ իբրև որոշակի դասակարգի անդամ։

Մարդու մարքսյան սահմանումը միաժամանակ անհատի էության սահմանումն է։ Այդ, անշուշտ, խիստ ընդհանուր սահմանում է, որն անհատի պրոբլեմի ուսումնասիրության ելակետն ու մեթոդն է, դրանում է նրա նշանակությունը։ Անհատի հետագա սահմանումները ենթադրում են արդեն տարբերություններ, կապված այն բանի հետ, թե ինչպիսի անհատների մասին է խոսքը՝ շահագործո՞ղ թե շահագործվող, ճնշո՞ղ թե ճնշվող։ Օրինակ, բուրժուա անհատը և բանվոր անհատը։ Բուրժուան ամենից առաջ արտադրության միջոցների սեփականատեր է, շահագործող։ Այդ հատկանիշն անհրաժեշտաբար մտնում է բուրժուական անհատի սահմանման մեջ։ Ելնելով այդ հատկանիշից կոմունիզմի թշնամիները, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ պնդում են, թե քանի որ կոմունիզմը ոչնչացնում է մասնավոր սեփականությունը, ապա դրանով իսկ ոչնչացնում է նաև անհատին, վերացնում գործունեության շահագրգռվածությունը։

Իր ժամանակին Մարքսն ու Էնգելսը հերքել են բուրժուական գաղափարախոսների այն պնդումը, «թե իբր մասնավոր սեփականության ոչնչացումով ամեն գործունեություն կդադարի և ընդհանուր ծուլություն կթագավորի։ Այդ դեպքում բուրժուական հասարակությունը վաղուց պետք է ծուլությունից կործանված լիներ, որովհետև նա, ով այդ հասարակության մեջ աշխատում է, ոչինչ ձեռք չի բերում, իսկ նա, ով ձեռք է բերում, չի աշխատում» (Ընտիր երկեր, հ. 1, էջ 31)։ Նրանք ապացուցեցին, որ հասարակությունը չի կարող գոյություն ունենալ առանց սեփականության, այսինքն՝ առանց արտադրական հարաբերությունների, վերջին հաշվով, առանց նյութական և հոգևոր բարիքների արտադրության։ Կոմունիզմը վերացնում է ոչ ամեն տեսակ սեփականություն, այլ միայն շահագործողական սեփականությունը, որը մարդու շահագործման հիմքն է։

Բանվոր անհատի հիմնական հատկանիշը աշխատանքն է։ Բուրժուա և բանվոր անհատների հետագա համադրումը հանգեցնում է նոր տարբերությունների, որը վերաբերում է նրանց բարոյական կերպարի այնպիսի էական գծերին, ինչպիսիք են՝ բանվորական կոլեկտիվիզմը և բուրժուական ինդիվիդուալիզմը, բանվորական ինտերնացիոնալիզմը և բուրժուական նացիոնալիզմը։ Անհատները տարբերվում են ոչ միայն դասակարգային հարաբերությամբ։ Նրանց միջև գոյություն ունեն անհատական տարբերություններ, որոնք իրենց կնիքն են թողնում նրանց մտածողության, զգայական գործունեության վրա։

Անհատը պատմական զարգացման արդյունք է։ Նախնադարյան ժամանակներում մի անհատը կարող էր տարբերվել մյուսից միայն մկանների ուժով, տեսողության, լսողության սրությամբ և այլն։ Հետագայում հասարակական կյանքի պատմական երկարատև զարգացման շնորհիվ ստեղծվեց անհատական ընդունակությունների, ձիրքերի, պահանջմունքների և ճաշակների բազմերանգ աշխարհը։ Այդ նկատառումով Մարքսն ասում է, որ երաժշտությունն ստեղծեց երաժշտական ականջը։

Տնտեսական արտադրական հարաբերությունները, որոնք ընկած են հասարակական զարգացման հիմքում, հանդես են գալիս ամենից առաջ իբրև շահերի հարաբերություններ, որոնք որոշում են մարդկանց վարքը, հոգեբանությունը, նրանց պայքարի ու գործունեության նպատակասլացությունը։ Տնտեսական հարաբերությունների վրա բարձրանում են նաև հասարակական այլ հարաբերություններ՝ քաղաքական և իդեոլոգիական, որոնք նույնպես (դասակարգային հարաբերության մեջ) հանդես են գալիս իբրև շահերի հարաբերություններ։

Մարդկանց տարբեր խմբերի, դասակարգերի ու առանձին անհատների շահերը գտնվում են տարբեր հարաբերությունների մեջ. նրանք կարող են լինել փոխադարձ համաձայնության մեջ, ավելի կամ պակաս չափով սահմանազատվել, կարող են լինել անտագոնիստական, փոխադարձաբար բացառող և թշնամական։ Այս հարաբերությունների բազմազանությունը հնարավոր չէ բերել մի ընդհանուր հայտարարի այնպես, որ պիտանի լինի բոլոր պատմական դարաշրջանների համար, որովհետև յուրաքանչյուր հասարակական ֆորմացիա բնութագրվում է իր սոցիալական կառուցվածքով և նրան համապատասխանող մարդկանց շահերի փոխհարաբերությամբ։ Ուստի անհատի ու հասարակության փոխհարաբերությունը յուրաքանչյուր հասարակության մեջ ունի իր տարբերիչ գծերը։ Եվ որքանով որ ստրկատիրական, ֆեոդալական ու կապիտալիստական հասարակություններն իրենց տարբերություններով հանդերձ ունեն ընդհանուր հիմք՝ մասնավոր սեփականությունը, այդքանով նրանց ներհատուկ են ընդհանուր գծերը՝ անհատի և հասարակության փոխհարաբերության միջև։

***

Յուրաքանչյուր հասարակություն, ինչպիսին էլ լինի նրա կառուցվածքը,
կազմում է տնտեսական միասնություն, որի հիմքում ընկած է սեփականու-
թյան այս կամ այն ձևը։ Սեփականությունը դա մարդկանց, սոցիալական
խմբերի, դասակարգերի միջև եղած հարաբերություն է, որը ցույց է տալիս,
թե ում են պատկանում արտադրության միջոցներն ու նրա արդյունքը։ Մարք-
սը գրել է, թե բնութագրել բուրժուական սեփականությունը, նշանակում է
տալ բուրժուական արտադրության բոլոր հարաբերությունների նկարագիրը։
Քանի որ սեփականությունը արտադրության բոլոր հարաբերությունների ամ-
բողջությունն է, ուստի այն է որոշում հասարակական ու տնտեսական կարգի
բնույթը, վճռական դեր խաղում հասարակական բազմերանգ սիստեմում,
դրանից է կախված ու դրանով են որոշվում քաղաքական, իրավական, ազգա-
յին, ընտանեկան և այլ հարաբերություններ։

Սեփականություն և անհատ ընդհանրապես գոյություն չունեն, և՛ մեկը,
և՛ մյուսը միշտ հանդես են գալիս որոշակի, պատմականորեն կոնկրետ սո-
ցիալ-տնտեսական որակով։ Պատմությանը հայտնի են սեփականության մի
շարք ձևեր, որոնք անհատի զարգացման վրա իրենց կնիքն են դրել։ Սեփա-
կանության ձևերի հերթափոխման մեջ է դրսևորվել հասարակական պրո-
գրեսը։

Կապիտալիզմի տիրապետության պայմաններում անհատի արժանիքների
մասին դատում են ըստ նրա սեփականության չափերի։ Փառաբանելով կա-
պիտալիստական խոշոր սեփականատերերին՝ նրանց տնտեսական հանճարը,
տաղանդավոր ձեռնարկումները, բացառիկ գործարարությունը և այլ որակ-
ներ, բուրժուական գաղափարախոսները դրանով իսկ փառաբանում են կա-
պիտալիստական մասնավոր սեփականությունը, մարդու կողմից մարդու շա-
հագործումը։ Կապիտալիստը կառուցում է գործարան, դրանով իսկ զարգաց-
նում է հասարակական արտադրողական ուժերը, բայց նա այդ անում է իր
սեփական շահերից ելնելով միայն։ Ահա թե ինչու կապիտալիզմի պայման-
ներում հասարակականը դրվում է անհատականի ծառայությանը։ Սոցիալիզ-
մի պայմաններում ողջ «անհատականը»՝ գիտելիքը, նախաձեռնությունը
իրացվում է հանրօգուտ շահերի համար։ Այստեղ բոլորը գործում են մի
նպատակով՝ բարձրացնել հասարակական աշխատանքի արտադրողականու-
թյունը։ Հանուն դրա իրականացման մղվող պայքարում մարդու անհատա-
կանությունը հանդես է գալիս որպես հասարակական ուժ, որպես հասարա-
կական եռանդի մարմնացում։

Սոցիալիստական սեփականության առաջին տնտեսական դրսևորումը
կոլեկտիվիզմն է՝ սոցիալիստական անհատի հիմնական բնորոշ գիծը, որով
նա տարբերվում է բուրժուական հասարակության անհատից։ Սոցիալիստա-
կան հասարակության անդամն իր բանվորական ուժը չի վաճառում կապի-
տալին և չի գնում ուրիշի բանվորական ուժը։ «Կոմունիստները մերժում են
բուրժուական հասարակության բարոյականությունը, որտեղ «իմ» հասկա-
ցությունը բարձրագույն սկզբունք է, իսկ ոմանց հարստությունը հնարավոր
է միայն մյուսների քայքայման հաշվին, որտեղ զարգացվում է եսասիրու-
թյան, շահասիրության, հարստացման ծարավի անբարոյական հոգեբանու-
թյունը։ Կոմունիստները մասնավոր սեփականության աշխարհին հակադրում



են հանրային սեփականությունը, բուրժուական ինդիվիդուալիզմին՝ ընկերա-
կանության և կոլեկտիվիզմի սկզբունքը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութե-
րը, էջ 109)։

Կապիտալիստական հասարակարգում աշխատանքն անջատված է սեփա-
կանությունից, այսինքն ոմանք՝ պրոլետարները, գյուղացիները, աշխատում
են, իսկ աշխատանքի արդյունքը յուրացնում են կապիտալիստները՝ արտա-
դրության միջոցների սեփականատերերը։ Մինչդեռ սոցիալիզմի օրոք աշխա-
տանքը և սեփականությունը անջատված չեն միմյանցից, այստեղ ով չի աշ-
խատում, նա չի ուտում: «Առատության՝ որպես անձնական սեփականության,
անսահմանափակ աճման պատկերացումը մերը չէ,— ասել է Ն. Ս. Խրուշչո-
վը,— կոմունիզմին խորթ պատկերացում է։ Շատ առարկաների նկատմամբ
աշխատավորի անձնական սեփականությունը, որպես անհատական սպառման
ձև, չի հակասում կոմունիստական շինարարությանը, քանի դեռ նա պահպա-
նում է բանական չափեր և չի վերածվում ինքնանպատակի»։

Անտագոնիստական ֆորմացիաներում շահագործողները միշտ որպես
կանոն ժխտել են ճնշված աշխատավոր մասսաների արժանապատվությունը,
նրանց դերը հասարակության զարգացման գործում։ Ստրուկը, ճորտը, մու-
ժիկը, գաղութային աշխատավորը, նեգրը անհատներ չէին համարվում ստր-
կատիրոջ, ճորտատիրոջ, կալվածատիրոջ, գաղութարարի և ռասիստի համար։
Մարքսն ու Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» գրել են,
որ կապիտալիստական հասարակության մեջ որպես անհատ ընդունվում է
բուրժուան, սեփականատերը, իսկ աշխատավորը զուրկ է կապիտալից, հետե-
վապես և անհատականությունից։

Մարդկային արժանապատվության նկատմամբ արհամարհանքն իր ար-
տահայտությունը գտավ ֆաշիզմի գաղափարախոսության մեջ։ Հիտլերյան
տիրապետության ժամանակ ավերակ դարձան կուլտուրայի շատ օջախներ,
ոչնչացվեցին միլիոնավոր անմեղ մարդիկ։ Մայդանեկը, Օսվենցիմը, Դա-
խաուն, Բուխենվալդը և այլ համակենտրոնացման ճամբարներ դարձան
մարդկանց մասսայական խոշտանգման, հոշոտման սպանդանոցներ։ «Իրա-
դարձությունների հորձանուտում» սրտառուչ հուշերի հեղինակ Ա. Ն. Ռուբա-
կինը, որն անձամբ տեսել ու վերապրել է հիտլերյան օկուպացիոն ռեժիմի
բոլոր սարսափները, ցույց է տալիս, մի կողմից՝ ահավոր ողբերգությունները,
գազանային սանձարձակություններն ու կամայականությունները, իսկ մյուս
կողմից՝ թշվառության մեջ տառապողների ջերմ հույսերը՝ կապված Սովե-
տական Միության հաղթանակի շնորհիվ ազատագրվելու հետ։ Չնայած մեր
երկրի երդվյալ թշնամիներն ամեն տեսակ ստոր զրպարտություններ էին տա-
րածում մեր Հայրենիքի հասցեին, ժողովուրդներն իրենց ապագա փրկությունը
տեսնում էին Սովետական Միության մեջ։

Ժողովուրդների ակնկալումները Սովետական Միության նկատմամբ
միանգամայն բնական է, քանի որ նա պաշտպանում է համայն աշխատավոր-
ների շահերն ու իղձերը, նրանց ազատասիրական ձգտումներն ու արժանա-
պատվությունը։ Մինչդեռ հիտլերիզմը ամբողջովին ոտնահարեց ոչ միայն
առանձին անհատների, այլև օկուպացված ամբողջ ժողովուրդների ազգային
ու մարդկային արժանապատվությունը։ Կապիտալիստական հասարակության
մեջ, ասում է Լենինը, մարդկային արժանապատվություն փնտրելն իզուր է։
Իսկական արժանապատվությամբ օժտված են ոչ թե շահագործողներն ու նր-

րանց գաղափարական լակեյները, այլ աշխատանքի մարդիկ, ժողովրդի ազատագրության, գիտության և կուլտուրայի պրոգրեսի համար մարտնչողները։ Անձնական արժանապատվության զարգացումը դա մարդու զարգացումն է իբրև քաղաքացու, իբրև բարոյական անհատի։



Սոցիալիզմի հաղթանակը անհատի ընդունակությունների և պահանջմունքների զարգացման պատմական նոր էտապ է։ Սոցիալիզմի դարաշրջանը հիմնովին փոխեց աշխատավոր մարդու հոգևոր կերպարը, նոր թափ հաղորդեց նրա գաղափարական աճմանը։ Սովետական մարդիկ փոխվել ու աճել են այն մեծագույն փոփոխությունների հետ միասին, որոնք արմատապես փոխեցին մեր երկրի դեմքն ու էությունը։ Սոցիալիստական կարգերի ստեղծած բոլոր արժեքներից ամենամեծ արժեքը նոր մարդն է՝ կոմունիզմի ակտիվ կառուցողը։

Մարդն իր հոգևոր ու նյութական պահանջմունքներով միշտ եղել է և կլինի պարտիայի և կառավարության ուշադրության կենտրոնում։ Այդ պատճառով էլ կոմունիզմի համար մղվող պայքարը միաժամանակ պայքար է մարդու լավագույն կյանքի համար՝ «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»։ Լենինի այն խոսքերը, թե «...Աշխարհը չի բավարարում մարդուն և մարդն իր գործունեությամբ որոշում է փոխել այն» ամենից առաջ վերաբերում է հենց սոցիալիստական հասարակությանը։ Մենք ապրում ենք այնպիսի ժամանակաշրջանում, երբ մարդու բարձրագույն կոչումն է ո՛չ միայն բացատրել, այլև՛ փոխել աշխարհը, այն դարձնել ավելի իմաստալից և կյանքի պահանջներն առավել բավարարող։

Սոցիալիստական հասարակությունը բաղկացած է բարեկամական դասակարգերից, դրա շնորհիվ հասարակությունը դառնում է իսկական կոլեկտիվիստական, որի պայմաններում ծագում և զարգանում է նոր անհատը։ Այստեղ անհատը դեռևս պահպանում է որոշակի դասակարգի կամ սոցիալական խմբի իր պատկանելությունը, բայց այդ չի ստեղծում արտոնություն ոմանց և սահմանափակում՝ մյուսների համար։ Անհատի զարգացման աստիճանը և նրա դրությունը սոցիալիստական հասարակության մեջ որոշվում է ոչ թե դասակարգային ծագումով, այլ անձնական որակներով՝ ընդունակություններով, ընդհանուր և մասնագիտական գիտելիքներով, նրա գործունեության հասարակական նշանակությամբ։

Պատմական ներկա էտապում նոր անհատը բանվորն է, կոլտնտեսականը, ինտելիգենտը, որոնք զերծ են բուրժուական բարոյականության, կրոնական միստիֆիկացիայի թմբիրից և օժտված են կոլեկտիվիզմի հատկություններով։

Տնտեսական նոր հիմքի վրա առաջ է գալիս նոր հարաբերություն անհատի և հասարակության միջև։ Սոցիալիստական սեփականությունն իր երկու ձևերով՝ համաժողովրդական և կոլտնտեսային կոոպերատիվ, կազմում է պլանաչափորեն զարգացող մեր տնտեսության հիմքը։ Այն արտադրական ու սոցիալական կյանքի բնագավառներում անհատի և հասարակության միջև բոլոր կապերի ու հարաբերությունների աղբյուրն է, որն օբյեկտիվ բարենպաստ պայմաններ է ստեղծում բոլոր աշխատավորների շահագրգռվածու-



թյան, նյութական և հոգևոր արժեքներ ստեղծելուն, ամուր հիմք է հանդիսանում հասարակական ու անձնական շահերի զուգակցման համար։ «Մեր երկրի, ինչպես և ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի հարուստ փորձը վկայում է, որ ոչ թե մասնավոր, այլ հանրային սեփականությունն է մարդուն ազատագրում սոցիալական կախման բոլոր ձևերից և լայն հնարավորություններ ընձեռում անհատի ազատ զարգացման համար» (Նույն տեղ, էջ 253)։

Սոցիալիզմի պայմաններում հասարակական կյանքի տնտեսական, քաղաքական ու հոգևոր կողմերի միասնությունը խթան է հանդիսանում՝ մարդկանց միջև հումանիստական հարաբերությունների, կոլեկտիվիզմի, եղբայրական համագործակցության և փոխօգնության զարգացմանը։ Սոցիալիստական կոլեկտիվիզմն իր նպատակասլացությունն ու գործուն ուժը ձեռք է բերում ընդհանուր նպատակի համար մղվող համատեղ աշխատանքում։ Մարդիկ աշխատում են՝ ղեկավարվելով ընդհանուր շահերով, հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական մշտական աճող պահանջները բավարարելու ձգտումով, որը դրսևորվում է առաջավոր փորձի, գիտելիքների փոխանակման, փոխադարձ օգնության և աջակցության մեջ։ Այդ հնարավորություն է տալիս մարդուն օգտվելու հասարակության ամբողջ հարստությունից, մարդկության հազարամյա կուլտուրայից։ Հասարակական կյանքի այդպիսի փոփոխությունները բնութագրում են իսկական կոլեկտիվիզմը, անհատի և հասարակության փոխհարաբերությունը։ «Մեր ժողովրդի համար միս ու արյուն են դարձել կոլեկտիվիզմի, ընկերականության, հասարական պարտքի նկատմամբ նվիրվածության ազնիվ զգացմունքները» (Նույն տեղ, էջ 253)։



Անհատի և հասարակության փոխհարաբերությունն ավելի ակտիվ ու բազմակողմանի է զարգանում կոմունիզմի ծավալուն կառուցման էտապում։ Նյութական ու հոգևոր գործունեության բնագավառում աշխատավորության նախաձեռնությունն ու նորարարությունն այն բանի խոր ըմբռնման արտահայտությունն է, որ ամեն ինչ արվում է անհատի և հասարակության համար։ «Բարեխղճորեն վերաբերվել իր աշխատանքին, ամեն ինչ ժամանակին և լավ կատարել՝ նշանակում է գործնականում հոգ տանել իր ընկերների մասին, որոնք նույնպես աշխատում են բոլորի համար, այդ թվում նաև քեզ համար։ Դրանում է արտահայտվում նոր հասարակության մարդկանց ընկերական համագործակցությունը և փոխօգնությունը» (Նույն տեղում, էջ 254)։ Այդպիսի փոխհարաբերության դրսևորումներից է հարվածայինների, կոմունիստական աշխատանքի բրիգադաների կոչման համար մղվող շարժումը, որին ներկայումս մասնակցում են 23 միլիոնից ավելի աշխատավորներ։ Այդ շարժման գլխավոր տենդենցներից մեկը անհատի և հասարակության շահերի մերձեցումն է, նրանց հարաբերության առավել կատարելագործումը։ Նորարարների, ռացիոնալիզատորների, արտադրության առաջավորների բանակի անշեղ աճը սովետական մարդու ձիրքերի և ընդունակությունների ծաղկման վառ ապացույցն է, որը լայնորեն արտահայտվում է կոմունիզմի կառուցման պրակտիկ խնդիրների լուծման մեջ։

*Յուրաքանչյուր անհատ հասարակության հետ կապված է կոլեկտիվների սիստեմի միջոցով, որտեղ անցնում է նրա կյանքը և ծավալվում նրա գործունեությունը։ Արտադրական կոլեկտիվ, ուսումնական խումբ, գիտական հաստատություն, սպորտային ակումբ, ընտանիք, համատեղ հասարակական գործունեություն և այլն. այս բոլորը ամենամեծ կոլեկտիվի՝ սովետական ժողովրդի բաղկացուցիչ մասերն են, տարրերը, կողմերը։ Մեր պայմաններում անհատի հարաբերությունը հասարակության նկատմամբ դրսևորվում է իբրև անհատի հարաբերություն դեպի այդ մերձավոր կոլեկտիվները, որոնք հանդիսանում են յուրաքանչյուր անհատի ուժերի փորձարկման և ընդունակությունների բացահայտման դաշտ։ Նրանք ոչ թե սահմանազատում են անհատին հասարակությունից, ինչպես տեղի է ունենում շահագործողական հասարակարգերում, այլ ներքնապես կապակցում են։ Այդ ներդաշնակությունն ունի սոցիալական ընդհանուր ակունք՝ սոցիալական և ազգային ճնշման վերացումը, հասարակական և պետական արդարացի կարգի հաստատումը։*

*Անհատի և հասարակության սոցիալական փոխհարաբերության ներդաշնակությունը դրսևորվում է ամենից առաջ շահերի ընդհանրության գծով, այսինքն՝ կոլեկտիվների և անհատների նպատակներով ու ձգտումներով։ Սոցիալիստական արտադրության նպատակը հասարակության և նրա անհատների մաքսիմալ պահանջմունքների բավարարումն է, այդ այն փաստի արտացոլումն է, որ սոցիալիզմի տնտեսական սիստեմում* բարձրագույն արժեքը մարդն է *և հենց նրա պահանջմունքների բավարարմանն է ծառայում արտադրությունը։*

*Սոցիալիստական հասարակության նպատակը կոմունիզմի կառուցումն է։ Դա համընկնում է մարդկության զարգացմանը և արտահայտում սովետական ժողովրդի արմատական շահերը։ Այդ նպատակի իրականացման համար հասարակությունը յուրաքանչյուր անհատի պահանջ է ներկայացնում իր ընդունակությունների մաքսիմումը տալ հասարակության ընդհանուր գործին։ «Ըստ ընդունակությունների աշխատել և ըստ աշխատանքի վարձատրվել» սոցիալիզմի ֆորմուլան բովանդակում է անհատի ինքնության ճանաչումը։*

*Մարդկային իսկական արժանապատվության զարգացումը հնարավոր դարձավ միայն սոցիալիզմի պայմաններում, որտեղ յուրաքանչյուր քաղաքացու անձնական արժանապատվությունը պաշտպանում է հասարակությունը, յուրաքանչյուրի համար երաշխավորվում է զբաղմունքի տեսակի և մասնագիտության հավասար ու ազատ ընտրություն՝ ելնելով հասարակության շահերից։ Յուրաքանչյուր մարդու ձիրքերն ու ընդունակություններն օգտագործել հանուն կոմունիզմի կառուցման,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— ահա կոմունիստական ղեկավարների, բոլոր պարտիական կազմակերպությունների կոչումը։ Ահա հենց այս է անհատի և հասարակության փոխհարաբերության իսկական ըմբռնումը։*

*Մարդու, իբրև անհատի, ձևավորման գործում հսկայական դեր է խաղում աշխատանքը։ Մարդը մի կողմից աշխատանքի գործիչ է, նյութական և հոգևոր արժեքների ստեղծող, իսկ մյուս կողմից՝ աշխատանքի արդյունք։* Աշխատանքն է ստեղծել մարդուն,— *մարքսիստական դրույթը պահպանում է իր նշանակությունը նաև կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Կոմունիստական աշխատանքը ստեղծում է ապագա մարդուն։ Նշանակում է աշխատանքը և անհատը անբաժանելի միասնություն են։ Սակայն աշխատանքի ներգործությունն անհատի զարգացման վրա կրում է շատ բարդ և հակասական բնույթ։ Այդ ներգործությունն անհատի վրա կախված է սոցիալ-տնտեսական պայմաններից և աշխատանքի կատարած սոցիալ-տնտեսական ֆունկցիայից։ Անտագոնիստական հասարակության մեջ աշխատանքը հանդես է գալիս իբրև ծանր բեռ շահագործվող աշխատավորների համար։ Կոմունիստական հասարակարգում աշխատանքը դառնում է կյանքի առաջին պահանջ և հաճույքի աղբյուր, ապահովում ազատ մարդու ֆիզիկական և հոգևոր պահանջմունքների բավարարումը։*

*Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պրոցեսում անհատի և հասարակության փոխհարաբերությունը ձեռք է բերում նոր բովանդակություն։ Եթե սոցիալիզմի օրոք հանրային սեփականությունը հանդես է գալիս երկու ձևերով, ապա կոմունիստական շինարարության պայմաններում դրանք կվերաճեն կոմունիստական սեփականության, հետևապես, անհատի և հասարակության ծաղկումը կունենա մի միասնական հիմք։ Դրա հետ սերտորեն կապված են գիտության ու տեխնիկայի հետագա պրոգրեսի ռեալ հնարավորությունները, հասարակության բոլոր անդամների կրթության ու կուլտուրայի զարթոնքը, որից անմիջականորեն կախված է յուրաքանչյուրի ըստ ընդունակությունների աշխատանքը, վերջին հաշվով ամբողջ հասարակության և առանձին անհատի բարիքը։*

*Հասարակության և անհատի շահերի համընկնումը սոցիալիզմի պայմաններում նրանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման հիմնական հարցում չի բացառում, սակայն, ժամանակավոր և մասնակի հակասությունների առկայությունը նրանց միջև։ Սոցիալիստական կարգն ապահովում է արտադրողական ուժերի արագ և անշեղ զարգացումը, նյութական արժեքների ընդլայնված վերարտադրությունը, կուլտուրական բարիքների մեծացումը. դրա հետ մեկտեղ մարդկանց նյութական, կուլտուրական և կենցաղային պահանջմունքները աճում են այնպես արագ, որ արտադրության ներկա մակարդակը դեռևս լրիվին չի բավարարում հասարակության պահանջարկը։ Այս հակասությունները, իհարկե, չեն շոշափում սոցիալիստական հասարակության և անհատի փոխհարաբերությունների* էությունը, *որովհետև դրանք ժամանակավոր բնույթ ունեն և իվերջո կհաղթահարվեն։*

*Սոցիալիզմի օրոք անհատի և հասարակության միջև մասնակի հակասությունները բացատրվում են նաև որոշ քաղաքացիների գիտակցության մեջ ու վարքում առկա անցյալի այնպիսի մնացուկներով, ինչպես՝ ինդիվիդուալիզմը, արհամարհանքը դեպի հանրօգուտ աշխատանքը, բարոյական նորմաների խախտումը հասարակության և անհատի կյանքում։ Այդ մնացուկների դեմ մղվող պայքարում հզոր գործոն է դառնում գաղափարական աշխատանքը։ Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցությունը, այնքան ավելի լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ, հետևապես այնքան ավելի արագ ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները։*



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑՈՒ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏՔԸ

Ս. ՀՅՈՒՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*Արտադրության միջոցների սեփականության որոշակի ձևը կազմում է տվյալ հասարակարգի արտադրական հարաբերությունների հիմքը, նրա գոյության անհրաժեշտ պայմանը: Բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները փորձում են խեղաթյուրել սեփականության էությունը, մթագնել նրա ծագման արտադրական-հասարակական բնույթը: Նրանք ընդունում են սեփականության միայն մեկ՝ մասնավոր-կապիտալիստական ձևը, այն համարելով բնական, հավիտենական կատեգորիա, որի գոյության պայմանը իբրև թե մարդուն հատուկ մասնավոր-սեփականատիրական «բնածին բնազդն» է:*

*Բուրժուազիան մասնավոր սեփականությունը հռչակում է սրբազան և անձեռնմխելի: Սակայն, կարո՞ղ է արդյոք իսկապես սրբազան ու անձեռնմխելի լինել այն սեփականությունը, որը գտնվում է հասարակության անդամների աննշան փոքրամասնության ձեռքում և օգտագործվում իբրև աշխատավորների շահագործման միջոց: Սեփականատիրական այսպիսի հարաբերությունները հանգեցնում են կապիտալիստների հարստացմանը և աշխատավորական լայն զանգվածների աղքատացմանը: Ահա թե ինչու, մերկացնելով բուրժուական գաղափարախոսների հերյուրանքները՝ գիտական կոմունիզմի ծրագրի մասին (որպես սեփականությունն առհասարակ ոչնչացնելու ծրագրի): Մարքսն ու Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» գրում էին, որ «Կոմունիզմի հատկանշական գիծը ոչ թե առհասարակ սեփականության վերացումն է, այլ բուրժուական սեփականության վերացումը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 28):*

## I

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան ջարդեց բուրժուազիայի պետական ապարատը, վերացրեց արտադրության միջոցների մասնավոր կապիտալիստական սեփականությունը, նրա փոխարեն հաստատեց արտադրության միջոցների հանրային սեփականություն:

Արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության անբաժան տիրապետության հաստատումն ամբողջապես հերքում է կապիտալիստական մասնավոր սեփականության հավիտենականության ու անսասանության



մասին բուրժուական տնտեսագետների կեղծ տեսությունը: Սեփականության այս նոր ձևը վիթխարի առավելություններ է տալիս տնտեսության սոցիալիստական սիստեմին, օբյեկտիվ հնարավորություններ է ստեղծում աշխատանքի արտադրողականության բարձրացման, հասարակական առաջընթացի արագացման համար:

Արտադրության միջոցների հանրային սեփականության տիրապետությունը վերացնում է արտադրության հասարակական բնույթի և աշխատանքի արդյունքների յուրացման մասնավոր ձևի միջև եղած հակասությունը, որը հատուկ է տնտեսության կապիտալիստական սիստեմին: Սոցիալիզմի ժամանակ արտադրության հասարակական բնույթին համապատասխանում է արտադրության միջոցների և աշխատանքի արդյունքների հասարակական սեփականությունը: Այդ համապատասխանության վրա հիմնվող սոցիալիստական հասարակարգը բացառում է աշխատանքի այն հսկայական կորուստները, որոնք կապված են արտադրության անարխիայի և գերարտադրության տնտեսական ճգնաժամերի հետ, այն ընձեռում է արտադրության միջոցների ու աշխատուժի պլանաչափ, ռացիոնալ, խնայողաբար օգտագործման անսահմանափակ հնարավորություններ: Դրանով անհրաժեշտ պայմաններ են ստեղծվում սոցիալիստական արտադրության անշեղ վերելքի, ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման համար: Բավական է նշել, որ վերջին 10 տարում մեր երկրի աշխատավորների ռեալ եկամուտները (մեկ աշխատողի հաշվով) ավելացան 61 տոկոսով: 1954 թ. մինչև 1963 թ. նոր բնակարան են ստացել և իրենց բնակարանային պայմանները բարելավել 108 միլիոն մարդ՝ Սովետական Միության ամբողջ բնակչության գրեթե կեսը: ՍՍՌՄ-ում այժմ սովորում են 4 անգամ ավելի շատ ուսանողներ, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում և Իտալիայում միասին վերցրած: Եվ այդ ամենի աղբյուրը սոցիալիստական սեփականությունն է, որի պահպանումն ու ամրապնդումը յուրաքանչյուր սովետական քաղաքացու սրբազան պարտքն է:

Բուրժուական գաղափարախոսները ժխտում են մարդկանց բարոյական կատարելագործման հնարավորությունները: Նրանք փորձում են ապացուցել, որ մարդու խառնվածքին միշտ էլ հատուկ են ուրիշի հաշվին ապրելու ցանկությունը, մասնավոր սեփականատիրական ձգտումները, ժլատությունը, շահամոլությունը, էգոիզմը, դաժանությունը: Բուրժուական մի շարք «տեսաբաններ» նշում են, որ չնայած մարդկանց դարերով սովորեցրել ու քարոզել են չսպանել, չգողանալ, սիրել մերձավորին, այնուամենայնիվ հանցագործությունները, ագահությունը, էգոիզմը և այլ արատներ ամենևին էլ չեն վերացել: Նման փաստարկներն անհիմն են: Բուրժուական գաղափարախոսների ուշադրությունից «վրիպում է» այն, որ մարդկային արատները վերացնելու համար նախ պետք է վերացնել դրանք ծնող սոցիալական պատճառները:

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ մարդու բարոյական հատկությունները, նրա գիտակցությունն ու վարքագիծը պայմանավորված են արտադրական հարաբերությունների բնույթով, հասարակության մեջ տիրապետող սոցիալական կարգով: Արտադրության միջոցների մասնավոր կապիտալիստական սեփականությունը բաժանում է մարդկանց, առաջացնում նրանց շահերի հակադրություն, ծնում է անհատապաշտություն, դաժան մրցակցական պայքար: Արտադրության միջոցների հասարակական սեփականությունը,

դրան հակառակ, միավորում է մարդկանց, ապահովում նրանց անձնական և հասարակական շահերի ներդաշնակությունը, նրանց մոտ արմատավորում է պատմության մեջ նախկինում չտեսնված, բարոյական բարձր հատկություններ։ Բայց մարդկանց գիտակցության մեջ բարոյական այդ վեհ սկզբունքների դաստիարակումը հասարակությունից հսկայական ջանքեր ու նպատակասլաց աշխատանք է պահանջում։

## II

Մասնավոր սեփականատիրական ձգտումների ու էգոիզմի, անհատապաշտության և անցյալի այլ մնացուկների դեմ մղվող պայքարում շատ անելիքներ ունի հասարակայնությունը։ ՍՄԿՊ Ծրագրում ընդգծված է, որ «Հակահասարակական արարքների ընկերական դատապարտումն աստիճանաբար կդառնա բուրժուական հայացքների, բարքերի ու սովորությունների դրսևորումներն արմատախիլ անելու գլխավոր միջոց» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 545)։ Կոմունիզմին անցնելու պրոցեսում ավելի ու ավելի է աճում բարոյական սկզբունքների դերը հասարակական կյանքում և համապատասխանորեն նվազում է մարդկանց փոխհարաբերությունների վարչական կարգավորման նշանակությունը։

Պարտիան գտնում է, որ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը բովանդակող կարևորագույն սկզբունքներից մեկը հասարակության յուրաքանչյուր անդամի հոգատարությունն է հանրային ունեցվածքի պահպանման ու բազմապատկման նկատմամբ։ Սովետական մարդիկ քաջ գիտակցում են, որ աշխատավորների նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքների բավարարման գործում հսկայական դեր է խաղում հոգատար վերաբերմունքը հանրային ունեցվածքի նկատմամբ։ Այն սերտորեն կապված է աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի հետ։ Մեր ռեսպուբլիկայում տարեցտարի աճում է արդյունաբերական ու գյուղատնտեսական առաջավոր այն կոլեկտիվների թիվը, որոնք ցույց են տալիս աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հրաշալի օրինակներ, ներքին ռեզերվների արդյունավետ ու նպատակահարմար օգտագործման շնորհիվ հասնում են աշխատանքի ու միջոցների տնտեսման, բարձր արտադրողականության ապահովման։ Այսպես, օրինակ, Կիրովի անվան գործարանի կոմունիստաբար աշխատող բազմահազարանոց կոլեկտիվը 1963 թ. պլանը կատարեց դեկտեմբերի 16-ին։ Ձեռնարկությունը յոթնամյակի հինգերորդ տարվա անցած ժամանակաշրջանում տնտեսել է ավելի քան 2200 տոննա հիմնական հումք, 2350 տոննա պայմանական վառելիք և մեծ քանակությամբ օժանդակ նյութեր։ 1963 թ. արտադրության մեջ ներդրված նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների տնտեսական օգուտը կազմեց մոտ մեկ միլիոն ռուբլի։ Յուրացվել է «ԿԲ» նոր տեսակի նաիրիտի և «Մխ» արժեքավոր լատեքսի արտադրության տեխնոլոգիան, թողարկվել է մեթիլվինիլկետոն, որից ստացվում է վիտամին «Ա»։ Մեկ բանվորի միջին արտադրողականությունը պլանայինի հանդեպ աճել է 3,5 տոկոսով, զգալիորեն իջել է նաև արտադրանքի ինքնարժեքը։

Լայն պայքար ծավալելով ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումները հաջողությամբ կենսագործելու համար, աշխատանքային



բարձր ցուցանիշների է հասել նաև Երևանի Կենցաղային քիմիայի գործարանի կոլեկտիվը։ Այստեղ շատ բան է արվում արտադրական հնարավորություններն արդյունավետ օգտագործելու, տեխնիկան ու տեխնոլոգիան ավելի կատարելագործելու, արտադրական պլանները կատարելու համար։ Հենց վերջերս լրիվ մեքենայացվեցին հեղուկ ապակու, սոսնձի, մածուկի արտադրության պրոցեսները, յուրացվեց արտադրանքի 5 նոր տեսակի թողարկումը։ Բարեխիղճ աշխատանքի շնորհիվ քիմիագործները ժամկետից շուտ կատարեցին 1963 թ. պետական առաջադրանքները։ Սակայն, դժբախտաբար, մեր ռեսպուբլիկայի որոշ ձեռնարկություններ (լուսատեխնիկական, գեղարվեստական ժամացույցների գործարաններ, հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկա, նուրբ բրդյա գործվածքների—մահուդի կոմբինատը և այլն) լրջորեն չեն զբաղվում տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման հարցերով, թույլ են տալիս ինքնարժեքի թանկացում, խոտան արտադրանք, գերնորմատիվային մնացորդներ, իրացման պլանի թերակատարում, աշխատավարձի ֆոնդի գերածախս, որոնց հետևանքով այդ ձեռնարկություններում ստեղծվել են ֆինանսական դժվարություններ, դրանցից բխող բոլոր հետևանքներով։

Դեռևս կան մարդիկ, որոնք անբարեխիղճ են իրենց պարտականությունների կատարման նկատմամբ, հոգատար չեն դեպի հանրային ունեցվածքն ու աշխատանքը։ Պետական-հանրային սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի բացակայության, աչքակապության, հավելագրումների փաստեր հայտնաբերվեցին, օրինակ, Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանում, «Լենկոշ» ֆաբրիկայում, քարհանքերի վարչությունում, Երևանի կոմունալ շինարարության տրեստի № 3 շինվարչությունում, Հոկտեմբերյանի պահածոների գործարանում։ Այդ ձեռնարկություններում անհրաժեշտ պայքար չէր մղվում արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Որոշ մարդկանց մոտ դեռևս պահպանվում են բուրժուական բարքերի մնացուկները աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ։ Իսկ ոմանք էլ անտարբեր են հանրային սեփականության դեմ ոտնձգություններ կատարողների հանդեպ, հաշտվում են պետական ունեցվածքի հափշտակման, վատնման կամ անտնտեսվար օգտագործման փաստերի հետ։ Նման մարդկանց գիտակցության մեջ «իմը» խոր կերպով պատնեշվում է «մերից», անձնականը՝ հասարակականից, պետականից։

Նման վերաբերմունքի պատճառներից մեկը անցյալի անիծյալ մնացուկների առկայությունն է մարդկանց գիտակցության մեջ, որոնք նրան ստիպում են մշտապես խոնարհվել մասնավոր սեփականության առջև։

Կապիտալիստական աշխարհի մարդն իր սեփականությունը կարող է համարել այն ամենը, ինչ իսկապես միայն իրեն է պատկանում։ Կապիտալիստների, ինչպես և բուրժուական պետության սեփականությունը հանդես է գալիս մարդկանց կամքի, ազատության ու գործունեության վրա իշխող թշնամական ուժ։ Բուրժուական պետությունն իր պատժիչ օրգաններով ու բանտերով պաշտպանում է կապիտալիստի շահերը։ Եվ բնական է, որ այդպիսի պայմաններում աշխատավորները չեն կարող հոգատարություն հանդես բերել, խնայողաբար օգտագործել արտադրության այն միջոցները, որոնց սեփականատերերը ոչ թե իրենք, այլ կապիտալիստներն ու կալվածատերերն են։

Սոցիալիզմն արմատապես փոխեց հասարակության, պետության ու

մարդկանց միջև գոյություն ունեցող տնտեսական ու քաղաքական փոխհարաբերությունները։ Արտադրության միջոցների սեփականատերերը դարձած սովետական մարդիկ աշխատում են իրենց համար, իրենց հասարակության համար։ «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամ հնարավորություն է ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 495)։

Իր համար աշխատելը հնարավոր դարձավ միայն այն ժամանակ, երբ մասնավոր սեփականությունը վերացվեց և ստեղծվեց հանրային սեփականություն։ Սակայն, եթե պատմական կարճ ժամանակամիջոցում ռևոլյուցիոն մի շարք միջոցառումների շնորհիվ «իմը» վերածվեց «մերի», ապա մարդկանց նյութական կյանքի և գիտակցության մեջ կատարվող էվոլյուցիայի շնորհիվ է միայն «մերը» դառնում և «իմը»։

Սոցիալիստական հասարակարգում անձնականը վեր չի դասվում հասարականից, իսկ կոմունիզմի կառուցման համար կատարվող այն համատեղ աշխատանքում, որը հիմնվում է ամբողջ ժողովրդական տնտեսության համար կազմված միասնական պլանի վրա, «իմը» ավելի ու ավելի է միաձուլվում «մերի» հետ։ Այդ պլանը ծառայում է սոցիալիստական սեփականության՝ գոյություն ունեցող երկու ձևերի զարգացմանն ու ամրապնդմանը։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում առկա տեխնիկան, ձեռնարկությունները, շինարարական կառույցները, ամբողջ նյութատեխնիկական բազան, ինչպես նաև արագ աճող արդյունաբերական արտադրանքը կազմում են հանրային սեփականության իրային բովանդակությունը։

Առանց արտադրության միջոցների հանրային սեփականության աճի անհնար է ապահովել պետական (համաժողովրդական) ու կոլտնտեսային կոոպերատիվ սեփականության զարգացումը և սոցիալիստական արտադրական հարաբերություններից անցնել կոմունիստական հարաբերությունների։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի բոլոր հիմնական խնդիրները սերտորեն կապված են սոցիալիստական սեփականության հետագա աճի ու ամրապնդման հետ։

## III

Կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդն ուժեղացնում են պայքարն աշխատանքի ու սոցիալիստական սեփականության նկատմամբ անպատասխանատվության, անբարեխղճության, անկարգապահության, շռայլումների և խոտանարարության դեմ։ Լենինը պահանջում էր, որ պրոլետարական իշխանությունն իրականացնի «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքը և խիստ պատժի նրանց, ովքեր ձգտում են որքան կարելի է քիչ տալ սոցիալիստական հասարակությանը, նրանից ստանալ որքան կարելի է շատ։ Լենինը հատկապես ընդգծում էր ժուլիկների, սպեկուլյանտների և խուլիգանների դեմ եռանդուն պայքար կազմակերպելու անհրաժեշտությունը։

Սոցիալիստական սեփականության պահպանումն ու հետագա ամրապնդումը մեծ չափով պայմանավորված են աշխատավորության նյութական շահագրգռվածության սկզբունքի ճիշտ կիրառմամբ։ Նյութական շահագրգռվա-



ծության սկզբունքի մյուս կողմը պետք է դառնա աշխատողի նյութական պատասխանատվությունը։ Կյանքը ցույց է տալիս, որ քաղաքացիական պարտքի զգացումը, խիղճը կորցրած մարդկանց վրա միայն բարոյական ազդակներով ներգործելը շատ անգամ ցանկալի արդյունք չի տալիս։ Ավելին, անազնիվ մարդիկ միայն չարաշահում են իրենց ընկերների մարդասիրական վերաբերմունքը և շարունակում վատ աշխատել, անհոգի վերաբերմունք ցույց տալ սոցիալիստական սեփականության նկատմամբ։ Հանրային ունեցվածքի նկատմամբ անհոգի, անփույթ վերաբերմունքի, աշխատանքային կարգապահության խախտումների դեմ պայքարն ուժեղացնելու նպատակով անհրաժեշտ է նյութական շահագրգռվածության սկզբունքը կիրառել այնպես, որ այն օրգանապես կապված լինի աշխատողի նյութական պատասխանատվության հետ։ Այլ կերպ, նյութական շահագրգռվածության խթանիչ սկզբունքը որոշ մարդկանց կողմից կարող է օգտագործվել միայն նեղ, շահադիտական նպատակներով։

Ղեկավարվելով սոցիալիստական սեփականությունը պահպանելու և ամրապնդելու մասին լենինյան ցուցումներով, 1962 թվականի մայիսի 5-ին ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահությունն ընդունեց «Առանձնապես վտանգավոր հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու մասին» հրամանագիրը, որի համաձայն մահապատժի են ենթարկվում մեծ չափերի հասնող պետական ու հասարակական ունեցվածք հափշտակողները։ Մեր երկրում ամեն մի քաղաքացի լայն հնարավորություններ ունի աշխատելու, իր ստեղծագործական ունակությունները զարգացնելու և դրսևորելու համար։ Հասարակության այն անդամի նկատմամբ, ով չի օգտագործի այդ հնարավորությունները և կկանգնի վտանգավոր հանցագործությունների ուղու վրա, սովետական պետությունն ստիպված կլինի կիրառել խիստ և վճռական միջոցներ։ Այդ իսկ պատճառով սովետական մարդիկ գոհունակությամբ ընդունեցին ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը, որովհետև սոցիալիստական սեփականությունը մեր հասարակարգի տնտեսական հիմքն է, նրա անսասանությունից ու աճից են կախված աշխատավորական բազմամիլիոն զանգվածների երջանկությունը, ապագան։

Սոցիալիստական սեփականության դեմ կատարվող ոտնձգությունները ոչ միայն նյութական, այլև բարոյական մեծ վնաս են հասցնում մեր հասարակությանը։ Բանն այն է, որ անաշխատ եկամուտներով ապրողները վարակիչ օրինակ են հանդիսանում որոշ մարդկանց, հատկապես կյանքի ու աշխատանքի մեծ փորձ չունեցող երիտասարդության համար։

ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թ. նոյեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ. «Միանգամայն անթույլատրելի է, երբ առանձին պարտիական կոմիտեներ հանդուրժողաբար են վերաբերվում կոմունիստների կողմից պաշտոնի չարաշահումների փաստերին և ավելին, երբեմն հովանավորում են նրանց, պաշտպանության տակ առնում։ Հայտնի է, որ Լենինը միշտ դեմ էր օրինազանցներին պաշտպանելու միայն այն հիման վրա, որ նրանք պարտիայի անդամ են»։

Սոցիալիստական սեփականության պահպանությունն ուժեղացնելու համար պետք է խիստ ուշադիր լինել աշխատավորների այն ահազանգների, դիմումների ու նամակների նկատմամբ, որոնց մեջ բացահայտվում են հանրային ունեցվածքի հափշտակման ու վատնման փաստեր։

Սոցիալիստական սեփականության պահպանման և ամրապնդման գործում մեծ դեր պետք է խաղան վերահսկողության օրգանները։ Ինչպես ցույց տվեց ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումը, վերահսկողության լենինյան սկզբունքի խախտման հետևանքով ստուգումները մեծ մասամբ ձևական բնույթ էին կրում և ցանկացած արդյունքը չէին տալիս։ Ստուգողները հիմնականում հետաքրքրվում էին փաստաթղթերում ձևակերպումների ճշտությամբ, աչքաթող անելով փաստական վիճակը, իրենց ուշադրությունը չէին կենտրոնացնում տնտեսական գործունեության արդյունքների և փաստաթղթերում ներկայացված բարվոք վիճակի միջև եղած աղաղակող անհամապատասխանության վրա։

«Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը,— նշել է Լենինը,— այս է, դարձյալ այս է, միմիայն այս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հատ. 33, էջ 265)։ Հսկայական նշանակություն տալով վերահսկողությանն ու կատարման ստուգմանը վերից վար, Վ. Ի. Լենինը գտնում էր, որ սոցիալիստական շինարարության հաջողության գրավականը, մեր քաղաքականության ուժի աղբյուրը պարտիական ու պետական միասնական վերահսկողությունն է։

IV

Սոցիալիստական սեփականության պահպանումն ու ամրապնդումը պետք է դառնա սովետական յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքը։ Կոմունիզմի կառուցման մեծ գործին սովետական մարդկանց մասնակցության աստիճանն արտահայտվում է նախ և առաջ աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքի մեջ։ Սոցիալիստական սեփականության պահպանումն ու ամրապնդումը բարձրացնում է ժողովրդի նյութական մակարդակը։ Ուստի, քանի դեռ գոյություն ունեն հանրային սեփականության հափշտակման և վատնման փաստեր, սովետական ժողովուրդը պետք է աչալուրջ լինի և իր բոլոր ուժերով խափանի հանցագործ տարրերի նենգ դիտավորությունները։

Ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարությունը վերակառուցելու, վերահսկողության պարտիական-պետական միասնական սիստեմ ստեղծելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները մեծ դեր կխաղան սոցիալիստական սեփականության պահպանման ու ամրապնդման գործում, կարագացնեն սովետական հասարակարգի առաջընթացը դեպի կոմունիզմ։



ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## *ՄԵՐ ԻՆՏԵՐՎՅՈՒ*

Երևանի Կիրովի անվան գործարանի դիրեկտոր ընկ. **Ս. Թումանյանը**, որը մասնակցել է ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումին, մեր թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ հանգամանալի պատասխանեց խմբագրության հետաքրքրող հարցերին: Ստորև հրապարակում ենք այդ ինտերվյուն:

*ՀԱՐՑ.— Ինչպիսի՞ն է Ձեր գործարանի արտադրանքի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության մեջ։*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մինչ անմիջապես այդ հարցին պատասխանելը ես կկամենայի ընդգծել, որ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը մի նոր էտապ է նշանավորում սովետական ժողովրդի կյանքում: Այդ պատմական պլենումն ամբողջ պարտիայի և աշխատավորության ուշադրությունը բևեռեց ժողովրդական տնտեսության առավել առաջադիմական ճյուղի՝ քիմիական արդյունաբերության զարգացման վրա: Այն հնարավորություն կտա ամենակարճ ժամկետներում առավելագույն արդյունք ստանալու կապիտալ ներդրումներից, պայմաններ ստեղծելու գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար, տեխնիկական առաջադիմությունը ծավալելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, ընդլայնելու ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը և իջեցնելու դրանց ինքնարժեքը:

Մեր երկրում քիմիական արդյունաբերության արագ զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի ընդունած կարևորագույն որոշումները Երևանի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի համար ոչ միայն գործողության ծրագիր են, այլև առաջիկա մի քանի տարիներում գործարանի առջև ծառացած խնդիրների հաջող կատարման հաստատուն երաշխիք: Գործարանի կոլեկտիվը գործադրում է իր բոլոր ջանքերը՝ ապահովելու բնական գազից ացետիլեն արտադրող արտադրամասը հաջողությամբ շահագործման հանձնելու համար, առաջիկա երկու տարում կրկնապատկել նաիրիտի և կաուստիկ սոդայի թողարկումը, զգալիորեն ընդլայնել կրոտիլինի, աղաքթվի, քլորբենզոլի և մյուս նյութերի արտադրությունը:

Հայտնի է, որ քլորոպրեն կաուչուկ-նաիրիտն անփոխարինելի նյութ է մի շարք ընդհանուր և մասնագիտական նշանակություն ունեցող ապրանքներ արտադրելու համար: Այն կարող է հաջողությամբ փոխարինել բնական կաուչուկին, գուտապերչին, կապարին և այլ նյութերի: Վերջին տարիներս նաիրիտի մի քանի տեսակներ լայնորեն կիրառվում են ժողովրդական սպառման առարկաների արտադրության ասպարեզում: Եթե նկատի ունենանք, որ

Կիրովի անվան գործարանը դեռ մի քանի տարի շարունակ կմնա որպես նաիրիտի միակ արտադրողը, ապա միանգամայն ակնհայտ է այն մեծ նշանակությունը, որ ձեռք է բերում այդ դեֆիցիտային նյութի արտադրության ընդլայնումը մեր գործարանում:

1963 թվականին Կիրովի անվան գործարանի համախառն արտադրանքը ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրության ընդհանուր ծավալի մեջ զգալի տոկոս էր կազմում:

Սակայն պետք է նշել, որ արտադրության ծավալը մեծածախ գներով դեռ լրիվին չի բնորոշում գործարանի նշանակությունը և տեղը ռեսպուբլիկայի քիմիական արտադրության մեջ: Ցածր մեծածախ գները պայմանավորված են այն բանով, որ գործարանի արտադրությունը հիմնականում խարսխված է էժան հումքի (կրաքար, բնական գազ, աղ) վրա. դրան նպաստել են նաև վերջին տարիներս կենսագործված կազմակերպական-տեխնիկական միջոցառումները, որոնք թույլ տվեցին խիստ կրճատել հումքի, էներգիայի և օժանդակ նյութերի ծախսումները, շեշտակի կերպով իջեցնել արտադրանքի մեկ միավորի ինքնարժեքը: Քլորոպրեն սինթետիկ կաուչուկը, որն ամենաթանկն էր սինթետիկ կաուչուկի մյուս տեսակների մեջ, այժմ 1,5—2 անգամ էժան է նրանցից: Նույնը կարելի է ասել կաուստիկ սոդայի, քլորբենզոլի և գործարանի արտադրած մյուս նյութերի մասին:

Այսպիսով, գործարանի կոլեկտիվը կարողացավ խիստ շահութաբեր դարձնել արտադրությունը: Միայն 1963 թվականին գործարանի արտադրանքային շահույթը կազմեց 1,1 միլիոն ռուբլի:

Առաջիկա 1964—1965 թվականներին, յուրացնելով ացետիլենի արտադրությունը բնական գազից, գործարանը հումքային նախադրյալներ կստեղծի ոչ միայն սինթետիկ կաուչուկի արտադրության, այլև ամբողջ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացմանը զարկ տալու համար:

Հայտնի է, որ «Պոլիվինիլացետատ» գործարանի կարողությունների հետագա ընդլայնումը և ռեսպուբլիկայում «վինոլ» մանրաթելի արտադրության ստեղծումը պահանջում են ավելացնել ացետիլենի և քացախաթթվի արտադրությունը: Նախատեսված է Կիրովի անվան գործարանում կազմակերպել քացախաթթվի արտադրություն բենզինի օքսիդացման միջոցով: Այդ քացախաթթուն կօգտագործվի ոչ միայն «վինոլ», այլև մեծ քանակությամբ ացետիլցելյուլոզ և վինիլացետատ արտադրելու համար:

Նախատեսված է նաև ացետիլենի արտադրության պրոցեսում ստացվող սինթեզ գազի բազայի վրա կառուցել պլաստմասսա արտադրող մի մեծ կոմբինատ:

Նոր կարողությունների գործարկման պլանը հաջողությամբ կենսագործելու համար մենք պետք է շինարարական, մոնտաժային մեծ աշխատանքներ կատարենք:

*ՀԱՐՑ.— Որքա՞ն կապիտալ ներդրումներ են կատարվելու առաջիկայում և ի՞նչ նպատակով:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Անցած երեք տարիներին գործարանի կապիտալ շինարարության վրա շատ ավելի միջոցներ են ծախսվել, քան գործարանի բուն արժեքն էր վերակառուցումից առաջ: Իսկ ացետիլեն, քացախաթթու և այլ նյութեր արտադրող ցեխերը ժամանակին գործարկելու համար պահանջվում է առաջիկա երկու-երեք տարիներին կրկնապատկել կապիտալ ներդրումները:



Պետք է ասել, որ գործարանի վերակառուցումը շահավետ է: Այդ ուղղությամբ կապիտալ ներդրումները կհատուցվեն նախագծային կարողության հասնելուց մեկուկեսից երկու տարի հետո:

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը կոնկրետ միջոցառումներ է նախատեսել քիմիայի ձեռնարկությունների շինարարությունը նախագծային-նախահաշվային դոկումենտացիայով և անհրաժեշտ սարքավորումով ապահովելու համար, ինչպես նաև շինարարական կազմակերպությունների առջև մեծ խնդիրներ է դրել շինարարական-մոնտաժային աշխատանքների աճող պլանը կատարելու ուղղությամբ:

Պլենումի որոշումները մեզ վստահություն են ներշնչում, որ հաջողությամբ կիրագործվի ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության հումքային բազայի ստեղծման և մեր գործարանի վերակառուցման մեծ ծրագիրը:

*ՀԱՐՑ.— Ինչպե՞ս եք լուծելու արտադրության ավտոմատացման և մեքենայացման հարցը:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Գործարանում նոր ցեխերի ստեղծումը և գործող ցեխերի վերակառուցումը տեղի կունենան ավելի կատարյալ տեխնոլոգիայի, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման հիման վրա:

Կաուչուկի արտադրությունը խարսխելով բնական գազից ստացվող ացետիլենի վրա, գործարանը հնարավորություն կունենա ազատվելու կալցիումի կարբիդի արտադրության չափազանց աշխատատար, դժվարին ու վնասակար աշխատանքներից և ստեղծելու ացետիլենի արտադրության լրիվին ավտոմատացված ցիկլ:

Գործարանի շատ ցեխերի կարողությունները աճում են ոչ թե ապարատների քանակությունը մեխանիկաբար ավելացնելու հաշվին, այլ, գլխավորապես, բարձր արտադրողականություն և ավելի կատարյալ կոնստրուկցիաներ ունեցող ապարատներ տեղակայելու միջոցով:

Այսպես, օրինակ, վերակառուցումից առաջ գործարանի հիմնական ցեխերից մեկում՝ 1—8 ցեխում տեղակայված էին 15 ռեակտոր, իսկ վերակառուցումից հետո 10 նոր մոդեռնացված ռեակտորները կապահովեն գործարանի արդեն եռապատիկ կարողությունը: Այդ ռեակտորների կոնստրուկցիաները մշակվեցին և դրանց արտադրական ստուգումը իրականացվեց Կիրովի անվան գործարանի նորարարների նախաձեռնությամբ, որի շնորհիվ պայմաններ ստեղծվեցին արտադրական պրոցեսները ավելի պակաս կապիտալ ներդրումներով ավտոմատացնելու:

Գլանների ծավալը և սինխրոնային շարժիչների պտույտների թիվն ավելացնելու միջոցով գործարանի նորարարները կարողացան նաև կրկնապատկել սառեցնող մեքենաների կարողությունները: Այդ առաջարկությունը հնարավորություն տվեց հրաժարվելու նոր ցեխի կառուցումից և պարզեցրեց ավտոմատացման սխեման:

Արտադրական պրոցեսների հետագա ավտոմատացման և մեքենայացման ամենաբնորոշ ցուցանիշներից մեկն այն է, որ վերակառուցումից հետո աշխատանքի արտադրողականությունը գործարանում կավելանա 2,5 անգամ:

Սակայն պետք է նշել, որ վերակառուցման նախագծերում հնարավոր չի եղել նախատեսել արտադրության բոլոր պրոցեսների լրիակատար ավտոմատացումը, բավականաչափ մշակված չեն բեռնման և բեռնաթափման աշխատանքների մեքենայացման հարցերը: Անբավարար է լուծված նաև պոլիմե-

րացման պրոցեսի ավտոմատացման հարցը: Այդ թերությունը վերացնելու
նպատակով սինթետիկ կաուչուկի համամիութենական գիտահետազոտական
ինստիտուտի Երևանի ֆիլիալը 1964 թվականին իր գիտահետազոտական աշ-
խատանքների պլանի մեջ նախատեսել է մշակել անընդհատ պոլիմերացման
պրոցեսին վերաբերող թեմաներ և դրանք ստուգել արտադրության մեջ: Ան-
հրաժեշտ է նաև, որ «Գիպրոկաուչուկ»-ը, որը Կիրովի անվան գործարանի
գլխավոր նախագծողն է, կրկին անգամ ուշադիր ուսումնասիրի գործարանի
առաջ քաշած հարցերն ու առաջարկությունները և արդեն կազմված նախա-
գծերը վերանայի արտադրության պրոցեսների հետագա մեքենայացման ու
ավտոմատացման տեսանկյունով:

*ՀԱՐՑ.— Ձեր գործարանը ինչո՞վ է նպաստելու գյուղատնտեսության զարգացմանը:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշում-
ներում մեծ տեղ է հատկացված նաև գյուղատնտեսության քիմիացմանը, դրա
հիման վրա գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը և
մեր երկրում սննդամթերքների առատություն ստեղծելուն:
Հայտնի է, որ մինչև 1963 թվականը Կիրովի անվան գործարանը չէր ար-
տադրում ոչ մի այնպիսի քիմիկատ, որը անմիջականորեն օգտագործվեր
գյուղատնտեսական արտադրության մեջ: Երևանի գյուղատնտեսական ինստի-
տուտում քիմիական գիտությունների թեկնածու ընկ. Վ. Դովլաթյանի ջանքե-
րով մեր գործարանի 1—9 ցեխի մնացորդներից հաջողվեց ստանալ մի նոր
հերբիցիդ՝ կրոտիլին: Անցյալ տարի նրա մշակած տեխնոլոգիայի հիման վրա
մեր գործարանը շահագործման հանձնեց կրոտիլին արտադրող փորձնական-
արտադրական սարքավորումը: Ցանքատարածություններում կատարած փոր-
ձերը ցույց են տվել, որ կրոտիլինը մեծ արդյունք է տալիս հացահատիկային
կուլտուրաների մոլախոտերի դեմ մղվող պայքարում: Նախնական տվյալնե-
րով կրոտիլինի օգտագործման շնորհիվ հացահատիկային կուլտուրաների մեկ
հեկտարի բերքատվությունը ավելանում է մոտ 3 ցենտներով:
Այդ արժեքավոր հերբիցիդի մասսայական արտադրության համար նա-
խատեսված է մեր գործարանում կառուցել 1—9 ցեխի մնացուկների վերա-
մշակման մի մեծ ցեխ: Այսպիսով մենք կունենանք քիմիական արդյունաբե-
րության ևս մի նոր ճյուղ՝ հերբիցիդների արտադրություն: Գիտակցելով այդ
հերբիցիդի կարևոր նշանակությունը գյուղատնտեսության մեջ, գործարանի
կոլեկտիվը դեռևս ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի նախապատ-
րաստման ժամանակաշրջանում մի շարք կազմակերպական ու տեխնիկական
միջոցառումներ մշակեց կրոտիլինի արտադրությունը նախքան նոր ցեխի
կառուցումը ավելացնելու համար:
Դրա հետ մեկտեղ միջոցներ են ձեռք առնվում այդ ցեխի շինարարու-
թյունն ամենակարճ ժամկետում ավարտելու համար, որը հնարավորություն
կտա, նախիրիտի արտադրության անմանը զուգընթաց 1963 թվականի համե-
մատությամբ մոտ 10 անգամ ավելացնելու կրոտիլինի արտադրությունը:
Ինչպես հայտնի է, Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը անհրաժեշտ հա-
մարեց նաև ընդլայնել թունաքիմիկատների կիրառումը գյուղատնտեսության
վնասատուների դեմ մղվող պայքարում: Այդ առնչությամբ մեծապես աճում
է քլորբենզոլի պահանջը: Նախնական հաշվարկումները ցույց են տվել, որ
քլորբենզոլի արտադրության կրկնապատկման համար ցեխի վերակառուցման



կապիտալ ներդրումները 2 անգամ պակաս կլինեն, քան նման արտադրության նոր գործարանի կառուցումը: Թվում է, որ ռեսպուբլիկայի Պետպլանը և Ժողտնտխորհը համապատասխան որոշում կընդունեն այս կարևոր հարցի վերաբերյալ:

Ացետիլենի արտադրության պրոցեսում, ինչպես հայտնի է, գոյանում է հարյուր միլիոնավոր խորանարդ մետրերով սինթեզ-գազ, իսկ սինթեզ-գազը արժեքավոր հումք է մեծ քանակությամբ քիմիական պարարտանյութեր թողարկելու և բնական կերին խառնելու համար սպիտակուցային նյութեր՝ ամիակ, կարբոնիտ, ինչպես նաև պլաստմասսաներ արտադրելու համար: Քանի որ սինթեզ-գազն ըստ էության արտադրության մնացորդ է, ուրեմն նրա բազայի վրա գյուղատնտեսության համար անհրաժեշտ նյութերի և պլաստմասսաների արտադրություն ստեղծելը համեմատաբար քիչ կապիտալ ներդրումներ կպահանջի և խիստ օգտակար կլինի: Բնական գազի կոմպլեքսային օգտագործման անհրաժեշտության հարցը բազմիցս բարձրացվել է պլանավորող և նախագծող կազմակերպությունների առջև: Սակայն համեմատաբար միայն վերջերս նախատեսվեց օգտագործել սինթեզ-գազը մեթանոլ արտադրելու և դրա բազայի վրա ամինո-պլաստի, պոլիֆորմալդեհիդի և այլ նյութերի արտադրություն ստեղծելու համար:

Այդ ցեխերի նախագծումը կսկսվի միայն 1964 թվականին և մինչև համապատասխան ձեռնարկության կառուցումը մենք ստիպված պետք է լինենք այդ արժեքավոր հումքը վառել կաթսայատներում:

Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներից, մենք նպատակահարմար ենք համարում այնպես վերանայել այդ արտադրության կազմակերպման հարցը, որ սինթեզ-գազի մի մասը նաև օգտագործվի քիմիական պարարտանյութերի և սպիտակուցային նյութերի արտադրության համար, միաժամանակ արագացվի համապատասխան ձեռնարկության նախագծումն ու կառուցումը, որպեսզի արդեն 1966 թվականին սինթեզ-գազն օգտագործվի ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող արտադրանք թողարկելու համար:

*ՀԱՐՑ.— Ի՞նչ եք անելու ներքին ռեզերվների ու հնարավորությունների օգտագործման ուղղությամբ:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Այժմ, երբ մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն առաջ է քաշել քիմիական արդյունաբերության ըստ ամենայնի ընդլայնման խնդիրը, մեր բոլորի առջև ծագել է լրացուցիչ արտադրանք թողարկելու համար արտադրության ներքին ռեզերվների առավելագույն օգտագործման հարցը:

Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը մեծ փորձ ունի այդ բնագավառում: ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենումից հետո, իրականացնելով մի շարք կազմակերպական միջոցառումներ, կիրովցիները կարողացան իջեցնել հումքի և էներգիայի ծախսումները, ավելի լավ օգտագործել սարքավորումը և ավելի լավ կազմակերպել աշխատանքը: Այդ բոլորի շնորհիվ արտադրանքն ավելացավ մոտավորապես 1,5 անգամ և նշանակալի չափով իջավ նրա ինքնարժեքը:

Գործարանի կոմունիստական աշխատանքի կոլեկտիվը պատվով իրագործեց ստանձնած պարտավորությունները և 1963 թվականի պլանը կատարեց նույն թվականի դեկտեմբերի 16-ին, խնայելով 2200 տոննա կալցիումի կարբիդ, 2350 տոննա պայմանական վառելիք:

Բնորոշ է, որ արտադրանքի թողարկման ավելացումը կատարվել է ներքին ռեզերվներն ավելի լավ օգտագործելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, արտադրությունն ավտոմատացնելու ու մեքենայացնելու միջոցով: Այսպիսով՝ արտադրանքը հիմնականում աճել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Դա մեզ հիմք է տալիս համոզված լինելու այն բանում, որ մենք հետագայում հնարավորություն կունենանք գերազանցելու նախագծվող կարողությունները: Ներքին ռեզերվները ավելի լավ օգտագործելու ցուցանիշ է հումքի մեկ միավորից ավելի շատ արտադրանք ստանալը, ինչպես նաև արտադրության մնացորդների օգտագործումը արժեքավոր քիմիական նյութեր (հերբիցիդներ, թունաքիմիկատներ, լաքեր, ներկեր և պլաստմասսաներ) ստանալու համար:

Չնայած այդ ուղղությամբ կատարված մեծ աշխատանքին, այնուամենայնիվ գործարանում դեռ շատ ռեզերվներ կան հումքի ծախսման նորմաների կրճատման հաշվին արտադրանքի թողարկումը զգալիորեն ավելացնելու համար: Այսպես, 1—8 և 1—9 ցեխերի ռեակտորների աշխատանքի ռեժիմն ավելի լավ կարգավորելու միջոցով կարելի է 10—15 տոկոսով կրճատել օժանդակ նյութերի արտադրությունը և դրա հաշվին ավելացնել հիմնական արտադրանքի թողարկումը:

Նաիրիտի թողարկումը ավելացնելու համար չօգտագործված մեծ ռեզերվներ կան պոլիմերացման և արտահոսման ցեխերում: Մինչև 1963 թվականն այդ ցեխերում կիսամթերքի 8 տոկոսից ավելին չէր օգտագործվում և ապականում էր ցեխի և նրա շրջակայքի մթնոլորտը: Սինթետիկ կաուչուկի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի Երևանի ֆիլիալի առաջարկությամբ փոխվեց պոլիմերացման ռեժիմը, իսկ այդ հնարավորություն տվեց կիսամթերքի ավելի լրիվ օգտագործման հաշվին ավելի քան 3 տոկոսով ավելացնելու նաիրիտի թողարկումը: Պոլիմերացման անընդհատ սխեմա կիրառելիս պայմաններ կստեղծվեն ապարատուրան հերմետիկ դարձնելու, իսկ այդ հնարավորություն կտա կիսաարտադրանքը լիովին օգտագործել լրացուցիչ նաիրիտ թողարկելու համար: Դժվար է թվարկել լրացուցիչ արտադրանքի թողարկման ավելացման բոլոր հնարավորություններն ու ռեզերվները: Անտարակույս, այս հարցի լուծման մեջ իրենց արժանի ավանդը կմուծեն մեր արտադրության նորարարները: Հայտնի է, որ նրանց արժեքավոր առաջարկությունների արմատավորման շնորհիվ միայն 1963 թվականին ստացվեց ավելի քան մեկ միլիոն ռուբլի տնտեսական օգուտ:

Գործարանի արտադրանքի ինքնարժեքը զգալիորեն կիջնի նաև այն դեպքում, երբ արտադրության մեջ ավելի լրիվ օգտագործվի տեղական հումքը՝ հեռավոր շրջաններից բերվող հումքի փոխարեն: Այսպես, երբ կաուստիկ սոդայի արտադրությունը հիմնվի տեղական աղի ստորերկրյա լվացահանման մեթոդով ստացվող աղաջրի վրա, ապա դա զգալիորեն կիջեցնի արտադրանքի ինքնարժեքը և մեր ժողովրդական տնտեսության համար տարեկան կազատի 3750 երկաթուղային վագոններ, որոնցով աղ է տեղափոխվում Բասկունչակից:

Ստորերկրյա լվացահանման միջոցով արդեն այս տարի աղաջրի արտադրություն է կազմակերպվում Աբովյանի շրջանի Մայակովսկի գյուղի մերձակայքում: Կառուցումն ավարտելուց հետո աղաջուրը խողովակներով կհասնի գործարան: Այդ եղանակով գործարանն արդեն աղաջուր արտադրում է ձեռ-



նարկության տերիտորիայում կառուցված աղահանքից: 1963 թվականից այն կիրառվում է արտադրական նպատակներով, որի շնորհիվ հնարավորություն է ստեղծվել 1964 թվականին 24 հազար տոննայով կրճատելու հեռավոր շրջաններից ստացվող աղի քանակը: Գործարանում ստացվող աղի մեկ տոննայի ինքնարժեքը ավելի քան երեք անգամ էժան է բերովի աղից, իսկ ստորերկրյա մեծ քանակությամբ լվացահանում կազմակերպելու դեպքում նրա ինքնարժեքն ավելի կիջնի:

Անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի Պետպլանը մանրամասն քննի ստորերկրյա լվացահանման մեթոդով ստացվող աղն ավելի լայնորեն օգտագործելու, քիմիական նոր արտադրություններ ստեղծելու, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս կարիքները հոգալու հարցը: Այս առնչությամբ հարկավոր է վերանայել Ավանի աղահանքերի շինարարության ստրուկտուրան, քանի որ աղն այնտեղ արդյունահանվելու է հանքախորշերից և այդ պատճառով էլ մեծ ինքնարժեք կունենա, քան ստորերկրյա լվացահանման միջոցով ստացվող աղը:

*ՀԱՐՑ.— Արդյոք Ձեզ մոտ արտադրվում ե՞ն լայն սպառման առարկաներ և ի՞նչ:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներում մեծ նշանակություն է տրվում ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնման համար քիմիական նյութերի օգտագործման հարցին:

Այդ որոշումներին համապատասխան մեզ մոտ ավելանալու է կաուչուկի և լատեքսի այնպիսի տեսակների արտադրությունը, ինչպիսիք են՝ ՆՏ նաիրիտը, քլորնաիրիտը, ԼԴ նաիրիտը, որոնք թեթև արդյունաբերության մեջ հաջողությամբ փոխարինում են բնական գուտապերչին և բնական կաուչուկին, ինչպես նաև ավելանալու է էմուլսիաների և խեժերի փոխարինիչների արտադրությունը, որոնց վրա առաջներում մեծ քանակությամբ սննդամթերք էր ծախսվում:

Նախատեսված է քլորոպրենային կաուչուկի բազայի վրա նոր պոլիմերային նյութեր սինթեզել: Այդ նյութերի կիրառումը ժողովրդական սպառման առարկաների արտադրության մեջ կբարձրացնի արտադրանքի որակը, կիջեցնի ինքնարժեքը և պայմաններ կստեղծի արտադրական պրոցեսների մեքենայացման համար: Այդ աշխատանքները կատարվում են սինթետիկ կաուչուկի գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալի, գործարանի կենտրոնական լաբորատորիայի, ինժեներա-տեխնիկական աշխատողների և նորարար բանվորների համատեղ ջանքերով, հաշվի առնելով ինչպես Հայկական ՍՍՌ-ի, այնպես էլ երկրի մյուս տնտեսական շրջանների կաշվի, կոշկեղենի և տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների առաջարկությունները:

*ՀԱՐՑ.— Ի՞նչ է կատարվելու կադրերի որակավորման ուղղությամբ:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի առջև կանգնած մարտական խնդիրները հաջող կատարելու համար անհրաժեշտ է համապատասխան աշխատանք տանել նաև այնպիսի որակյալ կադրեր պատրաստելու ուղղությամբ, որոնք ամենակարճ ժամանակում սովորեն ղեկավարել ամենաբարդ տեխնոլոգիական պրոցեսները:

Գործարանի ինժեներների, տեխնիկների և բանվորների որակավորումը բարձրացնելու նպատակով կազմակերպված է ոչ միայն նոր ապարատների

կոնստրուկցիաների և դրանց ղեկավարման մեթոդների ուսուցում, այլև հենց բանվորներին մասնակից ենք դարձնում սարքավորման մոնտաժի աշխատանքներին, կազմակերպում դասախոսություններ, ինչպես նաև գործուղում ձամանման ձեռնարկությունները, որպեսզի տիրապետեն այդ պրոցեսների ղեկավարմանը:

Պետք է նկատի ունենալ, որ հնարավոր են որոշ դժվարություններ բնական գազից ացետիլեն ստանալու պրոցեսի յուրացման գործում, քանի որ այդ բանը առաջին անգամ է իրականացվում հայրենական սարքավորման միջոցով մեր գործարանում: Այդ իսկ պատճառով անհրաժեշտ ենք համարել գործարանում ստեղծել փորձնական-արտադրական մի սարքավորում, որը հանդիսանում է արդյունաբերական տեխնոլոգիայի մոդելը: Մեզ հաջողվել է այդ սարքավորմամբ բավարար արդյունքներ ստանալ բնական գազի ջերմաօքսիդացման միջոցով այն տարրալուծելու գործում: Իսկ ացետիլենի խտացման հանգույցի մոնտաժն արդեն ավարտված է և այն շահագործման կհանձնվի ամենամոտ ժամանակներում:

Փորձնական սարքավորման շահագործումը մեզ հնարավորություն է տալիս պարզելու և վերացնելու այն հնարավոր դժվարությունները, որ կարող են ծագել ացետիլենի արտադրության արդյունաբերական յուրացման պրոցեսում: Բացի այդ, դա մեր կադրերի պատրաստման մի յուրահատուկ դպրոց է:

Գործարանի կոլեկտիվի ջանքերն ուղղված են մի գլխավոր նպատակի, այն է՝ ապահովել նախագծային կարողության գործարկումը ամենակարճ ժամկետներում, ավելի լավ օգտագործել ներքին ռեզերվները և նոր սինթետիկ նյութեր ստեղծել ժողովրդական տնտեսության համար:

Մեր երկրում մեծ քիմիայի արագ զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի պատմական որոշումների հաջող կենսագործումը դարձել է կիրովցիների առաջնահերթ ու նվիրական գործը: 1964 թվականի հենց առաջին օրերից, ուսումնասիրելով իրենց հնարավորությունները, նրանք ստանձնել են նոր, ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ, նպատակ ունենալով ժամկետից շուտ կատարել յոթնամյակի 5-րդ տարվա պետական պլանը և յուրացնել նոր տեսակի արտադրանք:

Կիրովցիների աշխատանքային ոգևորությունը և իրենց խնդիրների կատարման համար ունեցած պատասխանատվության զգացումը հաստատ երաշխիք են այն բանի, որ նրանք հաջողությամբ կիրականացնեն պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրները:



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՎԵԼԻ ՄՈՏԻԿԻՑ ԶԲԱՂՎԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ

*Կրասնոսելսկի գյուղական արտադրական պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները, ղեկավարվելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներով, իրենց գլխավոր խնդիրն են համարել կազմակերպական-քաղաքական լայն աշխատանքի միջոցով մոբիլիզացնել գյուղի աշխատավորության ուժերը գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու, կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես ամրապնդելու համար:*

*Արտադրական սկզբունքներով պարտիական օրգանների վերակառուցման շնորհիվ պարտիական կոմիտեն ավելի լայն հնարավորություն ստացավ մոտիկից թափանցելու արտադրության կազմակերպման և ղեկավարման հարցերում, կենդանի աշխատանք կատարելու մարդկանց հետ, բարձրացնելու սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը աշխատավորների կոմունիստական դաստիարակության և տնտեսական խնդիրների լուծման գործում:*

*Նոր ձևով աշխատանքի մեկ տարվա փորձը ցույց է տալիս, որ պարտիական կոմիտեն, արտադրական վարչությունը և սկզբնական պարտիական կազմակերպություններն իրենց գործունեությամբ ճիշտ են հասկացել ղեկավարման վերակառուցման էությունը և միացյալ ուժերով ձգտել են ավելի կոնկրետ կերպով զբաղվել արտադրության կազմակերպման, կոլտնտեսություններում ու սովխոզներում եղած ռեզերվների հայտնաբերման և լրիվ օգտագործման հարցերով:*

*1962 թ. մեր արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները զգալի հաջողություններ ձեռք բերեցին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման, բերքատվության բարձրացման, հանրային անասնաբուծության զարգացման և պետությանն անասնաբուծական մթերքների վաճառքի ավելացման գործում. Նախորդ տարվա համեմատությամբ 24 տոկոսով աճեց կոլտնտեսությունների դրամական եկամուտը: Սակայն կոլտնտեսությունների 1962 թ. տնտեսական-ֆինանսական գործունեության վերլուծությունը ցույց տվեց, որ տնտեսությունը ոչ ճիշտ վարելու, արտադրանքի մեկ միավորի վրա ավելի շատ ծախսումներ կատարելու և վարձատրության չափը ոչ ճիշտ որոշելու հետևանքով մի շարք կոլտնտեսություններ բուսաբուծությունից և անասնաբուծությունից կրել են վնաս: Այդ տեսակետից գործը հատկապես կաղում էր տնտեսապես ետ մնացած Ջիլի, Բաշքենդի, Ջաջքենդի, Գյոլքենդի կոլտնտեսություններում:*

*Ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու վերաբերյալ ընկ. Խրուշչովի նամակի հիման վրա կատարված*

ուսումնասիրությունները ցույց տվին, որ վերը նշված կոլտնտեսություններում դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման, վարելահողերի լրիվ և արդյունավետ օգտագործման վրա, շատ ցածր է 100 հեկտար հողատարածության հաշվին անասունների գլխաքանակը, բարձր է արտադրված մթերքների ինքնարժեքը: Ստորև բերվող աղյուսակը դրա ապացույցն է:

| Մթերքներ | Մեկ ցենտների ինքնարժեքը կազմում է (ռուբլի) | | |
|---|---|---|---|
| | Վարչության կոլտնտեսություններում (միջինը) | Բաշքենդի կոլտնտեսությունում | Ջիլի կոլտնտեսությունում |
| Ծխախոտ . . | 114,4 | 189 | 142 |
| Կարտոֆիլ . . | 5,4 | 12,26 | 8,10 |
| Կովի կաթ . . | 17,6 | 33,60 | 21,60 |
| Տավարի միս . | 74,9 | 164 | 115 |
| Ոչխարի միս . | 43,9 | 88 | 52 |
| Խոզի միս . . | 200,3 | 413 | — |

Նկատի ունենալով Բաշքենդի, Ջիլի և մի քանի այլ կոլտնտեսությունների արտադրած մթերքների չափազանց բարձր ինքնարժեքը, վերջերս մեր արտադրական վարչության պարտիական կոմիտեն քննարկեց այդ տնտեսություններում ստեղծված իրավիճակը: Պարտիական կոմիտեի բյուրոն կոնկրետ միջոցառումներ մշակեց առաջիկա երկու տարում այդ կոլտնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու համար:

Առաջնահերթ ուշադրություն է դարձվում այդ տնտեսություններում ղեկավար և միջին կադրերի ամրապնդման հարցին: Ընկ. Խրուշչովի նամակի քննարկումից հետո Ջայքենդի կոլտնտեսականներն իրենց ընդհանուր ժողովում կոլտնտեսության նախագահի պարտականությունից ազատեցին Հ. Աբդուլաևին և նրա փոխարեն ընտրեցին գյուղատնտեսության լավագույն փորձ ու կազմակերպչական ջիղ ունեցող ընկ. Աղամալիևին: Վերանայվեց նաև միջին կադրերի կազմը. պարտիական կազմակերպությունը մոտիկից զբաղվեց արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների նպատակահարմար տեղաբաշխման հարցով: Նման միջոցներ ձեռնարկվեցին նաև մյուս ետ մնացող տնտեսություններում: Ներկայումս անհրաժեշտ բոլոր պայմաններն ու հնարավորությունները կան վերը նշված կոլտնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար: Հաշվարկները ցույց են տալիս, որ եղած ռեզերվները ճիշտ օգտագործելու և անասնաբուծական մթերքների արտադրության գծով վարչության կոլտնտեսությունների միջին ցուցանիշներին հասնելու դեպքում Բաշքենդի, Գյուլքենդի, Ջայքենդի և Ջիլի կոլտնտեսությունները 1964—1965 թվականներին, ներկա վիճակի համեմատությամբ, ավելի կարտադրեն առնվազն 6200 ցենտներ կաթ, 1450 ցենտներ միս, 100 ցենտներ բուրդ և այլ մթերքներ:

Պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունը քննադատաբար գնահատելով գործերի վիճակը, պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների հետ միասին 1963 թվականի սկզբից մի շարք գործնական միջոցառումներ ձեռնարկեցին դաշտավարության ու անասնապահության գծով ստանձնած սոցիալիստական պար-



տավորությունների անթերի կատարումն ապահովելու համար: Հայտնի է, որ 1963 թ. կլիմայական անբարենպաստ պայմանները լուրջ դժվարություններ առաջացրին գյուղատնտեսության աշխատողների համար: Սակայն պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները և գյուղատնտեսության բոլոր աշխատողները ցուցաբերեցին մեծ կազմակերպվածություն ու բարձր պատասխանատվություն՝ ընդունված պարտավորությունների կատարման նկատմամբ:

Կոլտնտեսություններում և սովխոզներում անցկացվեցին հարվածային տասնօրյակներ, կազմակերպվեց կոմունիստական փոխօգնություն, շաբաթօրյակների միջոցով գյուղի աշխատավորությանն օգնելու եկան հիմնարկ-ձեռնարկությունների բանվոր-ծառայողները: Միաժամանակ պարտիական կոմիտեի բյուրոներում և սկզբնական պարտկազմակերպությունների ժողովներում հաճախակի քննության էին առնվում գյուղատնտեսական աշխատանքների ընթացքը, միջոցառումներ էին ձեռնարկվում եղած թերությունները արագորեն վերացնելու համար: Գլխավորելով աշխատավորների սոցիալիստական մրցությունը, պարտիական կազմակերպությունները նրանց ջանքերն ուղղեցին աճեցված բերքն անկորուստ հավաքելուն:

Մեր արտադրական վարչության աշխատողները ռեսպուբլիկայում երրորդը զեկուցեցին հացամթերումների պետական պլանը ժամկետից շուտ կատարելու մասին և դրա համար արժանացան Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի ողջույնին: Դա մեծ ոգևորություն առաջ բերեց կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների շրջանում: Վարչության կոլտնտեսությունները և սովխոզները պլանից ավելի պետությանը հանձնեցին 18 հազար փութ հացահատիկ: Այդ գործում լավագույն աշխատանքի օրինակներ ցույց տվեցին Շորժայի, Ջիլի, Արդանիշի, Աղբուլաղի կոլտնտեսությունները, Թոխլուջայի և Ծամբարակի սովխոզները, որոնք ժամանակին հավաքելով հացահատիկի բերքը, պատվով կատարեցին պետության հանդեպ ունեցած իրենց պարտքը:

Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները 1964 թ. հացահատիկի արտադրությունն ավելացնելու համար պլանով նախատեսված 3160 հեկտարի դիմաց կատարեցին 3600 հեկտար աշնանացան: Բաշքենդի, Արդանիշի, Կրասնոսելսկի, Շորժայի, Օրջոնիկիձեի, Ջիլի կոլտնտեսությունները և Ծամբարակի սովխոզը նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն ընդարձակել են աշնան ցորենի ցանքը:

Պարտիական կազմակերպությունները և տնտեսությունների ղեկավարներն այժմվանից հոգ են տանում գարնան գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ուղղությամբ: Շատ տնտեսություններ իրենց ապահովել են գարնան հացահատիկային կուլտուրաների և կարտոֆիլի սերմացուներով: Առանձնացված է 6 հազար ցենտներ հացահատիկի և մոտ 40 հազար ցենտներ կարտոֆիլի սերմացու: Սակայն ինքնաքննադատաբար պետք է նշել, որ այդ ուղղությամբ մենք դեռ ունենք շատ թերություններ:

Մեր տնտեսությունները չկատարեցին ցրտահերկի պլանը, իսկ որոշ տնտեսություններում դեռևս զգալիորեն պակասում է գարնանացան կուլտուրաների սերմացուն, դանդաղ է ընթանում պարարտանյութերի դաշտ տեղափոխումը: Անհրաժեշտ է նշել, որ մեր կոլտնտեսություններում և սովխոզներում մինչև հիմա էլ բարձրության վրա չի դրվել հանքային ու տեղական

պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արդյունավետ օգտագործման հարցը։

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը խոշոր միջոցառումներ մշակեց հանքային պարարտանյութերի արտադրությունն ավելացնելու և այն արդյունավետ օգտագործելու համար։ Ժամանակն է, որպեսզի պարտիական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարներն ու գյուղատնտեսության մասնագետներն ամենայն լրջությամբ զբաղվեն հանքային պարարտանյութերը ռացիոնալ կերպով օգտագործելու և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու հարցերով։

Հանրային անասնապահության զարգացման և մթերատվության բարձրացման գործը եղել ու մնում է մեր գլխավոր խնդիրներից մեկը։ Պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունը կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների հետ միասին 1963 թ. մի շարք միջոցառումներ իրականացրին անասունների գլխաքանակն ու մթերատվությունն ավելացնելու, պետությանն անասնաբուծական մթերքների վաճառքի առաջադրանքների անթերի կատարումն ապահովելու ուղղությամբ։

Կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահները լայն պայքար ծավալեցին իրենց ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար և հասան որոշակի հաջողությունների։ 1962 թ. համեմատությամբ 1963 թ. զգալիորեն աճեց հանրային անասունների գլխաքանակը, կատարվեցին խոշոր (բացի կովերից) և մանր եղջերավոր անասունների, խոզերի ու թռչունների գլխաքանակի ավելացման պլանային առաջադրանքները։

Գերակատարվեցին կաթի, մսի և ձվի արտադրության ավելացման և պետությանը վաճառքի պլանները։ Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ հատկապես նշանակալից հաջողությունների հասան Թոխլուջայի ու Ճամբարակի սովխոզները, Շորժայի, Արդանիշի, Գյոլքենդի, Աղբուլաղի և Ն. Բաշգյուղի կոլտնտեսությունները։ Առանձնապես հիշատակության է արժանի Թոխլուջայի սովխոզը։

Վերջին տարիներում ոչխարաբուծական այս սովխոզը չէր ապահովում պետության հանդեպ ունեցած իր պարտավորությունների կատարումը, ցածր էր անասնապահության մթերատվությունը։ 1963 թ. սկզբներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրության կոլեգիան ու պարտիական կոմիտեի բյուրոն քննության առնելով սովխոզի հետ մնալու պատճառները, գործնական միջոցառումներ նշեցին տնտեսության աշխատանքներում եղած սխալներն ու թերությունները վերացնելու ուղղությամբ։ Սովխոզի դիրեկտոր ընկ. Ա. Ասադովը և պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Կ. Ստեփանյանը ճիշտ եզրակացություն հանելով վերադաս օրգանների որոշումներից, վճռական շրջադարձ կատարեցին իրենց ամենօրյա աշխատանքներում և հասան դրական արդյունքի։ Սովխոզը ժամկետից 3 ամիս շուտ գերակատարեց պետությանը կաթի, մսի, հացահատիկի վաճառքի տարեկան առաջադրանքները։ Պլանով նախատեսված 3730 ցենտների դիմաց սովխոզը պետությանը հանձնել է 4840 ցենտներ կաթ։ Կատարվել են կաթի ու մսի արտադրության և անասունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանները։

Կոլտնտեսություններում և սովխոզներում մենք ունենք բազմաթիվ առաջավոր անասնապահներ, որոնք իրենց լավագույն աշխատանքով օրի-



նակ են հանդիսանում։ Առաջավոր կթվորուհիներ Վ. Խաչատրյանը, Հ. Սարգսյանը (Ճամբարակից), Ս. Ջեյնալաբդուևան, Ա. Հուսեյնովան (Արդանիշից), Ռ. Սանդիկովան (Շորժայից), Ա. Հասանովան (Թոխլուջայից) և ուրիշներ յուրաքանչյուր կովից ստացել են 2000—2100 կգ կաթ։

Ձեռք բերված հաջողություններով հանգստանալը և անասնապահության բնագավառում եղած լուրջ թերություններն ու բացերը չտեսնելը, սակայն, սխալ կլինի։ Մեր վարչության տնտեսություններում անասունների գլխաքանակի և, առանձնապես մայրական կազմի ավելացման (100 հեկտար հողատարածության դիմաց), ցեղի բարելավման, մթերատվության բարձրացման գործում մենք դեռ հետ ենք մնում և շատ անելիքներ ունենք։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում անհրաժեշտ պայքար չի տարվում անասունների արհեստական սերմնավորումը հաջող կազմակերպելու և ստերջությունը վերացնելու համար։ Լուրջ հսկողություն չի սահմանվում ցեղական մատղաշների պահպանման ու աճեցման վրա։

Այժմ անասունների ձմեռային խնամքի հաջող անցկացումը գտնվում է պարտիական կազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների ամենօրյա ուշադրության կենտրոնում։ Կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծված է կերի կայուն բազա։ Պլանով նախատեսված 15700 տոննայի դիմաց կուտակվել է 21 հազար տոննա խոտ (նախորդ տարվանից 11 հազար տոննայով ավելի), գերակատարվել է նաև սիլոսի կուտակման առաջադրանքը, անհրաժեշտ քանակությամբ ծղոտ է կուտակվել։ Շատ կոլտնտեսություններ մեկուկես-երկու տարվա կեր են կուտակել։ Դա հնարավորություն կտա հանրային անասունների ձմեռումն անցկացնել հաջող, շեշտակիորեն ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունն այժմ միջոցառումներ են կիրառում հանրային անասնապահության զարգացման ուղղությամբ տեղ գտած թերությունները վերացնելու և 1964—1965 թթ. 100 հեկտար հողատարածության հաշվին անասունների գլխաքանակն ու մթերքների արտադրությունն ավելացնելու համար։

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում պարտիայի առաջադրած խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար հսկայական նշանակություն ունի պարտիական-կազմակերպական և քաղաքական աշխատանքների ճիշտ ու նպատակասլաց կազմակերպումը։ Պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներից, կազմակերպական-քաղաքական ամբողջ աշխատանքը ի սպաս են դրել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը և մասսաների կոմունիստական դաստիարակության ուժեղացմանը։

Վերակառուցումից հետո պարտիական կազմակերպությունները որոշ աշխատանք են կատարել արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի տեղաբաշխման, նրանց ավանգարդային դերի ապահովման, կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում։ Բավական է ասել, որ 1963 թ., նախորդ տարվա համեմատությամբ անասնապահության մեջ շարքային աշխատող կոմունիստների թիվն ավելացել է մոտ երկու անգամ։

Պարտիական կոմիտեն սկզբնական կազմակերպությունների հետ միա-

սին որոշ աշխատանք է կատարել ըստ գործնական և քաղաքական հատկանիշների կադրերի ընտրության ու տեղաբաշխման ուղղությամբ. առանձնակի ուշադրություն է նվիրվել կոլտնտեսային և սովխոզային կադրերի ամրապնդման վրա։ Այս տարի կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ են առաջադրվել համապատասխան մասնագիտություն և կազմակերպչական շիզ ունեցող ընկերներ՝ Մ. Թալիբովը Աղբուլաղում, Ա. Դանիելյանը՝ Բաշքենդում, Մ. Ազամալիևը՝ Զայքենդում, որոնք իրենց աշխատանքի առաջին իսկ օրերից ձգտում են լավագույն կերպով կազմակերպել կոլտնտեսային արտադրությունը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, միջոցառումներ կիրառել եղած ռեզերվների ու հնարավորությունների օգտագործման համար։ Նրանց աշխատանքում արդեն զգացվում են առաջին դրական քայլերը։

Պարտիական կազմակերպությունները տարվա սկզբից իրենց առաջ խնդիր դրեցին դաշտավարական բրիգադները և անասնապահական ֆերմաներն ամրապնդել մասնագետ կադրերով և, այդ ուղղությամբ որոշ աշխատանք կատարեցին։ 23 երիտասարդ մասնագետներ նշանակվեցին բրիգադավարներ և ֆերմաների վարիչներ։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում կադրերի թարմացման հետ միասին որոշ չափով կրճատվեց անհիմն կերպով ուռճացված վարչական ապարատն ու սպասարկող անձնակազմը։ Սակայն կոլտնտեսային կադրերի ընտրության և նրանց հետ տարվող աշխատանքում դեռ կան զգալի թերություններ։ Պարտիական կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները երբեմն հանդուրժում են առանձին ղեկավարների վատ աշխատանքը և ժամանակին վճռականություն հանդես չեն բերում տեղ գտած թերությունները վերացնելու համար։

Ներկայումս պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները միջոցներ են ձեռնարկում վճռականորեն բարելավելու կադրերի ընտրության գործը, ամեն կերպ բարձրացնելու նրանց պատասխանատվությունը և հասնելու այն բանին, որ ղեկավար կադրերը և, առաջին հերթին, կոմունիստները, հանդես գան որպես լավագույն կազմակերպիչներ։

Շատ պարտիական կազմակերպություններ իրենց ամենօրյա գործունեության մեջ ուշադրության կենտրոնում են պահում սոցիալիստական մրցության կազմակերպման, առաջավոր փորձի պրոպագանդման ու ներդրման, աշխատանքի հիմնական ու լրացուցիչ վարձատրության սիստեմի ճիշտ կիրառման հարցերը, հաճախակի կազմակերպում են մրցության պայմանագրերի փոխադարձ ստուգումներ, փոխայցելություններ և մրցության արդյունքների ամփոփում։ Այդ ամենը տալիս է իր դրական արդյունքը։ Մեր խնդիրն է՝ բարձրացնել կազմակերպական-քաղաքական աշխատանքի մակարդակը, լայնորեն օգտագործել աշխատավորների կոմունիստական դաստիարակության բոլոր միջոցները և այն ուղղել տնտեսական խնդիրների հաջող կատարմանը։

Քննադատաբար վերլուծելով 1963 թ. տնտեսական տարվա արդյունքները, մեր պարտիական կազմակերպությունները բոլոր միջոցները կձեռնարկեն 1964 թ. գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու և կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու համար։

Ա. ՀԱՍԱՆՈՎ

ՀԿՊ Կրասնոսելսկի գյուղական արտադրական կոմիտեի քարտուղար

## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅՈՒՄ

«...Ես ուզում եմ, որ իմ խոսքը, պրոպագանդիստի խոսքը համապատասխանի իմ ունկնդիրների թաքուն իղձերին. արթնացնի նրանց մտքերը, նրանց երևակայությունը, տանի նրանց լարված գործունեության աշխարհը, կոչի առաջ։ Ես ուզում եմ, որպեսզի այն մարդիկ, որոնց ես դասախոսություն եմ կարդում, զգան կյանքի ջերմ շողերը», ասում է Գալինի՝ «Բնակավայրերից մեկում» վիպակի հերոս կոմունիստ-պրոպագանդիստ Պանտելեևը, արտահայտելով մեր՝ բոլոր պրոպագանդիստներիս ցանկությունները։

Պրոպագանդիստի այս վեհ նպատակների մասին խորհելով՝ շրջանային կոմիտեի հանձնարարությամբ եղա Երևանի շինանյութերի գործարանում։ Աշխատանքային հերթափոխն ավարտելուց հետո բանվորները հավաքվեցին քաղպարապմունքի։ Պրոպագանդիստը ունկնդիրներին երկար սպասել չտվեց։ Հերթական պարապմունքի թեման էր՝ «Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը — գլխավոր տնտեսական խնդիրն է»։

Պրոպագանդիստի մենախոսության սկզբում լսարանը լուռ էր. ապա տեղ-տեղ ծայր առավ զրույցը։ Եվս մի քանի րոպե, և ոմանք սկսեցին նիրհել։ Ունկնդիրներից ավելի «ձեռներեցները» արդեն լսարանը թողնելու փորձեր էին անում, երբ լսվեցին պրոպագանդիստի եզրափակիչ, այս անգամ արդեն ձայնի նոր՝ սթափեցնող տեմբրով արտասանած խոսքերը՝ «Ահա այսքանը կլինի ձեր դասը»։ Հարցեր, իհարկե, չկային։

Պետք է ասել, որ պրոպագանդիստը «դասը» պատմում էր բավականին սահուն, բերում էր բազմաթիվ թվական տվյալներ, օգտագործում էր հարուստ տնտեսագիտական, փիլիսոփայական և քաղաքական բառապաշարը, որոշ չափով տրամաբանում, սակայն ինչ-որ չէր ստացվում։

Ինչո՞ւմն էր բանը։ Բանվորական միջավայրը, մանավանդ աշխատանքից հետո, պրոպագանդիստից պահանջում է ավելի մեծ հմտություն ունկնդիրների ուշադրությունը կենտրոնացնելու, ունկնդիրներին ակտիվ դարձնելու համար։ Մինչդեռ այստեղ ունկնդիրների ու պրոպագանդիստների միջև խոր անջրպետ կար։ Նյութը հաղորդվում էր չոր, տաղտկալի, առանց պատկերավոր, կենդանի, աշխույժ զրույցի, գեղարվեստական գրականությունից, ժողովրդական իմաստության գանձարանից քաղված պատկերների, համեմատությունների, թևավոր խոսքերի։ Ահա թե ինչու պարապմունքը ոչինչ չտվեց ունկնդիրների մտքին ու սրտին։ Այստեղ հիշեցի Մ. Ի. Կալինինի խոսքերն այն մասին, որ «Պատրաստի ֆրազով դուք մարդկանց վրա տպավորություն չեք թողնի...»։

Վ. Ի. Լենինը նշել է, որ «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրա-

քանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (Երկեր, հատ. 17, էջ 418)։

Պրոպագանդան ավելի ներգործուն դարձնելու անգնահատելի միջոց է գեղարվեստական գրականությունը։ Բարձրարվեստ գրական ստեղծագործությունները թափանցում են մարդկանց հոգու և գիտակցության խորքը, նրանց մեջ ծնում քաղաքացիական վսեմ զգացմունքներ։ Այդպիսի գրականությունից կատարված տեղին մեջբերումն օգնում է պրոպագանդիստին՝ ծրագրային նյութը դարձնելու ավելի հետաքրքրական ու դյուրըմբռնելի, իսկ հանձնարարված գրական երկերի ընթերցումն ընդլայնում է ունկնդիրների մտահորիզոնը, հարստացնում բառապաշարը, օգնում նրանց՝ պարապմունքի ժամանակ գեղեցիկ, հստակ ու պատկերավոր լեզվով ելույթ ունենալու։ Գեղարվեստական գրականությունը բացառիկ ազդեցություն է թողնում, հատկապես, երիտասարդ ունկնդիրների աշխարհայացքի, նրանց հասարակական իդեալների ու կամային հատկությունների ձևավորման վրա։

Գրական երկերի հանձնարարումն ունկնդիրներին՝ նրանց մեջ պատվաստում է սեր դեպի գեղարվեստական գրականությունը և ճաշակ՝ որոշակի սիստեմով դրանք ընտրելու և ընթերցելու գործում։ Այսինքն՝ այն մեծապես նպաստում է աշխատավորների էսթետիկական դաստիարակությանը, որը կոմունիստական դաստիարակության կարևոր մասն է կազմում։ Շատ կարդացած, գրականությամբ միտքն ու հոգին սնած մարդը չի կարող անտարբեր լինել մեր կյանքում նորի, կոմունիստականի ծիլերի նկատմամբ։ Նա ակտիվ կմիջամտի կյանքի ընթացքին, խիզախումների կդիմի հանուն մարդկության պայծառ ապագայի, կհրճվի ամեն մի նոր շենքի, գործարանի, էլեկտրակայանի գործարկմամբ, ակտիվ կմասնակցի դրանց ստեղծմանը։

Մարքսիզմի կլասիկները՝ Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինն իրենց գիտական ուսումնասիրություններում, մարքսիզմի ականավոր պրոպագանդիստներ Գ. Պլեխանովը, Մ. Կալինինը, Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը և ուրիշներ իրենց քաղաքական պրոպագանդայում լայնորեն օգտագործել են գեղարվեստական գրականությունը։ Կ. Մարքսը «Կապիտալում» օգտագործել է անտիկ առասպելաբանությունից, ինչպես նաև Շեքսպիրի, Դիկենսի, Գյոթեի և համաշխարհային գրականության մյուս կլասիկների ստեղծագործություններից վերցրած բազմաթիվ կերպարներ։ Լենինի երկերում մենք հանդիպում ենք գեղարվեստական գրականությունից կատարած մոտ 1000 մեջբերման։

Ընդօրինակելով այդ փորձը, մեր շատ պրոպագանդիստներ ու սեմինարավարներ պարապմունքների ընթացքում օգտագործում են գեղարվեստական երկերից ընտրված քաղվածքներ, կերպարներ, պատկերավոր արտահայտություններ... օրինակ, «Պարտիան 1905—1907 թթ. ռևոլյուցիայում» թեման անցնելիս Ալավերդու շրջկապի գրասենյակի՝ ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող սեմինարի ղեկավար Ա. Փարսադանյանն օգտագործում է նյութեր Ա. Ս. Նովիկով—Պրիբոյի «Ցուսիմա», Ա. Ստեպանովի «Պորտ-Արտուր», Պ. Դալեցկու «Մանջուրիայի բլուրների վրա» վեպերից, որոնցից յուրաքանչյուրում գեղարվեստորեն վերարտադրված են ռուս-ճապոնական պատերազմի ողբերգական էպոպեայի առանձին կողմերը։ Օրինակ, ռևոլյուցիայի նախօր-



յակին ժողովրդական լայն մասսաների տրամադրություններն ունկնդիրներին ներկայացնելու համար պրոպագանդիստն օգտագործեց Նովիկով—Պրիբոյի «Ցուսիմա» վեպի հերոս, հնոցապան Բակլանովի ելույթը։

Մեր շատ պրոպագանդիստներ ռուսական առաջին ռևոլյուցիայի այս կամ այն կողմի լուսաբանման հարուստ գեղարվեստական իլյուստրացիա են դարձնում Մ. Գորկու «Մայրը» վեպը, «Մրրկահավի երգը» արձակ բանաստեղծությունը, «1905 թ. հունվարի 9-ը» պատմվածքը, ինչպես նաև Հ. Հակոբյանի «Թեև բանվոր է, բայց թագավոր է», «Հեղափոխություն», Շ. Կուրղինյանի «Բանվորները», «Ե՛տ տար քո խաչը», և մի շարք այլ բանաստեղծություններ, որոնք Ալ. Մյասնիկյանի դիպուկ բնութագրմամբ՝ «Հայկական պրոլետարական պոեզիայի զարդն են» և հիանալի կերպով ներկայացնում են պրոլետարիատի հերոսական պայքարը 1905—1907 թթ.։

Պետք է ասել, որ վերը թվարկված և բազմաթիվ այլ ստեղծագործություններին մեր ունկնդիրները քաջածանոթ են։ Ահա թե ինչու ճիշտ են վարվում այն պրոպագանդիստները, որոնք երբեմն սահմանափակվում են նրանց հիշատակմամբ կամ համառոտ բնութագրմամբ։ Լ. Ն. Տոլստոյը դիպուկ կերպով նկատել է, որ երևակայությունը զարգացնելու համար ավելի լավ է բոլորը չասել, քան ավելին ասել։ Օրինակ, 1905 թ. հոկտեմբերի 17-ի ցարական մանիֆեստի կեղծությունը բացահայտելիս բավական է ունկնդիրներին հիշեցնել Հ. Հակոբյանի «Մե՛կ էլ, մե՛կ էլ» բանաստեղծության որոշ տողեր, որպեսզի նրանց հիշողության մեջ վերականգնվի ամբողջ բանաստեղծությունը։

Եվ հակառակը. երբեմն անհրաժեշտ է ո՛չ միայն մեջբերում կատարել, այլև լրացուցիչ կերպով մեկնաբանել օգտագործվող գեղարվեստական նյութը։ Այսպես՝ «Պարտիան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչն է» թեմայում կոռնիլովյան խռովության էությունը պարզաբանելիս, ես սովորաբար, նախ տալիս եմ բոլշևիկյան պարտիայի տակտիկական դիրքորոշումն այդ հարցում, ապա օգտագործում Մ. Շոլոխովի «Խաղաղ Դոն» վեպի այն մասը, որտեղ նա պատկերավոր կերպով նկարագրում է խռովությունը ճնշելու նպատակով բոլշևիկների ծավալած կազմակերպչական գործունեությունը։ Ահա բոլշևիկ-ագիտատոր Բունչուկը, որն ուղի է ցույց տալիս խաբված կոռնիլովյան կազակներին։

«Պետրոգրադում դուք անելիք չունեք,— ասում է նա,— ոչ մի խռովություն այնտեղ չկա։ Գիտե՞ք դուք ինչու են ձեզ այնտեղ ուղարկում։ Ժամանակավոր կառավարությունը տապալելու համար։ Ահա։ Ո՞վ է ձեզ առաջնորդում։ Ցարական գեներալ Կոռնիլովը... Ցանկանում են ձեր վրայից գցել փայտե լուծը, բայց որ հագցրին, պողպատե կհագցնեն»։

Ընթերցելով այս հատվածը, միաժամանակ հարկ եմ համարում լրացուցիչ կերպով բերել և բացատրել Վ. Ի. Լենինի այն միտքը, որ պայքարելով Կոռնիլովի դեմ, բոլշևիկներն ամենևին չէին պաշտպանում Կերենսկուն, ընդհակառակը, մերկացնում էին նրա ծախվածությունը, մասսաներին ցույց տալիս այդ երկուսի շահերի ընդհանրությունը ռևոլյուցիայի դեմ մղված պայքարում։

Այդ նույն թեման անցնելիս պրոպագանդիստներից շատերն իրավացիորեն մեծ ուշադրություն են նվիրում Վ. Ի. Լենինի կերպարը լուսաբանող գեղարվեստական երկերին՝ Վ. Մայակովսկու «Վլադիմիր Իլյիչ Լենին» նշանավոր պոեմին, հայ մեծ բանաստեղծ Եղիշե Չարենցի՝ Լենինին նվիրված բանաստեղծությունների ու պոեմների հանրահայտ շարքին, օգտագործում են

նաև Մ. Գորկու «Կլիմ Սամգինի կյանքը» տրիլոգիան, որի անավարտ վերջին գլխի ուրվագծերում պատկերված է Վ. Ի. Լենինի և ժողովրդի հանդիպումը Պետերբուրգի ֆինլանդական կայարանում։ Այդ ուրվագծերն առաջնորդի և ժողովրդի միաձուլության ռեալ, շոշափելի գեղարվեստական պատկերն են ստեղծում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման և նրա հաղթանակի, քաղաքացիական կռիվների, մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու նրա սոցիալիստական վերակառուցման տարիներին պարտիայի պայքարին վերաբերող թեմաներն անցնելիս Շամլուղի հանքերի պարտկազմակերպության՝ ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող քաղխմբակի պրոպագանդիստ Լ. Ուռումովը պարապմունքների ընթացքում օգտագործում և ունկնդիրներին հանձնարարում է կարդալ Մ. Շոլոխովի «Խաղաղ Դոն» վեպը, Ալ. Տոլստոյի «Տառապանքի ուղիներով» տրիլոգիան, Ն. Օստրովսկու «Ինչպես էր կոփվում պողպատը», Ստ. Զորյանի «Պատերազմ» պատմվածքն ու «Գրադարանի աղջիկը» վիպակը, Ն. Պոգոդինի «Կրեմլյան կուրանտները» պիեսը, Ֆ. Գլադկովի «Ցեմենտ» վեպը, մեջբերումներ կատարում Հ. Հակոբյանի «Բոլշևիկ է Տիր-կանալը», «Վոլխովստրոյ», «Աստվածները խոսեցին» պոեմներից և այլն։ Այս վերջինից մի հատվածի ընթերցումով պրոպագանդիստը վեր է հանում սովետական ժողովրդի՝ «մեր օրերի Պրոմեթեոսի» հերոսական աշխատանքը։ Բանվորները և գյուղացիները, որոնք հաղթանակ տարան ռևոլյուցիայում և քաղաքացիական պատերազմում, պոեմում հանդես են գալիս որպես «նոր աստվածներ», որոնք իրենց կամքով վերափոխում են երկիրը։

Սոցիալիստական ինդուստրացման տարիների հերոիկան պատկերված է Մ. Շահինյանի «Հիդրոցենտրալ», Ֆ. Գլադկովի «Էներգիա» վեպերում, Վ. Մայակովսկու «Լավ է» և մի շարք այլ պոեմներում ու բանաստեղծություններում։ Գյուղատնտեսության կոլեկտիվացման էությունն ու մասշտաբները ունկնդիրներին մատչելի դարձնելու համար պրոպագանդիստ Ա. Ռուբինյանը կարդում է Ն. Զարյանի «Ռուշանի քարափը» պոեմը։

«Սովետական Միության հայրենական մեծ պատերազմը (1941—45 թթ.)» թեմայի համար լավագույն գեղարվեստական և պատմական նյութ են ծառայում Մ. Բուբենովի «Սպիտակ կեչին», Վ. Աժաևի «Մոսկվայից հեռու», Ս. Խանզադյանի «Մեր գնդի մարդիկ», Բ. Վերդյանի «Քեզ համար, Լենինգրադ» ստեղծագործությունները և այլն։ Ունկնդիրներին սոցիալիստական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում հատկապես մեծ է Մ. Ալիգերի «Զոյա», Ա. Ֆադեևի «Երիտասարդ գվարդիա», Բ. Պոլևոյի «Պատմվածք իսկական մարդու մասին», Հր. Քոչարի «Մեծ տան զավակները» երկերի գեղարվեստական ուժը։

Առատ գեղարվեստական գրականություն կա նաև հետպատերազմյան ժամանակաշրջանի վերաբերյալ։ Այս հնարավորություն է տալիս մեզ՝ ցանկացած թեմային համապատասխան գեղարվեստական հարուստ նյութ ընտրել և օգտագործել պարապմունքի ընթացքում։ Կյանքում տեղ գտած բացերը խարազանելու և մեր օրերի հերոիկան պատկերելու համար զգալի նյութ են տալիս կենտրոնական և ռեսպուբլիկայի ամսագրերում ու թերթերում լույս տեսնող բազմաթիվ ֆելիետոնները, պատմվածքները, գեղարվեստական ակնարկները։ Այստեղ պահանջվում է պրոպագանդիստի հմտություն՝ ընտրելու թեմայի հետ ուղղակի առնչվող, նպատակասլաց գեղարվեստական նյութ։



Բերենք այդպիսի ընտրության մի օրինակ։ Անցած ուսումնական տարում, երբ ուսումնասիրում էինք ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի նյութերը, ներկա եղա էլեկտրատեխնիկական գործարանի ՍՄԿՊ պատմության քաղխմբակի պարապմունքներից մեկին (պրոպագանդիստ՝ Վ. Սիմոնյան), որի թեման էր՝ «Պարտիական կազմակերպությունների կառուցման արտադրական սկզբունքը»։ Չսահմանափակվելով որոշման վերապատմումով, պրոպագանդիստը հատկապես կանգ առավ արտադրության մեջ կոմունիստների կոչման ու դերի հարցի վրա և ունկնդիրներին ներկայացրեց ու բնութագրեց Լեոնիդ Ժարիկովի «Երկաթե հողը» գեղարվեստական ակնարկի հերոս Ալեքսեյ Բոյչենկոյի կերպարը։

Այդ ակնարկը մեր օրերի հերոսների՝ յոթնամյակի առաջին տարում Կուրսկի մագնիսային անոմալիան գրոհող սովետական մարդկանց պատմությունն է։ Այս ֆոնի վրա էլ հեղինակը կերտել է իր հերոսի՝ պարտկազմակերպիչ Բոյչենկոյի կերպարը։

Բոյչենկոն, պարտիական կադրերի բազմահազարանոց բանակի ներկայացուցիչն է, այդ կերպարն օգնեց պրոպագանդիստին՝ ունկնդիրների մեջ կրկին ամրապնդելու այն համոզումը, որ պարտիան և յուրաքանչյուր կոմունիստ ցեմենտում են արտադրությունը, նրա բանակի ոգին են կազմում։

Տարբեր թեմաների կապակցությամբ սեմինարավարներից ու պրոպագանդիստներից ոմանք դիմում են նաև ժողովրդական ասացվածքների, թևավոր խոսքերի, առակների և այլն։ Դա անհրաժեշտ է։

Մինչ այժմ մենք գլխավորապես կանգ առանք ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող քաղխմբակներում ու սեմինարներում գեղարվեստական գրականության օգտագործման հարցերի վրա։ Նույնպիսի լայն հնարավորություններ կան մարքսիստական քաղաքատնտեսությունը, փիլիսոփայությունը, ընթացիկ քաղաքականությունը, արտադրության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող և այլ խմբակների ու սեմինարների ղեկավարների համար։

Փորձված պրոպագանդիստների ու սեմինարավարների պրակտիկան ցույց է տալիս, որ գեղարվեստական գրականությունը մեծապես օգնում է փիլիսոփայական խրթին հարցերն իսկ ունկնդիրներին մատչելի դարձնելու։

Այս տեսակետից ուսանելի է Երևանի IV բուժմիավորման մարքսիստական փիլիսոփայությունն ուսումնասիրող սեմինարի ղեկավար Մ. Առաքելյանի փորձը։ Տասնհինգ տարվա պրոպագանդիստական աշխատանքը շատ բան է սովորեցրել նրան։ Ընկ. Առաքելյանը մանրազնին ուսումնասիրում է ռուսական, համաշխարհային և հայ գրականության լավագույն երկերը, հատկապես մարքսիստական փիլիսոփայության տեսանկյունից և լայնորեն օգտագործում պարապմունքների ընթացքում։

Մատերիայի և շարժման հավերժականությունը, նրանց օրինաչափությունները պարզաբանելիս սեմինարավարը բերում է Չարենցի «Ռուբայաթ»-ից հետևյալ քառատողը.

Նա թե՛ կյանք է, թե՛ մահ.— ակնթարթը.
Անհատնում հատնում է, վառ է.—
Եվ այսպես՝ մշտատև է աշխարհը.
Անդադար թարթում է—ու անթարթ է։

*Այս քառյակն օգնում է ունկնդիրներին՝ ավելի պարզ պատկերացնելու դիալեկտիկայի այն սկզբունքը, որ շարժումը անընդհատության և ընդհատության, հակադրությունների միասնություն է, որ շարժումը բացարձակ է, իսկ մատերիան՝ անսկիզբ ու անվախճան։*

*Հրապարակի վրա ինչպես նշեցինք, առատ գեղարվեստական գրականություն կա նաև պարտիական լուսավորության ցանցի մյուս բոլոր օղակների թեմաներին համապատասխան։ Սակայն հարց է ծագում. կարո՞ղ է, արդյոք, պրոպագանդիստն օգտագործել, առավել ևս՝ հանձնարարել ունկնդիրներին ամեն մի թեմայի վերաբերյալ հրապարակի վրա եղած ամբողջ գրականությունը։ Հասկանալի պատճառներով չի կարող։*

*Իսկ ինչպե՞ս ընտրել համապատասխան գրականություն։ Այդ բնագավառում տարիների ընթացքում առաջավոր պրոպագանդիստների կուտակած փորձը ցույց է տալիս, որ պրոպագանդայի ընթացքում կարելի է օգտագործել ամենաբազմազան ժանրերի գեղարվեստական գործեր՝ վեպեր, դրամաներ, պատմվածքներ, ակնարկներ, ֆելիետոններ, բանաստեղծություններ, հուշեր, առակներ և այլն։ Սակայն անհրաժեշտ է, որ դրանք բոլորն էլ լինեն գաղափարապես բարձր ու գեղարվեստական տեսակետից լիարժեք։*

*Գեղարվեստական երկի ընտրությունից հետո պրոպագանդիստի առջև ծառանում է նրանից համապատասխան հատվածների, օրինակների ընտրության հարցը։ Վերջիններս պետք է արտացոլեն զարգացման օրենքները, պարտիայի ու մեր երկրի պատմության ու տնտեսական-քաղաքական կյանքի տիպական, միաժամանակ և իրական երևույթները և ոչ հեղինակների մտացածին դեպքերն ու դեմքերը։ Նրանք պետք է լինեն վառ և զգացմունքային, ունենան ունկնդիրների «սրտի ու մտքի» վրա ազդելու ուժ։ Գեղարվեստական երկից ընտրված հատվածը միաժամանակ պետք է լինի պարզ, մատչելի և համապատասխանի ունկնդիրների մակարդակին։ Եվ, վերջապես, դրանք պետք է լինեն կարճ, որպեսզի նրանց ուշադրությունը չշեղվի պարապմունքի հիմնական թեմայից։*

*Գեղարվեստական նյութերի օգտագործումը կարող է լավ արդյունք տալ միայն այն դեպքում, երբ այն կատարվում է սիստեմատիկաբար, ամբողջ ուսումնական տարվա ընթացքում, խնամքով մշակված որոշակի պլանի համաձայն։ Պրոպագանդիստը գեղարվեստական գրականությունը պետք է օգտագործի թե՛ նոր նյութի հաղորդման ընթացքում, թե՛ հարցման ու ամրապնդման և թե ամփոփիչ պարապմունքների ժամանակ։*

*Իհարկե, անիմաստ կլինի պրոպագանդայի ընթացքում գեղարվեստական գրականության օգտագործման ձևերի ու մեթոդների դեղատոմս առաջարկելը։ Այդ ամբողջովին կախված է յուրաքանչյուր պարապմունքի նպատակից ու անցնելիք նյութի բովանդակությունից, գեղարվեստական տեքստի բովանդակությունից, նրա ձևից (ժանրից) ու ծավալից, լսարանի կազմից։ Այնուհանդերձ, ամենից արդյունավետ ձևերը պետք է համարել՝ հատվածի բովանդակության կամ երկի ֆաբուլայի, առակի, առածի, առասպելի վերապատմումը, նրա առանձին հատվածների ընթերցումը կամ արտասանումը, ունկնդիրներին ծանոթ գեղարվեստական երկերի կամ կերպարների հիշատակումը՝ նրանց համառոտակի բնութագրությամբ, նույնպես պետք է վարվեն և ունկնդիրները՝ իրենց ելույթների ընթացքում։*

*Գեղարվեստական գրականությունից բերվող օրինակներն ինքնանպատակ չեն և չպետք է լոկ ցուցադրական բնույթ կրեն. դրանք պետք է ծառայեն պարապմունքի հիմնական նպատակին և լրացուցիչ ու թարմացնող նյութ հանդիսանան հիմնական թեմայի ավելի խոր պարզաբանման համար։ Սակայն գեղարվեստական երկերից բերված օրինակներն ինքնին ոչ միշտ կարող են նպատակին ծառայել առանց պրոպագանդիստի լրացուցիչ մեկնաբանությունների, առանց նրա շեշտավորող և ուղղություն տվող դերի։*

*Եվ, վերջապես, գեղարվեստական գրականությունից ճիշտ օգտվելու և այն հմտորեն օգտագործելու համար սեմինարավարը, պրոպագանդիստը պետք է սիստեմատիկաբար ընթերցի, ուսումնասիրի այն, ուշադրությամբ պետք է հետևի գրական նորույթներին։ Գեղարվեստական գրականությունը պարապմունքների ընթացքում օգտագործելու բնագավառում պրոպագանդիստին ու սեմինարավարին զգալի չափով կօգնեն Լ. Ա. Վոզնեսենսկու* «Художественная литература в преподавании политической экономии» *և Մ. Զալեսսկու ու մյուսների՝* «Художественная литература в помощь изучающим историю КПСС» *գրքերը։*

*Մենք խոսեցինք գերազանցապես մեր և որոշ ընկերների փորձի մասին։ Սակայն պարտիական պրոպագանդայի պրակտիկան շատ ավելի հարուստ է գեղարվեստական գրականության օգտագործման ձևերով ու մեթոդներով։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար ուսումնասիրել, օգտագործել դրանք մեր աշխատանքում։*

*Այս գործում պրոպագանդիստներին զգալի օգնություն կարող են ցույց տալ քաղկոմ-շրջկոմներին կից մեթոդական խորհուրդները։ Ռեսպուբլիկական քաղլուսատունը, ՀԿՊ Լենինականի քաղկոմին և Երևանի Օրջոնիկիձեի շրջկոմին կից գործող մեթոդխորհուրդները այս ուղղությամբ արդեն առաջին քայլերն արել են։ Անհրաժեշտ է, որ քաղլուսցանցի ինչպես այս, այնպես էլ մյուս բոլոր մեթոդական հարցերը մեթոդական խորհուրդների ու պրոպագանդիստների, սեմինարավարների ու ԲՈՒՀ-երի դասախոսների օգնությամբ բարձրացվեն գիտական մակարդակի։*

**Ա. ԴԱՎԹՅԱՆ**

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ

Էլեկտրիֆիկացումը, որը կոմունիստական հասարակարգի էկոնոմիկայի կառուցման առանցքն է, առաջատար դեր է խաղում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը կարգացնելու, արդի ամբողջ տեխնիկական առաջադիմությունը ապահովելու գործում:

ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ

Մեծ ու անգնահատելի է էլեկտրիֆիկացիայի դերը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության, այդ թվում և սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում։ Վ. Ի. Լենինը, խոսելով երկրի էլեկտրիֆիկացման անհրաժեշտության մասին, առանձնապես ընդգծում էր գյուղատնտեսության արտադրության մեջ էլեկտրաէներգիայի օգտագործման վերափոխիչ նշանակությունը։

Կենսագործելով երկրի էլեկտրիֆիկացման լենինյան պլանը, սոցիալիստական շինարարության անցած տարիներին խոշոր աշխատանք է կատարված նաև գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման բնագավառում։ Էլեկտրիֆիկացման շնորհիվ մեքենայացվել են գյուղատնտեսական մի շարք աշխատատար պրոցեսներ, որով արմատապես փոխվել է արտադրության տեխնոլոգիան, կրճատվել են ծախսերը, բարձրացել են աշխատանքի կուլտուրան ու արտադրողականությունը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը առաջին տասնամյակում պետք է բարձրանա ոչ պակաս 2,5, իսկ քսանամյակում՝ 5—6 անգամ, ավելի սրությամբ է դրվում գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման հարցը։ Նկատի ունենալով, որ առանց էլեկտրիֆիկացիայի հնարավոր չէ նախատեսված չափով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, պարտիայի XXII համագումարը կոնկրետ միջոցառումներ մշակեց գյուղատնտեսության հետագա էլեկտրիֆիկացման համար։ «Պարտիան կարևորագույն խնդիրներից մեկն է համարում,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— գյուղատնտեսության արագ էլեկտրիֆիկացումը։ Բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները արտադրական և կենցաղային նպատակների համար ապահովված կլինեն էլեկտրաէներգիայով պետական էներգետիկ սիստեմներից, ինչպես նաև գյուղական էլեկտրակայանների կառուցման միջոցով»։ Պահանջվող քա-



նակությամբ էլեկտրաէներգիայի առկայությունը հնարավորություն կտա անցնել գյուղատնտեսության արտադրության մեքենայացման բարձր ձևին — կոմպլեքսային էլեկտրիֆիկացմանը և արտադրական հիմնական ստացիոնար պրոցեսների ավտոմատացմանը։

Էլեկտրաէներգիայի օգտագործումը գյուղատնտեսության առաջատար մի այնպիսի ճյուղում, ինչպիսին անասնապահությունն է, հնարավորություն է տալիս մեքենայացնելու և ավտոմատացնելու ջրամատակարարումը, կերի նախապատրաստումն ու բաշխումը, կովերի կիթը և կաթի սկզբնական վերամշակումը, ոչխարների խուզը, գոմաղբի հավաքման, տեղափոխման աշխատանքները և այլն։

Էլեկտրաէներգիան հաջողությամբ օգտագործվում է նաև հացահատիկի մաքրման ու չորացման պունկտերում, ջերմոցներում և ջերմատներում, հողի տաքացման, ստերիլիզացիայի, օդափոխության, լուսավորության ու վնասատուների դեմ պայքարելու, ինչպես և դաշտերը ոռոգելու համար և այլն։

Գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի բազմակողմանի օգտագործումը աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման ու ինքնարժեքի իջեցման վճռական պայմանն է։ Բավական է ասել, որ գյուղատնտեսական արտադրության մեջ օգտագործվող ամեն մի կիլովատ էներգահզորությունը ֆիզիկական աշխատանքից ազատում է 8—10 մարդ։ Էլեկտրիֆիկացիան լայն հնարավորություններ է ստեղծում արագորեն կառուցելու միջկոլտնտեսային ձեռնարկություններ (ալրաղացներ, սղոցարաններ, հումքի մշակման գործարաններ և այլն)։

ՍՍՌՄ մյուս ռեսպուբլիկաների թվում վերջին տարիներս գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման բնագավառում զգալի հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Գյուղերում ավելացել է էլեկտրաէներգիայի ծախսումը, որը հիմնականում ստացվում է ավելի հուսալի աղբյուրից՝ պետական էներգասիստեմից։ Արդեն 1962 թ. ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ծախսած ամբողջ էլեկտրաէներգիայի 99,0 տոկոսը ստացվել է պետական էներգասիստեմից։

Ներկայումս ռեսպուբլիկայի «Հայգյուղտեխնիկայի» բոլոր շրջանային բաժանմունքները, սովխոզներն ու կոլտնտեսությունների 99 տոկոսը օգտվում են էլեկտրաէներգիայից, մինչդեռ 1950 թ. էլեկտրաէներգիա օգտագործել են ՄՏ կայանների 63, սովխոզների 63, իսկ կոլտնտեսությունների միայն 60 տոկոսը։

1962 թ. ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ արտադրական և այլ կարիքների համար ծախսվել է 138,8 մլն. կվտ ժամ էլեկտրաէներգիա։ 1963 թ. սկզբին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, սովխոզներում և «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքներում տեղադրված է եղել 5247 էլեկտրաշարժիչ՝ 53,4 հազար կիլովատ ընդհանուր հզորությամբ, 1254 ցածրացնող տրանսֆորմատորներ՝ 90,4 հազ. կիլովոլտ ամպեր ընդհանուր հզորությամբ, իսկ գյուղական ցածր լարվածության էլեկտրացանցի ընդհանուր երկարությունը կազմել է 4490 կիլոմետր։ Գյուղատնտեսության ամբողջ էներգետիկ հզորության 10,9 տոկոսը կազմում են էլեկտրական տեղակայումները։

Չնայած այս բոլորին, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման մակարդակը դեռևս ցածր է և չի համապատասխանում գյուղատնտե-

սության արտադրության ներկայիս աճող պահանջմունքներին։ Դեռևս կան շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք էլեկտրաէներգիան արտադրական կարիքների համար քիչ են օգտագործում։

1962 թ. ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացված մեկ կոլտնտեսությանը, միջին հաշվով, ընկել է 145 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և 5,6 էլեկտրաշարժիչ, իսկ սովխոզին՝ 374 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և, մոտավորապես, 10 էլեկտրաշարժիչ։ Ընդ որում, ամբողջ ծախսված էլեկտրաէներգիայից արտադրական կարիքների համար կոլտնտեսություններում օգտագործվել է 40,5, իսկ սովխոզներում՝ 57,4 տոկոսը։ Ռեսպուբլիկայում էլեկտրաշարժիչ օգտագործող 671 կոլտնտեսություններից և սովխոզներից 309-ը ունեցել են 2—5-ական էլեկտրաշարժիչ, 192-ը՝ 6—10, իսկ մնացածը՝ 11-ական և ավելի էլեկտրաշարժիչներ։ Պարզ է, որ նման պարագայում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների ճնշող մեծամասնությունը չի կարող զգալի աշխատանք կատարել հիմնական արտադրական պրոցեսների էլեկտրամեքենայացման բնագավառում, մանավանդ որ տնտեսություններում էլեկտրաշարժիչների կեսից ավելին տեղադրված են լրացուցիչ ճյուղերում և, բացի դրանից, դեռ չի արմատավորված այն պրակտիկան, որ նույն էլեկտրաշարժիչը օգտագործվի տարբեր արտադրական պրոցեսներում։

Իհարկե, ռեսպուբլիկայում կան մի շարք առաջավոր տնտեսություններ, որոնք հասել են արտադրության էլեկտրիֆիկացման ավելի բարձր աստիճանի։ Օրինակ, Հոկտեմբերյանի արտադրական վարչության Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը 1962 թ. օգտագործել է 953 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, Արմավիրի կոլտնտեսությունը՝ 736 հազար կիլովատ ժամ։ Հոկտեմբերի կոլտնտեսությունը նույն թվականին ունեցել է 16, իսկ Արմավիրի կոլտնտեսությունը՝ 22 տեղակայված էլեկտրաշարժիչ։

Սպիտակի արտադրական վարչության Ժդանովի անվան սովխոզը այդ նույն տարում օգտագործել է 459 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, և ունեցել է տեղակայված 17 էլեկտրաշարժիչ։ Սովխոզում էլեկտրիֆիկացված են այնպիսի արտադրական պրոցեսներ, ինչպիսիք են՝ կերի նախապատրաստումը և տեղափոխումը, ջրամատակարարումը, կովերի կիթը, գոմաղբի տեղափոխումը, ոչխարների խուզը և այլն։ Այս աշխատանքների էլեկտրիֆիկացումը սովխոզին հնարավորություն տվեց 1962 թ. մեկ ցենտներ կաթի համար աշխատանքային ծախսումները կրճատել 3,1 մարդ-օրից մինչև 2,9 մարդ-օր, իսկ խոշոր եղջերավոր անասունների մեկ ցենտներ քաշաճի համար 5,8 մարդ-օրից մինչև 4,7 մարդ-օր։

Նկատի ունենալով, որ անասնապահական ֆերմաների ստացիոնար աշխատանքների մեքենայացման ռացիոնալ հիմքը էլեկտրաէներգիան է և անասնապահության հետագա զարգացմանը մեծ չափով կնպաստի արտադրական պրոցեսների կոմպլեքսային էլեկտրիֆիկացումը, ռեսպուբլիկայում լայն թափ են ստացել անասնապահական ֆերմաների մեքենայացման և էլեկտրիֆիկացման, ինչպես նաև առանձին ֆերմաների կոմպլեքսային էլեկտրիֆիկացման աշխատանքները։ Առաջին հերթին էլեկտրիֆիկացվում են այնպիսի արտադրական պրոցեսներ, ինչպիսիք են՝ կերի նախապատրաստումը և բաշխումը, անասունների ջրամատակարարումը, կովերի կիթը, ոչխարների խուզը և այլն։ Վերը նշված պրոցեսներում կիրառելով էլեկտրաէներգիան, մենք հնարավորություն կունենանք անասունների խնամքի ներկա պայմաններում



աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու 2,5—3 անգամ, իսկ ավելի պրոգրեսիվ եղանակների անցման դեպքում՝ մինչև 10—15 անգամ։

Անասնապահական ֆերմաներում ամենաաշխատատար պրոցեսներից են կերի նախապատրաստումն ու բաշխումը։ Բավական է ասել, որ այդ պրոցեսների վրա կատարվող աշխատանքի տեսակարար կշիռը մի շարք անասնապահական ֆերմաներում հասնում է 30 և ավելի տոկոսի։ Մինչդեռ այդ պրոցեսների էլեկտրիֆիկացումը 3—4 անգամ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, նույն հարաբերականությամբ կրճատում աշխատանքային ծախսերը, բարձրացնում կերի որակը և ավելացնում է անասունների մթերատվությունը։ Նշված աշխատանքների վրա ծախսված ամեն մի կիլովատ ժամ էլեկտրաէներգիան միջին հաշվով տնտեսում է 0,57 մարդ-օր։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում տարեցտարի ընդլայնվում է կերի նախապատրաստման էլեկտրիֆիկացումը։ Առ մեկը հունվարի 1963 թ. ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաներում էլեկտրաշարժիչներով են աշխատել 447 ծղոտասիլոսահատներ և 272 տարբեր մարկաների կերաջարդիչներ ու կերամանրացուցիչներ։ Միայն մեկ տարում (1962 թ.) անասնապահական ֆերմաներում տեղակայվել են 78 էլեկտրաշարժիչ՝ սիլոսահատ մեքենաները և 54 էլեկտրաշարժիչ՝ կերաջարդիչներն աշխատեցնելու համար։ Այս գործը հաջող է ընթանում Էջմիածնի արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում, ուր 1962 թ. տեղադրվել են 15 էլեկտրաշարժիչ՝ ծղոտասիլոսահատ մեքենաների և 16 էլեկտրաշարժիչ՝ տարբեր մարկաների կերաջարդիչների համար։

Նրանց փորձը վկայում է այն բարձր տնտեսական արդյունավետության մասին, որը ստացվում է կերի նախապատրաստման աշխատատար պրոցեսի էլեկտրիֆիկացման շնորհիվ։ Օրինակ, էլեկտրահաղորդակով գործող ծղոտ մանրացնող մեքենան, ձեռքի աշխատանքի հետ համեմատած, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 20 և ավելի անգամ։

Չնայած դրան, դեռևս կան տնտեսություններ, որոնք այդ աշխատանքի էլեկտրիֆիկացմանը պատշաճ ուշադրություն չեն նվիրում։ Այսպես, Հոկտեմբերյանի շրջանում 1962 թվականին տեղակայվել է էլեկտրահաղորդակով աշխատող միայն 2 ծղոտասիլոսահատ, և դա այն դեպքում, երբ առ մեկը հունվարի 1962 թվականի շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում էլեկտրահաղորդակով աշխատել են ընդամենը 6 ծղոտասիլոսահատ։

Վիճակը համարյա նույնն է Աշտարակի, Սպիտակի, Մարտունու և այլ արտադրական վարչություններում։ Շատ կոլտնտեսություններ, չունենալով համապատասխան մեքենաներ, ծղոտը, խոտը, առվույտը և այլ կերեր առանց մանրացնելու են տալիս անասուններին, որը, բնականաբար, մեծ արդյունք չի տալիս։ Ժամանակն է, որ համապատասխան միջոցներ ձեռնարկվեն ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների ամեն մի անասնապահական ֆերմայում կերի նախապատրաստման ցեխ ստեղծելու համար։ Այդ ցեխերում պետք է տեղակայվեն կերի նախապատրաստման մեքենաներ, որոնք հնարավորություն կտան լրիվ մեքենայացնելու կոշտ և հյութալի կերերի նախապատրաստումը։

Անասնապահական ֆերմաներում ծանր և աշխատատար պրոցես է համարվում նաև ջրամատակարարումը։ Անասուններին ջրելու, կերը նախապատրաստելու, կթի ապարատներն ու ամանները մաքրելու, շենքի հատակը լվա-

նալու համար ֆերմաներում ամեն օր բավականին ջուր է ծախսվում։ Այն առաջավոր տնտեսությունները, որոնք ջրամատակարարումը մեքենայացրել են, քիչ ծախսեր են կատարում և դրանով իսկ իջեցնում են արտադրանքի ինքնարժեքը։ Իսկ այն տնտեսությունները, որոնք ֆերմաներում դեռևս ավտոմատ խմոցներ չեն տեղադրել և ջուրն օգտագործում են հին, պապենական եղանակով, մեծ ծախսեր են կատարում։

Անասնապահական ֆերմաներում ջրամատակարարումը կարելի է առաջավոր եղանակով կատարել միայն մեքենայացման ու էլեկտրիֆիկացման միջոցով։ Չպետք է մոռանալ, որ ավտոմատ խմոցները հնարավորություն են տալիս (հավասար կերակրման դեպքում) կովի կաթնատվությունը մինչև 10 տոկոսով բարձրացնելու և ջրամատակարարման հետ կապված աշխատանքային ծախսումները 80—90 տոկոսով կրճատելու։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում լուրջ ուշադրություն են հատկացնում և հաջողությամբ առաջ տանում ջրամատակարարման էլեկտրիֆիկացումը։ Այսպես. առ մեկը հունվարի 1963 թ. ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահական ֆերմաների ջրհան կայաններում տեղադրված է եղել 245 էլեկտրաշարժիչ, որոնց գումարային հզորությունը հասնում է 3538 կիլովատի։ 1963 թ. առաջին կիսամյակում ջրամատակարարման մեքենայացման պլանը կատարվել է 118,9 տոկոսով։ Այդ գործը հատկապես հաջող է ընթանում Հոկտեմբերյանի արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում։ 1962 թ. ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաների ջրհան կայաններում տեղադրված 73 էլեկտրաշարժիչներից 13-ը տեղադրրվել են Հոկտեմբերյանի արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Չնայած առանձին կոլտնտեսություններ ու սովխոզներ անասնապահական ֆերմաներում ջրամատակարարումը մեքենայացնելու բնագավառում հասել են լավագույն ցուցանիշների, բայց, ընդհանուր առմամբ, այդ աշխատանքը շատ ետ է մնում։ Այսպես, առ մեկը հունվարի 1963 թվականի դրությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների խոշոր եղջերավոր անասունների միայն 13,2, իսկ խոզերի 4,4 տոկոսն էին ապահովված մեքենայական ջրամատակարարմամբ։

Հանրահայտ են կովերի էլեկտրամեքենայական կթի առավելությունները. այն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, բարելավում կթի հիգիենիկ պայմանները և ապահովում կաթի մաքրությունը։ Էլեկտրամեքենայական կիթը, ձեռքի կթի հետ համեմատած, աշխատանքային ծախսումները կրճատում է 50—60 տոկոսով, իսկ անասնապահական ֆերմաների ամբողջ աշխատանքային ծախսումների համեմատությամբ՝ 6 և ավելի տոկոսով։ Եթե մի կովը ձեռքով կթելու համար պահանջվում է 10-ից 12 րոպե, ապա էլեկտրամեքենայական կթի դեպքում՝ 3—5 րոպե, իսկ կթի հատուկ հրապարակներում 2,5—3,5 րոպե։

Ներկայումս հայրենական արտադրությունը յուրացրել է լավ և հուսալի էլեկտրակթի ագրեգատների արտադրությունը, որը հնարավորություն է տալիս կթի համապատասխան ագրեգատ ընտրել ըստ անասնապահական ֆերմաների մեծության և անասնապահության վարման սիստեմի։ Այսպիսի ագրեգատի օգտագործման դեպքում մեծ չափով կրճատվում են աշխատանքային ծախսումները և իջնում է կաթի ինքնարժեքը։



Վերջերս հայրենական մեքենաշինությունն սկսել է ունիվերսալ էլեկտրամեքենայական կթի ագրեգատների արտադրությունը, այդ ագրեգատները կարելի է օգտագործել ինչպես գոմերում, այնպես էլ արոտավայրերում։ Այս սարքավորումները բացի կթի ագրեգատից ունեն նաև կաթի սկզբնական մշակման, կովերին խտացրած կեր տալու, ջուրը տաքացնելու և կովերին մատուցելու հարմարանքներ։

Այսպիսի ունիվերսալ տեղակայումների տիպին է պատկանում ՈՒԴՄ—8 մարկայի կթի տեղակայումը, որը շատ հարմար է կովերի կթի, կաթի սառեցման, մաքրման ու տեղափոխման, կթի ժամանակ կովերին խտացրած կերով կերակրելու, ջրի մատուցման, ջրի տաքացման (կովի կրծքի և ապարատուրայի լվացման) համար և այլն։ Այս մարկայի ունիվերսալ կթի ագրեգատները համարվում են ամենակատարելագործվածը, դրանք շատ ձեռնտու են մեր ռեսպուբլիկայի լեռնային և նախալեռնային շրջանների անասնապահական ֆերմաներում օգտագործելու համար։

ՈՒԴՄ—8 ագրեգատի առավելություններից մեկն էլ այն է, որ այն առանց հավաքելու կարելի է ավտոմեքենայի, տրակտորի կամ մի զույգ ձիու միջոցով տեղափոխել ցանկացած վայրը։ Երկու մարդ կարող են այս տեղակայումը տրանսպորտային փոխադրման պատրաստել 20—30 րոպեի ընթացքում։

Չնայած դրան ռեսպուբլիկայի շատ արտադրական վարչությունների տնտեսություններում էլեկտրամեքենայական կիթը դեռևս լայնորեն տարածված չէ։ Այդ է պատճառը, որ 1962 թ. ընթացքում ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաներում գտնվող 130 հազար կովից էլեկտրամեքենայական կթի ագրեգատներով կթվել են միայն 3,1 հազարը, այսինքն՝ 2,4 տոկոսը։ Այդ ուղղությամբ առանձնապես անբավարար աշխատանք է կատարվում Գորիսի, Ղուկասյանի և Մեղրիի արտադրական վարչությունների տնտեսություններում։

Դատապարտելի է այն, որ առանձին տնտեսություններ ունենալով էլեկտրակթի ագրեգատներ, ձգձգում են դրանց տեղադրումը, իսկ առանձին տնտեսություններում տեղադրված էլեկտրակթի ագրեգատները չեն օգտագործվում և շարունակում են կովերին ձեռքով կթել։ Առ 1-ը հունվարի 1963 թ. ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ունեցել են ընդամենը 23 էլկտրամեքենայական կթի տեղակայում, որոնք լրիվ ծանրաբեռնվածությամբ չեն գործել։ 1962 թ. ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում տեղակայվել է էլեկտրամեքենայական կթի տեղակայանք 2275 գլուխ կովի համար, մինչդեռ այդ տարի մեքենայով կթվել է ընդամենը 904 կով։ Օրինակ, 1962 թ. Անիի, Արտաշատի, Եղեգնաձորի, Ստեփանավանի շրջանի կոլտնտեսություններում տեղադրված էլեկտրամեքենայական կթի ագրեգատները բոլորովին չեն գործել, իսկ Կալինինոյի շրջանի կոլտնտեսություններում տեղադրված 400 գլուխ կովի համար էլեկտրամեքենայական կթի ագրեգատներով կթվել են միայն 160 կով։

Վիճակն ավելի վատ է ռեսպուբլիկայի սովխոզներում։ Ըստ Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին կից կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների, ռեսպուբլիկայի սովխոզները առ 1-ը հունվարի 1963 թ. ունեցել են ընդամենը էլեկտրամեքենայական կթի 22 տեղակայանք, որոնցից միայն 13-ն են գործել։ Կալինինոյի շրջանի սովխոզներում գտնվող կթի 5 տեղակայանքից 4-ը չեն գործել։ Չեն գործել նաև կթի 2 տեղակայանք Կիրովականի սովխոզներում, երկուսը՝ Սևանի և մեկը՝ Մեղրիի սովխոզներում։

Բացի նրանից, որ ռեսպուբլիկայի սովխոզների անասնապահական ֆեր-

աշխատանքների կոմպլեքսային մեքենայացում, որը աշխատանքի արտադրողականության բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և դրանց ինքնարժեքի իջեցման կարևորագույն պայմաններից մեկն է»։



Հայտնի է, որ աշխատանքային ծախսումների տեսակարար կշիռը դաշտավարության մեջ կազմում է ամբողջ գյուղատնտեսական աշխատանքի 60 տոկոսը, դրա մոտավորապես մեկ երրորդից էլ պակասը ծախսվում է ստացիոնար պրոցեսների վրա և, քանի որ էլեկտրաէներգիան հիմնականում օգտագործվում է հենց այդ՝ ստացիոնար պրոցեսներում, այդ պատճառով էլ սահմանափակվում է էլեկտրաէներգիայի օգտագործման հնարավորությունը դաշտավարության մեջ։

Հետագայում ավելի կատարելագործված մեքենաների ստեղծումը հնարավորություն կտա էլեկտրիֆիկացնելու դաշտավարության մոբիլային պրոցեսները, որը մեծ օգուտ կբերի ժողովրդական տնտեսությանը։ Այդ տեղի կունենա հողագործության մեքենայացման ավելի բարձր էտապում, որին կհասնենք մոտիկ ապագայում։ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովն ընդգծեց գյուղատնտեսության քիմիացման հսկայական նշանակությունը և այն կապեց մեքենայացման հետ։ Նա նշեց, որ «Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ մեքենայացման հետ մեկտեղ քիմիայի արմատավորումը նշանակում է հեղաշրջում գյուղատնտեսության մեջ, բացում է աշխատանքի ամենաբարձր արտադրողականության հասնելու ուղին»։

Մեր ռեսպուբլիկայում դաշտավարության մեջ էլեկտրաէներգիան հիմնականում օգտագործվում է հացահատիկի կալսման ու զտման, բամբակի մաքրման և այլ աշխատատար պրոցեսներում։ Այս պրոցեսները կատարվում են կարճ ժամկետում, որոնց խախտումը պատճառ է դառնում ինչպես բերքի կորստի, այնպես էլ որակի իջեցման։ Այդ պրոցեսների էլեկտրիֆիկացումը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և իջեցնում արտադրանքի ինքնարժեքը։ Օրինակ, ՄԿ—1100 կալսիչի վրա և լրացուցիչ աշխատանքներում էլեկտրահաղորդակի օգտագործումը, տրակտորային հաղորդակի հետ համեմատած, մեկ տոննա ցորեն կալսելու համար կենդանի աշխատանքը կրճատում է 66 տոկոսով, իսկ կալսման ժամկետը՝ 2 անգամ։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում կալսման աշխատանքները էլեկտրիֆիկացնելու համար տեղադրված են (առ մեկը հունվարի 1963 թ.) 259 էլեկտրաշարժիչ՝ 3776 կիլովատ ընդհանուր հզորությամբ։ Հաջողությամբ է ընթանում նաև բամբակի մաքրման հետ կապված աշխատանքների էլեկտրիֆիկացումը։ Ներկայումս բամբակի մաքրման համար գործում են 58 էլեկտրաշարժիչ՝ 545,5 կիլովատ ընդհանուր հզորությամբ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսության արտադրանքի ինքնարժեքի իջեցման խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ է առանձին արտադրական պրոցեսների մեքենայացումից անցնել միմյանց հետ կապված արտադրական պրոցեսների ամբողջ կոմպլեքսի մեքենայացման, ներառյալ օժանդակ և լրացուցիչ պրոցեսները։ Պրակտիկան ցույց է տալիս, որ մեկ կամ մի քանի արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացումը չի տալիս տնտեսական այնպիսի մեծ արդյունք, ինչպիսին տալիս է կոմպլեքսային էլեկտրիֆիկացումը։



Խոշոր կոլտնտեսությունները մեքենայացրել են հանրային տնտեսության հիմնական ճյուղերը։ Դրանով, անշուշտ, չպետք է բավարարվել։ Պետք է մեքենայացնել նաև արտադրության օժանդակ ճյուղերը, որոնք, իրենց հերթին, ծառայում են արտադրության հիմնական ճյուղերին և նպաստում նրանց զարգացմանը։ Այժմ, երբ կոլտնտեսությունների գերակշռող մեծամասնությունը խոշորացվել ու տնտեսապես ամրապնդվել է, էլեկտրաէներգիան հաջողությամբ օգտագործում են օժանդակ ճյուղերում ու արտադրական ձեռնարկություններում (դարբնոցներում, մեխանիկական ու փայտամշակման արհեստանոցներում, ալրաղացներում, չորանոցներում և այլուր)։ Օժանդակ ճյուղերի էլեկտրիֆիկացումը նույնպես բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, արագացնում տեխնոլոգիական պրոցեսը, բարելավում է աշխատանքի պայմաններն ու որակը։ Օժանդակ ճյուղերում օգտագործվող ամեն մի կիլովատ ժամ էլեկտրաէներգիան տալիս է 2 մարդ-օրվա տնտեսում։

Մեր ռեսպուբլիկայում զգալի աշխատանք է կատարված գյուղատնտեսության օժանդակ ճյուղերի էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների ալրաղացներում տեղադրված են 469, փայտամշակման արհեստանոցներում՝ 728, իսկ այլ աշխատանքների համար՝ 967 էլեկտրաշարժիչ։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության օժանդակ տնտեսության մեջ աշխատող էլեկտրաշարժիչների ընդհանուր գումարային հզորությունը հավասար է 25938,4 կիլովատի, որը կազմում է կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատող ամբողջ էլեկտրաշարժիչների գումարային հզորության 51,4 տոկոսը։ Օժանդակ տնտեսության էներգազինվածության այսպիսի բարձր տոկոսը (համեմատած ամբողջ գյուղատնտեսության էներգազինվածության հետ) պայմանավորված է, մի կողմից՝ օժանդակ տնտեսության էլեկտրիֆիկացման բարձր աստիճանով, մյուս կողմից՝ հիմնական ճյուղերի՝ անասնապահության և դաշտավարության էլեկտրիֆիկացման ցածր մակարդակով։ Այստեղից էլ հետևում է, որ լուրջ ուշադրություն պետք է նվիրել հանրային տնտեսության հիմնական ճյուղերի էլեկտրիֆիկացմանը, որն անխզելիորեն կապված է գյուղատնտեսական արտադրության ընդլայնման հետ։

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը նոր և բարդ խնդիրներ դրեց սոցիալիստական գյուղատնտեսության առջև։ Այդ խնդիրների լուծման ասպարեզում իր վճռական նշանակությունն ունի գյուղատնտեսության հետագա էլեկտրիֆիկացումը, որը հնարավորություն կտա մեծ չափով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և իջեցնելու թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։

Ա. ՍԱՀԱԿՅԱՆ



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՆ

*Մեքենաշինությունը ժողովրդական տնտեսության հիմնական և առաջատար ճյուղերից մեկն է։ Ծանր ինդուստրիային և, առաջին հերթին՝ նրա առաջատար ճյուղին՝ մեքենաշինությանն է պատկանում երկրի էկոնոմիկայի զարգացման ու առաջընթացի վճռական դերը։*

*Միայն երկրի էլեկտրիֆիկացումն ու մեքենաշինության զարգացումը, գրում էր Լենինը, մեզ հնարավորություն կտան ապահովելու հայրենիքի տնտեսական անկախությունը օտարերկրյա կապիտալիստներից, և Սովետական Միությունը կդառնա հզոր տերություն։*

*Նախապատերազմյան հնգամյակների տարիներին մեր երկրում ստեղծվեց հզոր մեքենաշինություն, ՍՍՌՄ-ը մեքենաներ ու սարքավորումներ ներմուծող երկրից դարձավ մեքենաներ ու սարքավորումներ արտադրող հզոր ինդուստրիալ երկիր։ Ծանր ինդուստրիայի և, առաջին հերթին՝ մեքենաշինության առավել արագ զարգացումը ապահովեց մեր երկրի էկոնոմիկայի առաջընթացը և հնարավորություն տվեց կայուն բազա ստեղծելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բազմակողմանի զարգացման համար։*

*Այժմ ՍՍՌՄ մեքենաշինությունը թողարկվող արտադրանքի ծավալով գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը աշխարհում՝ ԱՄՆ-ից հետո։*

*ՍՍՌՄ-ի էկոնոմիկայի զարգացման ու ամրապնդման, առաջավոր տեխնիկայի աննախընթաց վերելքի բոլոր շրջաններում իր արժեքավոր լուման է մուծել նաև աշխատասեր հայ ժողովուրդը։*

*Նախապատերազմյան հնգամյակների տարիներին, Հայաստանի արդյունաբերության բուռն զարգացումը հանդիսացավ այն կայուն տնտեսական ու տեխնիկական բազան, որի վրա ստեղծվեց և այնուհետև արագ թափով զարգացավ մեքենաշինությունը։*

*1940 թվականին Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 8,7 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը, ընդ որում մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերությանը՝ 15 անգամ։*

*Մեքենաշինությունը Հայաստանում հիմնականում հիմնադրվեց հայրենական պատերազմի տարիներին և արագ թափով սկսեց զարգանալ հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Այդ խնդիրների հաջող իրականացման համար ՀԿՊ Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը, ելնելով մեր տնտեսական շրջանի կոնկրետ պայմաններից, ձեռնամուխ եղան ռեսպուբլիկայի արտադրական ուժերի տեղաբաշխման հետագա բարելավմանը և էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացմանն ու մասնագիտացմանը։ Զգալի փոփոխություններ կատարվեցին արդյունաբերության հետագա համաչափ զարգացման բնագավառում։ Դադարեցվեց էներգատար ճյուղերի միակողմանի զարգացումը, որը արդյունաբերության մեջ ստեղծել էր անհամաչափություն։ Ավելի բարձր տեմպերով զարգացան արդյունաբերական այնպիսի ոչ էներգատար ճյուղեր, ինչպիսիք են՝ հաստոցաշինությունը, էլեկտրամեքենաշինությունը, սարքաշինությունը, գունավոր մետալուրգիան, շինանյութերի արտադրությունը, ինչպես նաև թեթև և սննդի արդյունաբերությունը։ Այս խնդիրներին համապատասխան, հետպատերազմյան հնգամյակների տարիներին կարևոր նշանակություն ստացան մեքենաշինության հետագա զարգացման բարձր տեմպերը, որոնք պայմանավորված էին տեղական հումքի մի շարք տեսակների՝ պղնձի, ալյումինի, սինթետիկ քիմիական նյութերի, հատկապես մեկուսիչ նյութերի, պլաստմասսայից պատրաստվող առարկաների, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների՝ բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների առկայությամբ։*

*Չորրորդ հնգամյակում ռեսպուբլիկայում ստեղծվեցին մեքենաշինության նոր, ժամանակակից ճյուղերը. հաստոցաշինություն, էլեկտրամեքենաշինություն, սարքաշինություն, զգալի չափով ընդլայնվեց ընդհանուր մեքենաշինությունը։ Գործող ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման հետ մեկտեղ կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, կաբելի, էլեկտրատեխնիկական, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի, կոմպրեսորների, կենտրոնախույս պոմպերի, Կիրովականի մեքենաշինական, Լենինականի հեծանվի, լուսատեխնիկական, էլեկտրաշարժիչների գործարանները և այլն։*

*Մեքենաշինության արդյունաբերության ձեռնարկությունները 1950 թ. արդեն արտադրում էին մեծ քանակությամբ ժամանակակից մետաղահատ հաստոցներ, ուժային տրանսֆորմատորներ, գեներատորներ, շարժական էլեկտրակայաններ, էլեկտրաշարժիչներ, կաբել և բազմաթիվ այլ մեքենաներ ու սարքավորումներ։*

*1958 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, մեքենաշինության մետաղամշակման արդյունաբերության աճը կազմեց 440 տոկոս այն դեպքում, երբ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 54 տոկոսով։*

*Յուրացվել է բազմաթիվ նոր կատարելագործված մետաղահատ հաստոցների, էլեկտրական մեքենաների, ժամանակակից սարքերի, ցածր լարվածության ապարատների, կաբելի և մի շարք այլ մեքենաների արտադրությունը։ Այսպիսով ռեսպուբլիկայի մեքենաշինության արդյունաբերության քանակական աճի հետ մեկտեղ տեղի է ունեցել նաև որակական առաջադիմություն։*

*Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1957 թվականի փետրվարյան պլենումը ուրվագծեց արդյունաբերության և շինարարության կառավարման նոր, ավելի կատարյալ ձևեր՝ ըստ տերիտորյալ սկզբունքի։*

*Արդյունաբերության կառավարման այդ նոր ձևերը հնարավորություն տվին գործող արդյունաբերական ձեռնարկությունների վերակառուցման, ինչպես նաև նոր ձեռնարկությունների մասնագիտացման և լայն կոոպերացման հիման վրա զգալի չափով ավելացնելու մեքենաշինության արտադրանքի ծավալը։ Հայտնաբերվեցին չօգտագործվող բազմաթիվ նոր արտադրական կարողություններ, որոնց բազայի վրա կառուցվեցին մի շարք նոր, ժամանակակից մեքենաշինական գործարաններ։ Երկար ժամանակ անգործության էին մատնված Հայտնարկոոպի և տեղական արդյունաբերության մինիս-*

տրության բազմաթիվ ձեռնարկություններ Լենինականում, Կիրովականում, Երևանում և ռեսպուբլիկայի այլ շրջաններում։ Այդ ձեռնարկությունների բազայի վրա կազմակերպվեցին Կիրովականի սարքաշինական և ճշգրիտ հաստոցաշինական գործարանները, Լենինականի հղկող հաստոցների, էլեկտրատեխնիկական, դարբնոցամամլիչային և սարքաշինական գործարանները, Երևանի ֆրեզերային հաստոցների և «Ստանկանորմալ» գործարանները, Էջմիածնի պլաստմասսաների գործարանը, Սևանի սարքաշինական գործարանը և այլն։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿՊ XXI համագումարի կողմից հաստատված 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը։ Այդ նոր ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, ծանր ինդուստրիայի առավել զարգացման հիման վրա մեր հայրենիքի տնտեսական հզորության հետագա ամրապնդումը և ժողովրդի կենսամակարդակի զգալի բարձրացումը։

Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված է ՍՍՌՄ-ի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել 80 տոկոսով, իսկ մեքենաշինության արդյունաբերության արտադրանքը՝ 2 անգամ։ Ինչպես նախորդ հնգամյակներում, այնպես էլ յոթնամյակում նախատեսված են Հայկական ՍՍՌ արդյունաբերության զարգացման առավել բարձր տեմպեր, քան ՍՍՌՄ-ի միջին տեմպերը։ Յոթնամյակում ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 2,2, իսկ մեքենաշինությանը՝ 4,0 անգամ։

ՍՍՌՄ և ՀՍՍՌ արդյունաբերության, այդ թվում մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության համախառն արտադրանքի աճման տեմպերն ունեն հետևյալ պատկերը (հաշված անգամներով).

| | ՍՍՌՄ | | ՀՍՍՌ | |
|---|---|---|---|---|
| | Ամբողջ արդյունաբերությունը | Այդ թվում մեքենաշինությունը | Ամբողջ արդյունաբերությունը | Այդ թվում մեքենաշինությունը |
| 1913 թ. | 1 | 1 | 1 | 1 |
| 1950 թ. | 14,8 | 75,0 | 22,0 | 111,0 |
| 1955 թ. | 27,4 | 162,0 | 41,0 | 289,0 |
| 1958 թ. | 36,6 | 237,0 | 55,0 | 484,0 |
| 1962 թ. | 48,0 | 402,5 | 81,0 | 1074,0 |

Այսպիսով, վերոհիշյալ տվյալները կրկին անգամ հաստատում են լենինյան ազգային քաղաքականության և սովետական իշխանության հաղթանակի փայլուն օրինաչափությունը։

Հայաստանը յոթնամյակի անցած ժամանակաշրջանում վերելքի, նվաճումների ու բարգավաճման տարիներ ապրեց։ Գերակատարվում են յոթնամյակի կոնտրոլ թվերով նախատեսված առաջադրանքները։

Յոթնամյակի անցած չորս տարում ռեսպուբլիկայի մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է ավելի քան 251 տոկոսով։ Յուրացվել են արդյունաբերական արտադրանքի ավելի քան 400 նոր տեսակներ, այդ թվում՝ մինչև 100 կվտ հզորությամբ



էլեկտրաշարժիչներ, ուժային տրանսֆորմատորներ, միասնական սերիայի գեներատորներ, շարժական էլեկտրակայաններ, մի շարք ճշգրիտ սարքեր, ֆրեզերային, հղկող, հորիզոնական ներտաշ, շառավղային շաղափող, ունիվերսալ խառատային հաստոցներ, կոմպրեսորներ, դարբնամամլակային սարքավորումներ, կաբել և բազմաթիվ այլ մեքենաներ, ապարատներ, սինթետիկ նյութեր։ Ներկայումս ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն արտադրանքի ծավալով երկրում գրավում է 3-րդ տեղը, իսկ արտադրանքի մի շարք տեսակներով՝ գեներատորների, շարժական էլեկտրակայանների, կենտրոնախույս պոմպերի արտադրության ծավալով՝ 2-րդ, ուժային տրանսֆորմատորների արտադրությամբ՝ 3-րդ, էլեկտրալամպերի, կաբելային շինվածքների արտադրությամբ՝ 4-րդ տեղը և այլն։

Այժմ Հայաստանում արտադրվում են 600-ով ավելի մետաղահատ հաստոցներ, քան 1930 թվականին, 900 հազար կվտ ուժային տրանսֆորմատորներ, քան 1940 թվականին ամբողջ ՍՍՌՄ-ում և այլն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը վերջին 10 տարում ավելացել է 2,6, այդ թվում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի ծավալը 5,3 անգամ։ Արտադրանքի մի շարք տեսակների թողարկումը 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճել է՝ ուժային տրանսֆորմատորներինը՝ 4,5, մետաղահատ հաստոցներինը՝ ավելի քան 4,5, շարժական էլեկտրակայաններինը՝ 2,25, գեներատորներինը՝ մոտ 1,6, էլեկտրաշարժիչներինը՝ ավելի քան 4,6, կոմպրեսորներինը՝ 1,85, ժամացույցներինը՝ 4,4 անգամ և այլն։

Մեքենաշինության արագ զարգացման շնորհիվ բարձրացել է նրա համախառն արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրանքի մեջ։ Այսպես, օրինակ, ամբողջ արդյունաբերության մեջ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը կազմել է 1940 թվականին 7,7, 1950-ին՝ 9,5, 1958-ին 13,1, 1963-ին 18,7 տոկոս, իսկ 1965 թվականին այն կկազմի ավելի քան 20 տոկոս։

Ռեսպուբլիկայի մեքենաշինարարները, պայքարելով ՍՄԿՊ XXI—XXII համագումարների առաջադրած խնդիրների կենսագործման համար, ձեռք են բերել զգալի հաջողություններ նաև նոր տեխնիկայի ու պրոգրեսիվ տեխնոլոգիայի արմատավորման գործում։

Անցած 4 տարում արդյունաբերական ձեռնարկություններում տեղադրվել են ավելի քան 5600 բարձր արտադրողականության մետաղահատ հաստոցներ, մոտ 600 դարբնամամլիչային սարքավորումներ և մեծ քանակությամբ այլ ժամանակակից մեքենաներ, ապարատներ ու սարքեր։ 1963 թ. ռեսպուբլիկայի արդյունաբերությունը հագեցվեց ևս 1530 ժամանակակից մետաղահատ հաստոցներով և 240 դարբնամամլիչային սարքավորումներով։

Անդրադառնալով այդ հարցին՝ ՀԿՊ XXIII համագումարն ընդգծեց, որ ռեսպուբլիկայում «Զգալի աշխատանք է կատարվել մեքենաշինական գործարանները ժամանակակից սարքավորումներով հագեցնելու, հոսքային և կոնվեյերային նոր գծերի կազմակերպման, համասեռ ճյուղերի զարգացման, ձեռնարկությունները ձուլվածքով, կոմպլեկտային առարկաներով, տեխնոլոգիական սարքավորումներով ապահովելու համար կոոպերացված մատակարարումների ընդլայնման ուղղությամբ»։

Վերջին ժամանակներում մեքենաշինական ձեռնարկություններում կազմա-

կերպվել են բազմաթիվ նոր հոսքային, ավտոմատիկ և կոնվեյերային գծեր։ Հայէլեկտրագործարանի և Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլարանների ցեխերի կոմպլեքսային մեքենայացումը կտա ավելի քան 850 հազար ռուբլու տնտեսում։

Շուտով Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գեներատորների հենոցների մեխանիկական մշակման տեղամասում շահագործման կհանձնվի ավտոմատ հոսքային գիծը։ Այն կվերացնի ձեռքի աշխատանքը, 16 բանվորների փոխարեն հենոցների մշակման վրա կաշխատեն 3 մարդ, և մի քանի անգամ կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։

Վերջերս էլեկտրա-տեխնիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի կոլեկտիվը մշակել և արտադրությանն է հանձնել մի շարք նոր կատարելագործված էլեկտրամեքենաների կոնստրուկցիաներ։ Այդ կատարելագործված մեքենաները՝ ուժային տրանսֆորմատորները, գեներատորները, էլեկտրական շարժիչները և սարքերը մեծ հեռանկարներ են բացում արտադրանքի որակի բարելավման, գունավոր մետաղների և այլ թանկարժեք նյութերի խնայողության ուղղությամբ, ինչպես նաև զգալի չափով իջեցնում են մեքենաների չափերն ու քաշը։ Միասնական սերիայի գեներատորներում նոր, բարձր դիմացկունության մեկուսիչ և այլ նյութերի գործածմամբ ավելի քան 12 տոկոսով կպակասեն նյութական ծախսերը։

Երևանի էլեկտրալամպերի գործարանում փորձարկվում է և շուտով շահագործման կհանձնվի լյումինեսցենտային լամպերի հավաքման նոր հոսքային գիծ, որի գործարկմամբ լամպերի հավաքման բոլոր պրոցեսները, սկսած մաքրումից մինչև խողովակների օդահանումն ու գազալցումը, կկատարեն ավտոմատիկ մեխանիզմները, իսկ լամպերի անցումը մի պրոցեսից մյուսը իրագործվում է կոնվեյերների միջոցով։ Նոր գծի արտադրողականությունը հին գծի համեմատությամբ ավելի քան երկու անգամ բարձր է։

Արդյունաբերական արտադրանքի աճի հետ մեկտեղ տարեցտարի ավելանում է նաև բանվորների, ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը։ Մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ աշխատող արտադրական անձնակազմի թիվը կազմում է արդյունաբերության աշխատողների թվի 27 տոկոսը։ Այսպիսով վերոհիշյալ տվյալները ցույց են տալիս, որ մեքենաշինության արդյունաբերությունը բավականին աշխատատար է և ռեսպուբլիկայում նրա հետագա զարգացման ճիշտ կուրսը հնարավորություն կտա հետագայում ևս մեծ թվով աշխատավորների ընդգրկելու մեքենաշինության արդյունաբերության մեջ։

Կարևոր է նաև նշել այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության մեջ աշխատող ինժեներա-տեխնիկական անձնակազմի մոտ 34 տոկոսն ընդգրկված է մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ։ Այդ բացատրվում է մեքենաշինության արդյունաբերության ձեռնարկությունների բարձր, ժամանակակից տեխնիկական մակարդակով և նրանց թողարկած ժամանակակից մեքենաների սարքավորումների, ապարատների, սարքերի բարձր որակով. այդ գործում չափազանց մեծ է ինժեներա-տեխնիկական աշխատողների դերը։

Մեքենաշինության զարգացումը՝ թողարկվող մետաղահատ հաստոցների, էլեկտրական մեքենաների, սարքերի, ապարատների և սարքավորումների կոնստրուկցիաների բարելավումը, արտադրության տեխնոլոգիայի կատարելագոր-



ծումն անհնար են առանց գիտատեխնիկական մտքի և պրակտիկայի կայուն համագործակցության։ Այդ նպատակով 1956 թ. հիմնադրվեց էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը։ Անցած ժամանակաշրջանում ինստիտուտը մշակել է էլեկտրամեքենաների, ապարատների, կաբելային իրերի, սարքերի ավելի քան 100 նոր տեսակներ, դրանց մեծամասնությունն արդեն արմատավորվել է արտադրության մեջ։ Տարեկան զրտնք կտան մոտ 30 միլիոն ռուբլու տնտեսում։

Հաստոցաշինության և ավտոմատացման միջոցների հետագա զարգացման նպատակով ռեսպուբլիկայում յոթնամյակի ընթացքում ստեղծվեցին համամիութենական մաթեմատիկական մեքենաների ու մետաղահատ հաստոցների էքսպերիմենտալ գիտահետազոտական ինստիտուտի Անդրկովկասյան ֆիլիալը՝ «էնիմ», քիմիական արդյունաբերության և մետալուրգիայի մեջ տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման՝ Կիրովականի «Ավտոմատիկա» և Հայկական մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտները, կազմակերպվել են նաև սարքաշինական հատուկ կոնստրուկտորական բյուրոներ՝ Երևանում ու Լենինականում։ Կարճ ժամանակում վերոհիշյալ գիտահետազոտական ինստիտուտների ստեղծագործական կոլեկտիվներն զգալի աշխատանք կատարեցին թողարկվող արտադրանքի կոնստրուկցիաների բարելավման, նոր, ժամանակակից մեքենաների ու սարքերի ստեղծման ու արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ։

Առանձին ձեռնարկություններում լրիվ չեն օգտագործվում արտադրական կարողությունները և, հատկապես, մեքենայական պարկը։ Այսպես, օրինակ՝ երկու հերթափոխում սարքավորումների աշխատանքային ժամանակի օգտագործման գործակիցը 1962 թ. կազմել է կոմպրեսորների գործարանում՝ 0,47, Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում 0,46, Լենինականի դարբնամամլիչների գործարանում՝ 0,56, Հայէլեկտրագործարանում 0,61 և այլն։

Մեքենաների և սարքավորումների օգտագործման այդպիսի ցածր մակարդակը հիմնականում արդյունք է ձեռնարկությունների ոչ ռիթմիկ աշխատանքի և բանվորական աշխատանքային ֆոնդի մեծ կորուստների։

Մյուս հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ որոշ տնտեսական ղեկավարներ, մտահոգվելով միայն համախառն արտադրանքի պլանների կատարմամբ, մոռանում են, որ պարտավոր են առաջին հերթին ապահովել պլանով նախատեսված ասորտիմենտի քանակը։

Անցած չորս տարվա ընթացքում մեքենաշինական ձեռնարկությունները երկրին պակաս են տվել՝ գեներատորներ 3180, մետաղահատ հաստոցներ 942, շարժական էլեկտրակայաններ 2110 հատ, ուժային տրանսֆորմատորներ 480 հազար կվտ., մինչև 100 կվտ. ուժանոց էլեկտրաշարժիչներ 118,8 հազար հատ։

Պետական առաջադրանքների թերակատարումը արդյունք է այն բանի, որ որոշ ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներ, ինչպես նաև պարտիական ու արհմիութենական կազմակերպություններ վատ են զբաղվել նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի, աշխատատար պրոցեսների մեքենայացման արմատավորմամբ։

Անցած չորս տարում ռեսպուբլիկայի մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության գործող ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման, ինչպես նաև նոր ձեռնարկությունների կառուցման համար կապի-

տալ ներդրումների գումարը կազմել է 58,23 միլիոն ռուբլի, իսկ մինչև յոթնամյակի վերջը կներդրվի մոտ 65,0 միլիոն ռուբլի։

Այս կապիտալ ներդրումների շնորհիվ մինչև 1965 թվականը կավարտվեն ու շահագործման կհանձնվեն միութենական խոշոր նշանակություն ունեցող էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, հզոր տրանզիստորների, հեռավոր կապի ապարատների, «Ստրոմմաշ» էլեկտրամեկուսիչ ապակու թելերի, Լուսավանի գործիքաշինական գործարանները և գործող գործարաններին կից մի շարք խոշոր ցեխեր։ Նոր գործարանների, ինչպես նաև գործող ձեռնարկությունների կարողությունների ընդլայնման շնորհիվ 1965 թվականին մեքենաշինության արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա մոտ 25 տոկոսով։

Անհրաժեշտ է այսուհետև ևս արագ տեմպերով զարգացնել մեքենաշինությունը և առաջին հերթին՝ հաստոցաշինությունը, լայնորեն մասնագիտացնել մեքենաշինական գործարանները։

Հարկավոր է մշակել և արագ յուրացնել նոր, ավելի կատարյալ մեքենաների, էլեկտրոնային, կիսահաղորդչային սարքերի, ավտոմատացման միջոցների, հաշվիչ մեքենաների և այլ սարքավորումների արտադրությունը։ Դրա համար մեր ռեսպուբլիկայում կան բոլոր հնարավորություններն ու միջոցները։ Մնում է, որ պարտիական, արհմիութենական կազմակերպությունները, ժողտնտխորհը, արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները ավելի հետևողականորեն զբաղվեն մեքենաշինության հետագա զարգացման հարցերով և մինչև վերջ գործի վերածեն այդ առթիվ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXIII համագումարի որոշումը։

Ա. ՎԻՐԱԲՅԱՆ
Հայկական ՍՍՌ Պետպլանի Ժողտնտպլանի
բաժնի պետի տեղակալ





# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՁԵՎԻ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

Սոցիալիստական արդյունաբերության զարգացումն ընթացել է համապետական ու տեղական ձեռնարկությունների ստեղծման ու նրանց փոխներգործության միջոցով։ Ըստ որում աստիճանաբար կատարվել է, մի կողմից, տեղական պետական ու կոոպերատիվ արդյունաբերության մերձեցում, իսկ մյուս կողմից՝ համապետական արդյունաբերության մեջ նրանց ձեռնարկությունների ձուլում։

Այսպես, ելնելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումներից, դեռ 1956 թվականի ապրիլի 14-ին մեր պարտիայի Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը՝ «Արհեստագործական կոոպերացիայի վերակազմման մասին» որոշում ընդունեցին, որի համաձայն վերացվեց Կենտարդխորհուրդը։ Արհեստագործական կոոպերացիայի առավել խոշոր մասնագիտացված արտելները ձուլվեցին համապետական և տեղական պետական արդյունաբերության, իսկ առևտրական ու հասարակական սննդի ձեռնարկությունները՝ տեղական առևտրական կազմակերպությունների մեջ։ Տեղական արհեստագործական կոոպերացիայի խորհուրդների տնօրինության տակ մնացին արդյունաբերության բոլոր ճյուղերի հաշմանդամների ու տանն աշխատողների, ժողովրդական գեղարվեստագործական և այլ ճյուղերի արտելները, որոնց հանրայնացման աստիճանը և արտադրության բնույթը թույլ չէին տալիս դրանք ձուլել պետական ձեռնարկությունների հետ։

Արհեստագործական կոոպերացիայի վերակազմումը խթանեց տեղական պետական արդյունաբերության զարգացումը, որն ակներև է հետևյալ աղյուսակից (հազար ռուբլիներով).

| Ճյուղերը | 1955 թ. | | 1958 թ. | |
|---|---|---|---|---|
| | պետ. արդ. | կոոպ. արդ. | պետ. արդ. | կոոպ. արդ. |
| Շինանյութերի | 1220 | 731 | 2301 | 33 |
| Մետաղամշակման | 3400 | 4297 | 2208 | 1075 |
| Կաշվե կոշկի | 4100 | 5993 | 5638 | 2739 |
| Տեքստիլ | 250 | 6776 | 779 | 4518 |
| Տրիկոտաժի | 12 | 2344 | 258 | 1466 |
| Կարի | 5400 | 16756 | 14154 | 7177 |
| Սննդ-համի | 12760 | 1949 | 29104 | 1296 |
| Գեղարվեստագործության | | 4115 | — | 4230 |
| Կահույքի և փայտամշակման | 1800 | 4534 | 2702 | 1194 |
| Այլ | 2239 | 2476 | 3378 | 2019 |
| Ընդամենը՝ | 31161 | 49972 | 60522 | 25748 |

Ինչպես երևում է աղյուսակից, 1958 թվականին արհեստագործական կոոպերացիայի արդյունաբերական արտադրանքը, 1955 թվականի համեմատությամբ պակասել է գրեթե կիսով չափ, որը նրա գործունեության ոլորտի նեղացման և տեղական պետական արդյունաբերության ընդարձակման արդյունք է։ Վերջինս նույն ժամանակամիջոցում մոտավորապես կրկնապատկել է իր արտադրանքի ծավալը։

Այդպիսի տենդենցն ավելի ուժեղ դրսևորվեց հետագայում, երբ մեր երկիրը թևակոխեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Օրինակ, Հայկական ՍՍՌ-ում, եթե մինչև վերակազմումը, 1955 թվականին, ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության ամբողջ ծավալի մեջ արհեստագործական կոոպերացիան գրավում էր 55,6, տեղական պետական արդյունաբերությունը՝ 38,5 և այլ արդյունաբերությունը՝ 5,9 տոկոս, ապա վերակազմումից հետո՝ 1959 թվականին, տեղական պետական արդյունաբերությունը գրավում էր արդեն 69,5, արհեստագործական կոոպերացիան՝ 20,1 և այլ արդյունաբերությունը՝ 10,4 տոկոս։ 60-ից ավելի արտելներ ձուլվել էին պետական արդյունաբերության մեջ, որովհետև նրանց հանրայնացման մակարդակը հավասարվել էր պետական ձեռնարկություններին և սեփականության կոոպերատիվ ձևը լրիվ սպառել էր իր առավելությունները, որի հետևանքով տեխնիկական առաջադիմությունն այդ արտելներում իր համար այլևս չէր կարողանում ճանապարհ հարթել։

Տեղական արդյունաբերության սիստեմում պարփակված էին դեռ լրիվ չօգտագործված շատ ռեզերվներ, որոնք պետք է հայտաբերվեին և ուղղվեին ժողովրդական սպառման առարկաների ավելացմանն ու բնակչության կենցաղային սպասարկման բարելավմանը։ Դրա վրա բարենպաստ ազդեցություն գործեց ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպումը կատարելագործող 1957 թվականի հայտնի միջոցառումների իրականացումը մեր երկրում։

Համապետական արդյունաբերության կառավարումը կատարելագործելու հետ մեկտեղ միջոցներ ձեռնարկվեցին նաև տեղական արդյունաբերության կառավարումը բարելավելու ուղղությամբ։ Հայկական ՍՍՌ-ում, օրինակ, վերացվեց տեղական արդյունաբերության մինիստրությունը և նրա ձեռնարկությունների կառավարումը կենտրոնացվեց տեղական սովետների ձեռքում։ Վերջիններիս տնօրինությանն անցավ նաև համապետական արդյունաբերության ձեռնարկությունների մի որոշ մասը, որն ուներ տեղական նշանակություն։

Սակայն, պրակտիկան ցույց տվեց, որ այդպիսի միջոցառում անցկացնելը վաղաժամ էր, որովհետև տեղական, հատկապես շրջանային սովետների գործադիր կոմիտեները չունեին համապատասխան կադրեր, որոնք ընդունակ լինեին ղեկավարելու իրենց ձեռնարկությունները առանց որևէ ռեսպուբլիկական կոորդինացնող օրգանի։ Դրա համար էլ անհրաժեշտ եղավ կարգավորել տեղական արդյունաբերության կառավարման գործը։ Այն հանձնվեց տեղական տնտեսության մինիստրության տնօրինությանը, որը կազմակերպվել էր կոմունալ տնտեսության մինիստրության բազայի վրա։ Հետագայում կյանքը թելադրեց էլ ավելի կատարելագործել տեղական արդյունաբերության կառավարումը։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի «Արհեստագործական



կոոպերացիայի մասին» 1960 թվականի հուլիսի 20-ի որոշման համաձայն մեր ռեսպուբլիկայում սեպտեմբերին վերացվեց Հայարդխորհը, ինչպես նաև տեղական տնտեսության մինիստրությունը նորից վերակազմվեց կոմունալ տնտեսության մինիստրության։ Միաժամանակ ստեղծվեց Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր տեղական արդյունաբերության և կենցաղային սպասարկման վարչություն, որում կենտրոնացվեց տեղական ու կոոպերատիվ արդյունաբերության գրեթե բոլոր ձեռնարկությունների ղեկավարումը, թողնելով նրանց կառավարումը աշխատավորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեներին։

Նման միջոցառումներ ձեռնարկվեցին նաև մյուս ռեսպուբլիկաներում, դրանով իսկ ամբողջ երկրի մասշտաբով վերացնելով արհեստագործական կոոպերացիան և ձուլելով նրա ձեռնարկությունները պետական արդյունաբերության մեջ։ Այդ արվել էր կյանքի թելադրանքով, օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողություններով ու պահանջներով։

Արհեստագործական կոոպերացիայի արտելների և տեղական պետական արդյունաբերության ձեռնարկությունների ինքնուրույն գոյությունը, նրանց գերատեսչական անջատվածությունն արգելակում էին միևնույն քաղաքներում ու շրջաններում արտադրության բնույթով համասեռ ձեռնարկությունների միավորմանը և նրանց մասնագիտացմանը, ինչպես նաև դժվարացնում էին ժողովրդական սպառման ապրանքների արտադրության նոր կառուցվող ձեռնարկությունների ճիշտ տեղաբաշխումը։ Այդ ձեռնարկությունների արտադրության հանրայնացման աստիճանը և տեխնիկական զինվածության մակարդակը պահանջում էին փոփոխել կառավարման ձևը և ապահովել տեղական արդյունաբերության ավելի որակյալ տնտեսական ղեկավարություն։ Դրա համար պետք էր վերակառուցել արհեստագործական կոոպերացիան այնպես, որ կարգ հաստատվեր ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ, որպեսզի դրանք լինեին բարձրորակ, էժան, և ըստ պատշաճի բավարարեին ժողովրդի հարաճուն պահանջմունքները, վճռականորեն բարելավեին բնակչության կենցաղային սպասարկումը։

Արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների ձուլումը պետական արդյունաբերության մեջ առավել բարենպաստ պայմաններ ստեղծեց այդ հարցերի հաջող լուծման համար։ Հնարավոր դարձավ նպատակահարմար ձևով մշակել ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող առանձին ճյուղերի ու ձեռնարկությունների զարգացման պլանները, կազմակերպված ու մեծ չափերով հումքի և նյութերի տեղական ռեսուրսներ ներգրավել արտադրության մեջ, ռացիոնալ օգտագործել ձեռնարկությունների առկա կարողությունները, կրճատել վարչա-կառավարչական ապարատը։ Հեշտությամբ ու արագությամբ խոշորացվեցին ու մասնագիտացվեցին ձեռնարկությունները, մեքենայացվեցին արտադրական պրոցեսները, ստեղծվեցին կոնվեյերներ ու հոսքային գծեր, արմատավորվեցին նոր տեխնիկան ու առաջավոր տեխնոլոգիան։ Այդ ամենի հիման վրա զգալի չափով ավելացան ապրանքների թողարկումը, ընդլայնվեց նրանց ասորտիմենտը և բարելավվեցին ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական, որակական ցուցանիշները։

Բավական է ասել, որ տեղական արդյունաբերության ձեռնարկությունները թողարկում էին շուրջ 110 տեսակի արտադրանք, որոնց նկատմամբ սիստեմատիկաբար աճում էր ժողովրդի պահանջը։

Այդ գործում կարևոր դեր խաղաց 1960 թ. սեպտեմբերի վերջերին արդյունաբերության բնագավառում տեղի ունեցած վերակառուցումը, երբ վերացվեց արհեստագործական կոոպերացիան և ձեռնարկվեցին մի շարք միջոցներ տեղական արդյունաբերության հետագա զարգացման ու բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ տեղական արդյունաբերությունն սկսել էր ավելի լրիվ բավարարել ռեսպուբլիկայի աշխատավորության հարաճուն պահանջմունքները։

Այսպիսով, նյութատեխնիկական մատակարարման միասնական աղբյուրը, արտադրության նույնությունը և բնակչության կենցաղային սպասարկման կրկնությունը, ինչպես նաև տեղական պետական արդյունաբերական ձեռնարկությունների հետ արհեստագործական կոոպերացիայի արտելների մերձեցումն ու միաձուլումը անհրաժեշտաբար թելադրում էին դրանց ղեկավարումը լրիվ կենտրոնացնել կառավարման մեկ միասնական օրգանում։ Մեր ռեսպուբլիկայի շրջաններում դրանք կենտրոնացվեցին տեղական արդյունաբերության ու կենցաղային սպասարկման ընդհանուր կոմբինատներում, որոնք մնացած շրջանային ինքնուրույն ձեռնարկությունների նման դրվեցին կրկնակի ենթակայության տակ՝ հանձինս ռեսպուբլիկական վարչության և աշխատավորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեների։ Նույնը տեղի ունեցավ նաև Երևան, Լենինական, Կիրովական և Դիլիջան քաղաքներում։

Հայաստանի կոմպարտիայի կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը 1962 թվականի վերջերին ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության և կենցաղային սպասարկման վարչությունը վերակազմեցին բնակչության կենցաղային սպասարկման գլխավոր վարչության և ձեռնարկեցին մի շարք միջոցառումներ տեղական արդյունաբերության կառավարումն էլ ավելի կատարելագործելու և կենցաղային սպասարկումը բնակչության հարաճուն պահանջմունքների մակարդակին հասցնելու ուղղությամբ։

Տեղական արդյունաբերության ղեկավարումը հանձնվեց ռեսպուբլիկայի Ժողտնտխորհին, իսկ արդյունաբերական և ոչ արդյունաբերական տեսակի կենցաղսպասարկման ձեռնարկությունների ղեկավարումը կենտրոնացվեց Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր բնակչության կենցաղային սպասարկման գլխավոր վարչությունում՝ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների կառավարմամբ հանդերձ։

Այսպիսով, արդյունաբերական և ոչ արդյունաբերական տեսակի կենցաղսպասարկման ձեռնարկությունները գտնվում են կրկնակի ենթակայության տակ՝ հանձինս նրանց գլխավոր վարչության և աշխատավորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեների։ Այդ, անշուշտ, դրական ազդեցություն է գործում տնտեսության այս կարևոր բնագավառի կառավարումն էլ՛ ավելի կատարելագործելու վրա, որի ձեռնարկություններն առաջիկայում գյուղական բնակավայրերի արմատական վերակառուցման հիման վրա կընդարձակեն իրենց գործունեության ոլորտը և կամրապնդեն կազմակերպչորեն ու տնտեսապես։ Դրա շնորհիվ հնարավոր կդառնա այդ ձեռնարկություններն ազատել կրկնակի ենթակայությունից, նրանց ղեկավարումն ու կառավարումը ամբողջովին հանձնելով աշխատավորների դեպուտատների սովետներին, այսինքն՝ տեղական ինքնավարությանը, որպեսզի վերջիններս սկսեն վերջնականապես լուծել տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը, ինչպես այդ նախատեսվում է պարտիայի նոր ծրագրով։ Արդեն ներկայումս ընդ-



լայնվում է բնակչության կենցաղի սպասարկման ձեռնարկությունների ցանցը. նրա գործունեությունը դրվում է ինդուստրիալ հիմքի վրա։ Երևան են եկել սպասարկման նոր, առաջադիմական տեսակներ ու ձևեր։

Երևանի կենցաղային սպասարկման կոմբինատը, ժամացույցների նախկին փոքրիկ արհեստանոցների փոխարեն, Սպանդարյանի շրջանում (Թումանյան փողոց № 28, ամառային «Մոսկվա» կինոթատրոնի դիմաց), Լենինյան շրջանում (ՍԿ-ի 3-րդ մաս, Կալինինի փողոց № 47, «Սևան» կինոթատրոնի կողքին) և 26 Կոմիսարների անվան շրջանում (Կոմիտասի փողոց № 20, Շիրվանզադեի անվան դպրոցի դիմաց) կազմակերպել է ժամացույցների նորոգման մասնագիտացված տաղավարներ, որոնք ապահովված են ժամանակակից անհրաժեշտ սարքավորումներով և լավագույն մասնագետներով։ Տաղավարները ստանում են հայրենական ու արտասահմանյան բոլոր մարկաների ժամացույցների մինչև այժմ չունեցած լրիվ մասերը և ընդունում ու կատարում են նրանց նորոգման ամբողջ աշխատանքները բարձր որակով։ Նորոգված ժամացույցները երաշխավորվում են մեկ տարի ժամկետով՝ նոր ժամացույցների տեխնիկական պայմաններով։ Տաղավարներում վերանորոգվում են նաև քաղաքացիների նոր գնած, երաշխավորման մեջ գտնվող ժամացույցները։ Պատվիրատուները կարող են մեծածավալ ժամացույցների վերանորոգման համար ժամագործներ հրավիրել տուն, վճարելով հրավիրման համար գնացուցակով նախատեսված գումարը։ Ժամացույցները նորոգման հանձնելու համար ավելորդ ժամանակ չկորցնելու նպատակով, մասնագիտացված տաղավարներին կից գործում են 10-ից ավելի ընդունման կետեր՝ քաղաքի տարբեր մասերում։

Կոմբինատը կազմակերպել է նաև լուսանկարչական ապարատների նորոգման արհեստանոց Լենինի պողոտայի վրա, որտեղ կատարվում են բոլոր տեսակի, այդ թվում երաշխավորության ժամանակաշրջանում գտնվող լուսանկարչական ապարատների վերանորոգումները, ֆոտոժապավենի հայտածում և լիցքավորում, նոր տաղավարներ՝ 26 Կոմիսարների շրջանի Թբիլիսյան պողոտայի վրա և Լենինյան շրջանի Ծերեթելու ու Թամանցիների փողոցների խաչմերուկում, որտեղ ընդունվում են հեռուստացույցների, ռադիոընդունիչների, գալանտերեայի, էլեկտրական սարքերի, տնային գործածության այլ իրերի, կանացի ու տղամարդու հագուստների վերանորոգման, զանազան կոճակների, ճարմանդների, քանդակարերի պատվերներ։

«Պոլիվինիլացետատ» գործարանի մոտ, Շահումյանի ու էջմիածնի խճուղու խաչմերուկում և Երկաթուղայինների № 1-ում գտնվող ավտոտեխսպասարկման կայաններում տեղադրված են ավտոդողերի նորոգման նոր սարքավորումներ, որտեղ վերանորոգում են բոլոր տեսակի մարդատար ավտոմեքենաների դողերը կարճ ժամկետում և բարձր որակով։ Նորոգված դողերը իրենց տեսքով և որակով չեն տարբերվում չգործածված գործարանային դողերից։

Քաղսովետների գործադիր կոմիտեների վարչությունների միջև բաժանվել են տեխնիկական բարդ կենցաղային մեքենաների ու սարքերի (սառնարանների, կարի ու լվացքի մեքենաների, փոշեծծիչների, հատակամաքրիչների և այլնի) նորոգման աշխատանքների ծավալն ու պարտականությունները։ Կոնկրետ միջոցներ են ձեռնարկված ռեսպուբլիկայի քաղաքներում և

շրջաններում բոլոր մարկաների սառցարանները և այլ մեքենաները պահեստամասերով ու ագրեգատներով ապահովելու գծով։

Հաճելի է, երբ կոշիկը լինում է ամուր, գեղեցիկ և ունենում է մատչելի գին։ Նման դեպքերում հետաքրքրվում են, թե ով է արտադրողը և ձգտում են անպատճառ այն ձեռք բերել հենց տվյալ ձեռնարկությունից։ Այդ տեսակետից ուշագրավ է այն փաստը, որ վերջին շրջանում պատվիրատուների թիվը նկատելիորեն ավելացել է նաև կոշիկի անհատական պատվերների Երևանի № 1 ֆաբրիկայում, որը 1963 թ. յուրացրեց տղամարդու, կանացի և երեխաների 12 տեսակի նոր կոշիկների արտադրությունը, մասնակցեց Մոսկվայում կազմակերպված համամիութենական ցուցահանդեսին և պարգևատրվեց արծաթե ու բրոնզե մեդալներով։ Առավել բարձր գնահատականի արժանացած ձևավոր կոշիկները (9 նմուշ) ցուցահանդեսի հանձնաժողովի որոշմամբ ուղարկվեցին Պլովդիվ քաղաքում կազմակերպվող միջազգային ցուցահանդես։

Մեր ռեսպուբլիկայում նորություն է նաև այն, որ կարի անհատական պատվերների Երևանի բոլոր ֆաբրիկաները և արհեստանոցները հագուստներ կարելու համար ապառիկ պատվերներ են ընդունում։ Բանվորը կամ ծառայողը աշխատանքի վայրից տեղեկանք է ներկայացնում ձեռնարկության կամ հիմնարկի դիրեկտորի և գլխավոր հաշվապահի ստորագրությամբ, որով նրանք երաշխավորում են տվյալ աշխատողի պարտքը հետագայում աշխատավարձից մաս-մաս գանձելու և հագուստի պատվերն ընդունող ֆաբրիկային յուրաքանչյուր ամիս փոխանցելու համար։ Տվյալ տեղեկանքով աշխատավորը իրավունք ունի կարի արհեստանոցում պատվիրելու կոստյում, վերարկու և այլ հագուստեղեն (անկախ արժեքի չափից, վճարելով կանխավճար՝ կարելու և կտորի արժեքի 20 տոկոսը)։ Պատրաստի հագուստը ստանալուց հետո, 6 ամսվա ընթացքում, նա մարում է պարտքը։ Կենցաղային սպասարկման այս նոր ձևը լայն հնարավորություն է ստեղծում յուրաքանչյուր աշխատողի համար ապառիկ կարգով ձեռք բերելու ցանկացած հագուստը։

Կարգավորվում է նաև կահույքի արտադրության ու նորոգման գործը։ Շուտով Երևանում շահագործման կհանձնվի ոչ ստանդարտ կահույքի ֆաբրիկան, որը կպատրաստի այն պատվիրատուների էսկիզներով ու մոդելներով։ Խոշոր արդյունաբերական տեղամասերում, բնակավայրերում, բանվորական ավաններում և մեծ գյուղերում կբացվեն նորագույն սարքավորումներով հագեցված արհեստանոցներ։ Կահույքի մասնագիտացված ֆաբրիկաների կարողությունների ավելացման ու կատարելագործման համեմատ ռեսպուբլիկայի մնացած փայտամշակման ձեռնարկությունները կօգտագործվեն կահույքի նորոգման և անհատական պատվերների կատարման համար։

Այդպիսի միջոցներ ձեռնարկվում են նաև կենցաղային սպասարկման մնացած ձեռնարկությունների գծով, իրականացնելով դրանց կառավարումը կենտրոնացված կարգով և կազմակերպելով խոշոր մասնագիտացված ֆաբրիկաներ, պավիլիոններ և արհեստանոցներ՝ ընդունման կետերի լայն ցանցով։

Բնակչության կենցաղային սպասարկումը ժողովրդական տնտեսության ինքնուրույն ճյուղ է, որի գծով կատարվում է զգալի կապիտալ շինարարություն։ Այդ բնագավառն են ուղարկվելու խոշոր մասնագետներ, լավագույն ճարտարապետներ ու նկարիչներ, կոնստրուկտորներ ու մոդելագործներ, որոնք ժողովրդական այդ մեծ գործին կնվիրեն իրենց ողջ գիտելիքներն ու էներգիան։

Խնդիր է դրված՝ արմատապես բարելավել բնակչության կենցաղային



սպասարկումը, ինչպես նրա ցանցի ընդլայնման, այնպես էլ աշխատանքային պրոցեսների մեքենայացման միջոցով։ Լուրջ ուշադրություն է հատկացվելու վարձույթի կետերի ընդլայնմանը, քանի որ բնակչությանը հարմար օգտավետ է վերցնել փոքր վճարով իրեր ժամանակավորապես օգտագործելու համար, քան թե նրանց գնման վրա ծախսել խոշոր գումարներ ու բնակելի տարածությունը լցնել այդպիսի իրերով։

Ինչպես ասված է պարտիայի նոր ծրագրում՝ մոտակա տարիներին լիովին կբավարարվեն բնակչության կարիքները կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ասպարեզում։ Միայն ընթացիկ յոթնամյակում մեր ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում ու քաղաքներում կառուցվելու են կենցաղսպասարկման մոտ 20 տաղավար և շատ այլ ձեռնարկություններ, որոնց շնորհիվ 1965 թվականին բնակչության արդյունաբերական բնույթի կենցաղային սպասարկման աշխատանքների ծավալը, 1962 թվականի համեմատությամբ, կավելանա գրեթե երկու անգամ, այդ թվում գյուղական վայրերում՝ երեք անգամ։ Դա մեծ պատասխանատվություն է դնում տեղական սովետների վրա՝ բնակչության կենցաղային սպասարկման արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու տեսակետից։ Հենց այդ կողմի վրա բևեռեց նրանց ուշադրությունը անցյալ տարի կայացած Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի վեցերորդ գումարման առաջին սեսիան, որը քննարկեց ռեսպուբլիկայի բնակչության կենցաղային սպասարկման վիճակը և ծավալուն միջոցառումներ մշակեց նրա հետագա բարելավման ուղղությամբ։ Մասնավորապես նշվեց, որ այդ բնագավառում մինչև այժմ կատարվածը շատ հեռու է բավարար լինելուց։ Այն շարունակում է մնալ որպես ժողովրդական տնտեսության ետ մնացող ճյուղ, որի սպասարկման կուլտուրան և ծառայությունների կատարման որակը դեռևս անբավարար են։ Տարիներ շարունակ այդ բնագավառը դուրս է մնացել տեղական օրգանների ուշադրությունից, բնակչության կենցաղային սպասարկումը համարվել է մանրուք, երկրորդական բան, որի հետևանքով նրա աշխատանքի ծավալի առաջադրանքները տարեցտարի չեն կատարվել։

Բնակչության կուլտ-կենցաղային սպասարկման բարելավումը անխզելիորեն կապված է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հետ։ Ուրեմն ժողովրդի կենսական շահերը պահանջում են ամեն կերպ զարգացնել կենցաղային գործածության առարկաների արտադրությունը, վճռականապես բարելավել նրանց որակը և ընդլայնել ասորտիմենտը։ Այստեղ շատ բան է կախված տեղական սովետներից։ Նրանց ուշադրության կենտրոնում միշտ պետք է գտնվեն աշխատավորության կենցաղային սպասարկման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման և որակի բարձրացման հարցերը։

Չի կարելի, մեր կարծիքով, տեղական սովետներին զրկել արտադրական ձեռնարկությունների անմիջական կառավարումից, ինչպես առաջարկում են որոշ տնտեսավարներ և գիտական աշխատողներ։ Սխալ կլինի տեղական սովետների գործունեությունը սահմանափակել միայն աշխատավորության կոմունալ ու կուլտուր-լուսավորական սպասարկմամբ։ Հարկավոր է տեղական սովետների ողջ աշխատանքը կազմակերպել պարտիայի XXII համագումարի որոշումների և նոր ծրագրի հիման վրա, որոնց մեջ ամենայն հստա-

կության սահմանված են տեղական սովետական ու պլանավորող օրգանների դերը կոմունիստական շինարարության արդի էտապում։ Պետական կառավարման և էկոնոմիկայի զարգացման գործում տեղական սովետական, պլանավորող և տնտեսական օրգանների կազմակերպական աշխատանքի ուժեղացմամբ, նրանց պատասխանատվության, դերի ու իրավունքների բարձրացմամբ ու ընդլայնմամբ միայն կարելի է ռեալ հող նախապատրաստել և անցնել «...հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները ... պլանավորման և հաշվառման օրգանները, տնտեսության ղեկավարման ու կուլտուրական զարգացման ղեկավարման օրգանները...»,—ասված է պարտիայի ծրագրում։ Ժողովրդական տնտեսության կառավարման ու ղեկավարման ասպարեզում դրանց գործունեության ոլորտի անընդհատ ընդլայնման միջոցով միայն հնարավոր է ապագայում ստեղծել ժողտնտխորհի տեղական օրգաններ՝ հանձինս ժողովրդական տնտեսության տեղական խորհուրդների, որոնք, հավանաբար, լինելու են տնտեսական ղեկավարման այն միասնական դեմոկրատական օրգանները, որ պետք է տեղերում աստիճանաբար կազմավորվեն կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականության մոտենալու համեմատ։

Այդպիսի միջոցառման իրականացումն անհնար է առանց արտադրական կապ հաստատելու ժողտնտխորհի և արդյունաբերական-արտադրական գոտիների ու գյուղատնտեսական արտադրական վարչությունների պարտիական ու սովետական օրգանների միջև, ապահովելով նրանց աշխատանքում մշտական փոխադարձ կապ ու համաձայնություն արդյունաբերության զարգացման ուղղությամբ։ Նման համաձայնությունն ու փոխադարձ կապը, հատկապես, անհրաժեշտ են այնպիսի հարցերի լուծման դեպքում, ինչպիսիք են՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կազմակերպումը, հումքի տեղական աղբյուրների օգտագործումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, տեխնիկական առաջադիմության ապահովումը, նյութա- տեխնիկական մատակարարումը, արտադրանքի իրացումը և բնակչության կենցաղի սպասարկման բարելավումը։

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու





# ԱՄՆ-Ի ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՓՈՓՈԽՎՈՂ ԱՇԽԱՐՀՈՒՄ[1]

## Բ. ՄԱՐՈՒՇԿԻՆ

*Երեք տերությունների մոսկովյան բանակցությունների նշանակությունը, բանակցություններ, որոնք ավարտվեցին մթնոլորտում, տիեզերական տարածությունում և ջրի տակ միջուկային փորձարկումներն արգելելու մասին պայմանագրի ստորագրմամբ, չի սպառվում վիճելի պրոբլեմներից մեկի կարգավորմամբ և միջազգային լարվածության մեղմացմամբ։*

Մոսկվայի բանակցությունները պետք է դիտել որպես երեք տերությունների առաջին հաջող քայլը, որը որոշում է դեպի կայուն խաղաղությունը շարժման գլխավոր ուղղությունը, և շահագրգռված կողմերի հետագա ջանքերից է կախված արդեն, թե այդ քայլը շրջադարձային կետ կդառնա արդյոք սպառազինությունների մրցավազքի և «սառը պատերազմի» դեմ ժողովուրդների մղած պայքարում։

Մոսկովյան բանակցությունների փորձի արժեքը առաջին հերթին այն բանի ակնառու հաստատումն է, որ մեր ժամանակներում միակ խելամիտ գլխավոր կուրսը խաղաղ գոյակցության կուրսն է։ Մոսկվայում նորից ցուցադրվեց այդ քաղաքականության կենսունակությունը։ Բանակցություններն ընթանում էին ոչ թե «ուժի դիրքերից», այլ փոխադարձաբար ընդունելի որոշումներ գտնելու ոգով։

Մթնոլորտում, տիեզերքում և ջրի տակ միջուկային փորձարկումներն արգելելու մասին պայմանագիրն ստորագրելով, Արևմուտքի առաջատար տերությունները և մյուս բուրժուական պետությունների ճնշող մեծամասնությունը, ըստ էության, ընդունեցին կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների հարաբերությունների խաղաղ կարգավորման անհրաժեշտությունը։

Իսկ ինչպիսի՞ք են միջազգային խաղաղության հեռանկարները մոսկովյան պայմանագիրն ստորագրելուց հետո։ Այդ հեռանկարները կախված կլինեն այն բանից, թե ինչպիսի դիրք կգրավեն արևմտյան պարտնյորները հաջորդ բանակցություններում։

Այդ պրոբլեմի ըմբռնումը, ինչպես և ապագայի մասին դատելու ընդունակությունը միայն կաճի, եթե մենք հասկանանք, թե արևմտյան տերություններն ինչպես և ինչու «եկան Մոսկվա»։ Չէ որ ամեն մի իրազեկ դիտորդի համար էլ միանգամայն ակնհայտ է, որ իրադարձությունների նշված շրջադարձը աներևակայելի կլիներ ընդամենը մի քանի տարի առաջ։ Այդ շրջադարձն արդյոք խոստանո՞ւմ է Արևմուտքի ամբողջ արտաքին քաղաքականության փոփոխություն։ Եվ ինչո՞վ է պայմանավորված այդ շրջադարձը։

---

[1] «Международная жизнь», 1963, № 10.

*Հոդվածն արտատպում ենք աննշան հապավումներով։*

Հենց այդ հարցերն էլ մենք կփորձենք լուսաբանել ներկա հոդվածում, վերապահելով, սակայն, որ քննարկվում է միայն ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը, որի ուսումնասիրությունն առաջնակարգ նշանակություն ունի Արևմուտքի կապիտալիստական երկրների ընդհանուր քաղաքական ստրատեգիան գնահատելու համար։

Ամերիկայի ամենալուրջ տեսաբաններից մեկը՝ Ու. Լիպմանը, մեկնաբանելով մոսկովյան բանակցությունների արդյունքները, թույլ է տվել խիստ բազմանշանակալից մի ֆրազ՝ «Մենք (այսինքն՝ ԱՄՆ-ը.—Բ. Մ.) հարկադրված ենք գոյակցել» սոցիալիստական սիստեմի հետ։ Այդպիսի ձևակերպումից բխում է, որ խաղաղ գոյակցության կուրսը ԱՄՆ-ի համար որոշակի իմաստով անխուսափելի է։ Միացյալ Նահանգները մի շարք հանգամանքների շնորհիվ հարկադրված են դիմել դրան։

Գլխավորն այն է, որ Միացյալ Նահանգների մինչև այժմ վարած արտաքին քաղաքական կուրսը պարզապես սնանկացել է։ Այդ կուրսը ոչ միայն զգալի չափով գցեց Ամերիկայի հեղինակությունն ու ազդեցությունը աշխարհի շատ մասերում, այլև սպառնում է է՛լ ավելի վտանգավոր հետևանքներ ունենալ՝ շարունակվելու դեպքում։ «Միացյալ Նահանգները,— գրել է Հենրի Կիսինգերը 1961 թվականին,— այլևս չեն կարող իրենց թույլ տալ այն անկումը, որով բնորոշվում են վերջին տասնհինգ տարիները։ Միջազգային ասպարեզում մեր դրության այդպիսի վատթարացման ևս մի տասնհինգ տարի, որը մենք կրել ենք երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, և մենք կդառնանք մեկուսացված Ամերիկա աշխարհում, որին մենք զգալիորեն խորթ ենք դարձել»։

Այն պրոցեսը, որի մասին խոսում է Կիսինգերը, իր հիմքով մի օբյեկտիվ պրոցես է, որը չի ենթարկվում ԱՄՆ-ի ո՛չ կառավարության, ոչ էլ կոնգրեսի վերահսկողությանը։ 1945 թվականին, երկրորդ համաշխարհային պատերազմի վերջում, ԱՄՆ-ի տնտեսական, քաղաքական և ռազմական դիրքերը բացառիկ բարենպաստ էին, և հանգամանքների ժամանակավոր զուգորդման շնորհիվ (ատոմային մենաշնորհ) խիստ ուժեղացան։ Բայց այդ դիրքերը ժամանակավոր էին։ Դրանք չէին կարող հավիտենապես պահպանվել։ Եվ, թեպետ 1945 թվականի համեմատությամբ «ամերիկյան հզորությունը» աճել է բացարձակապես, սակայն այն նվազել է հարաբերականորեն։ Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականությունը նպաստել է այդ պրոցեսին։ Այդ ամենը չէր կարող չվատթարացնել ԱՄՆ-ի համաշխարհային դիրքերը։

Վաշինգտոնում դժվարությամբ են ըմբռնում, որ Ամերիկայի հեղինակության և ազդեցության անկման պատճառը նրա արտաքին քաղաքականության բուն իսկ հիմունքների արատավոր լինելն է։ Ամերիկյան ղեկավար շրջանները, որոնք հիպնոսացվել էին Միացյալ Նահանգների 1945 թվականի հզորության փայլով, երկար ժամանակ հրաժարվում էին ճշմարտության երեսին նայել։ Էյզենհաուերի պրեզիդենտության վերջին շրջանում ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության խայտառակ ձախողումները որոշ չափով սասանեցին նրանց ինքնավստահությունը։ Այսպես բնորոշեց «Նյու-Իորկեր» ժուռնալը 1960 թվականին պրեզիդենտի կողմից Ճապոնիա կատարելիք այցի ձախողման նշանակությունը. «Եթե գոյություն էլ ունի ազգի անհաջողության և նվաստացման այնպիսի օրինակ, որը համեմատվեր տեղի ունեցածի հետ, ոչ ոք այս շփոթեցված մայրաքաղաքում (այսինքն՝ Վաշինգտոնում։— Բ. Մ.) այդ օրինակը չէր կարող բերել»։

Էյզենհաուերի ձախողումները Ամերիկայում առաջ բերեցին ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության քննադատությունների ալիք։ Հետպատերազմյան պատմության մեջ առաջին անգամ քննադատվում էր ո՛չ միայն ռեսպուբլիկանների կամ դեմոկրատների արտաքին քաղաքական գործունեությունը (թեև այդպիսի քննադատության պակաս չէր զգացվում), այլև ԱՄՆ-ի ամբողջ արտաքին քաղաքական կուրսը՝ սկսած 1945 թվականից։ 1960 թվականին լույս տեսած «Ի՞նչն է վատ ամերիկյան արտաքին քաղաքականության մեջ» գրքում «Նյու-Յորք թայմս» թերթի մեկնաբան Ս. Սուլցբերգերը բերել է Մոսկվայի և



Փարիզի՝ ԱՄՆ-ի նախկին դեսպան Ու. Բուլիտի հետևյալ խոսքերը՝ «Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մեր արտաքին քաղաքականությունը հզորության ու անվտանգության բարձունքից մեզ իջեցրեց մահվան հովիտը»։

Ահա թե ինչպես էր բնութագրում այն ժամանակ Սուլցբերգերը ամերիկյան քաղաքական կուրսը. «Մենք տատանվում էինք զսպելու» և «ազատագրման» կեղծ լոզունգների միջև, չհասնելով թե՛ մեկին, թե՛ մյուսին։ Մենք բարեկամ, բայց ոչ կայուն երկրներում ստեղծեցինք մի այնպիսի ռազմական մեքենա, որպիսին նրանց էկոնոմիկան ի վիճակի չէ պահել։ Մենք ձգտում էինք կայուն դրություն ստեղծել այնտեղ, որտեղ դա երբեք գոյություն չի ունեցել, և խուսափում էինք այդպիսի դրություն հաստատել ուրիշ տեղերում, երբ նույնիսկ այդ հնարավոր էր։ Այդպիսի անբարենպաստ իրադրության մեջ մենք հասանք մինչև միջուկային, մինչև սարսափի հավասարակշռությունը, որը հավիտենապես շարունակվել չի կարող»։

Ամերիկյան քաղաքականության անհաջողությունների պատճառն այն է, որ այն չի համապատասխանում ժամանակակից աշխարհի պայմաններին, կոնֆլիկտի մեջ է գտնվում այն դարաշրջանի հետ, որում մենք ապրում ենք։ Եվ զարմանալի չէ։ Չէ՛ որ ամերիկյան քաղաքականության ստրատեգիական հիմունքները, որոնք այժմ էլ բնորոշում են ԱՄՆ-ի դիրքերը շատ հարցերում, ակիզբ առան դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմի վերջում և վերջնականապես մշակվեցին 1946—1947 թվականներին։

Իր մեմուարներում նախկին պրեզիդենտ Տրումենը պատմում է այն նիստի (1945 թվականի ապրիլին) մասին, որը նոր կուրսի հիմքը դրեց Սովետական Միության՝ այն ժամանակ Միացյալ Նահանգների գլխավոր ռազմական դաշնակցի նկատմամբ։ «Ես մտադիր եմ կարծր լինել Սովետական կառավարության հետ ունեցած իմ հարաբերություններում», հայտարարեց այդ նիստում Տրումենը։

Տրումենը ո՛չ միայն ջնջեց ՍՍՌՄ-ի հետ ԱՄՆ-ի համագործակցության այն բեղմնավոր քաղաքականությունը, որ անց էր կացնում Ռուզվելտը, այլև օգնեց պատերազմի հետևանքով հարստացած և իրենց դիրքերն ամրապնդած ամերիկյան մոնոպոլիստական շրջանների թշնամական տրամադրությունների դրսևորմանը Սովետական Միության նկատմամբ։

Մոսկվայում ԱՄՆ-ի նախկին դեսպան Ջորջ Քեննանը 1947 թվականին «Ֆորեն աֆֆերս» ժուռնալում հրապարակեց «Սովետական կուրսի աղբյուրները» հոդվածը «X» կեղծանուն ստորագրությամբ, որի մեջ «հիմնավորում էր» նոր քաղաքականությունը, վերջինս անվանելով ՍՍՌՄ-ը «զսպելու» քաղաքականություն։ Այդ քաղաքականության կեղծանունը («զսպելու») իսկույն ևեթ դրսևորեց ամերիկյան ղեկավար շրջանների ձգտումը՝ քողարկելու այդ քաղաքականության էքսպանսիոնիստական, իմպերիալիստական էությունը։ «Զսպումը» դարձավ տրումենյան ադմինիստրացիայի արտաքին քաղաքականության պաշտոնական կուրսը, իր արտահայտությունը գտնելով մասնավորապես «Տրումենի դոկտրինայում» և «Մարշալի պլանում»։

Ինչպես ակնբախ է Քեննանի հիշյալ հոդվածից, «զսպման» քաղաքականության ստեղծագործողներն իրենց հետևություններն ու հանձնարարականները հիմնավորում էին հին, դեռևս մինչպատերազմյան բուրժուական այն «տեսությամբ», ըստ որի Սովետական Միությունը պատկերացվում էր որպես «կավե ոտքերով հսկա»։

Նույնիսկ Սովետական Միության տնտեսական պրոգրեսը, որ ակնհայտ էր բոլորի համար, Քեննանը համարում էր թվացող երևույթ։ Սովետական Միությունը, գրում էր նա, չունի «իր նյութական հզորության ու բարգավաճման իսկական ապացույցներ»։ Այդ ազգը, պնդում էր «սովետական գործերի փորձագետը», «տնտեսապես խոցելի է և որոշակի իմաստով՝ անզոր»։ Նա գտնում էր, որ «Ռուսաստանը Արևմուտքի համեմատությամբ դեռևս շատ թույլ երկիր է»։ Դեռ ավելին. Քեննանը հայտարարում էր, որ «սովետական հասարակությունն ունի այնպիսի արատներ, որոնք վերջիվերջո թուլացման կհասցնեն Սովետական Միության ընդհանուր պոտենցիալը»։ Այստեղից նա

նությունը էֆեկտիվ չէ և ծայրահեղորեն վտանգավոր է։ Սովետական Միության պատմական ծառայությունն այն է, որ, փոխադարձ շահերը հաշվի առնելու հիման վրա Կարաիբյան ճգնաժամի լուծմանը հասնելով, Սովետական կառավարությունը դռներ բացեց մյուս վիճելի հարցերի կարգավորման համար։

Այսպիսով, եթե մենք խոսում ենք մոսկովյան բանակցությունների և Մոսկվայի պայմանագրի առաջացրած նոր հույսերի մասին, խաղաղ գոյակցության հույսերի մասին, ապա պետք է ընդգծել, որ բուն իսկ հանգամանքները, պատմության դառը փորձը հարկադրեցին Միացյալ Նահանգներին՝ փնտրելու նոր ուղիներ։

Իհարկե, մոսկովյան բանակցություններում ձեռք բերված հաջողությունը պետք է զարգացնել։ Առջևում են է՛լ ավելի դժվար ու բարդ շատ պրոբլեմներ՝ ՆԱՏՕ-ի կազմի մեջ մտնող պետությունների և Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների միջև չհարձակման պակտի կնքումը, գերմանական պրոբլեմի կարգավորումը, ընդհանուր և լիակատար զինաթափման հարցի լուծումը։ Այդ բոլոր և մյուս պրոբլեմները անհրաժեշտ է լուծել և դրանով իսկ վերացնել լարվածությունը, վերջ տալ «սառը պատերազմին»։

Մոսկվայի պայմանագրի ստորագրման ժամանակ պետական քարտուղար Դին Ռասկը իր ճառում ընդգծեց, որ այդ ակտը «միայն առաջին քայլն է» և որ «մեր կառավարություններից յուրաքանչյուրը կարող է կարևոր դեր խաղալ որոշելու համար այն, ինչի մասին գրելու են ապագայի պատմաբանները...»։

«Ավելի լայն իմաստով,— շարունակում է նա,— այդ պայմանագրի ստորագրումը արտացոլում է Միացյալ Նահանգների պատրաստակամությունը՝ միանալու պայմանագրի սկզբնական երկու մասնակիցներին, ինչպես նաև մյուս երկրների՝ նպատակասլաց ու մշտական ջանքերին այնպիսի գործնական միջոցներ գտնելու նպատակով, որոնց օգնությամբ կարելի կլինի նվազեցնել լարվածությունը և ժողովուրդների ուսից թոթափել սպառազինությունների մրցավազքի բեռը»։

Դե, իսկ եթե դա այդպես է, ապա կարելի է ասել, որ ԱՄՆ-ի կառավարության առջև, առաջին անգամ, իսկապես նոր հորիզոններ են բացվում։ Միայն թե այդ ուղղությամբ ընթանալու ցանկություն լինի։



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԼԻԴԵՐՆԵՐԸ

## ՊԱԼՄԻՐՈ ՏՈԼՅԱՏԻ

*Իտալական և միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ Պալմիրո Տոլյատին ծնվել է Ճենովայում, 1893 թվականի մարտի 26-ին։ Լինելով Տուրինի համալսարանի ուսանող, Պ. Տոլյատին 1912 թվականին հարում է երիտասարդական սոցիալիստական շարժմանը, իսկ երկու տարի անց մտնում սոցիալիստական պարտիայի շարքերը։ Տոլյատին աշխատակցում է «Ավանտի» թերթին՝ որպես նրա խմբագիրներից մեկը։ 1919 թվականին Ա. Գրամշիի հետ միասին հիմնադրում է «Օրդինե Նուովո» մարքսիստական շաբաթաթերթը և շուտով դառնում նրա գլխավոր խմբագիրը։ «Օրդինե Նուովո» շաբաթաթերթի շուրջը միավորված ռևոլյուցիոներների խումբը, որը գլխավորում էին Գրամշին ու Տոլյատին, օպորտունիստների հետ կապերը խզելու շնորհիվ դարձավ 1921 թվականի հունվարի 21-ին ստեղծված Իտալական կոմունիստական պարտիայի (ԻԿՊ) կորիզը։*

*20-ական թվականներին Պ. Տոլյատին ֆաշիզմին ցույց տված ժողովրդական դիմադրության ակտիվ կազմակերպիչներից մեկն էր։ Մի քանի անգամ ձերբակալում են նրան, բայց նույնիսկ բանտում նա չի դադարեցնում իր հակաֆաշիստական գործունեությունը։ Հռոմում խմբագրած «Իլ կոմունիստա» օրաթերթում նա մերկացնում է իշխանության ձգտող ֆաշիզմի ագրեսիվ, իմպերիալիստական բնույթը։ Սակայն Մուսոլինիի սև շապիկավորների դեմ պայքարելու համար պարտիայի ու բանվոր դասակարգի համախմբմանը խիստ խանգարում էր պարտիայի ղեկավարությունը զավթած ձախ ազանգավորների խմբավորումը։ Հենվելով բորդիգայականության՝ որպես տրոցկիզմի իտալական տարատեսակի լենինյան քննադատության վրա («Ձախությունը» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում, ինչպես նաև Կոմինտերնի II և III կոնգրեսներում արտասանած ճառերում), Ա. Գրամշին և Պ. Տոլյատին վճռական պայքար մղեցին Բորդիգայի ու նրա կողմնակիցների դեմ, լայն բացատրական գործունեություն ծավալեցին՝ հոդվածներ հրապարակելով «Ստատո օպերայո» շաբաթաթերթում (հիմնված է 1923 թ.) և «Ունիտա» թերթում (հիմնված է 1924 թ.)։*

*1922 թ. Պ. Տոլյատին ընտրվում է ԻԿՊ Կենտկոմի, իսկ 1923 թ. պարտիայի գործկոմի անդամ։ Նա 1926 թ. հունվարին Լիոնում կայացած ԻԿՊ III համագումարի կազմակերպիչներից էր։ Այդ համագումարում վերջնականապես ջախջախվեցին Բորդիգայի հակամարքսիստական գաղափարական ու տակտիկական դիրքորոշումները և ԻԿՊ-ում հաղթանակեց բանվոր դասակարգի պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմունքը։*

*Երկրում տեռորիստական «արտակարգ օրենքներ» մտցնելուց և Անտոնիո Գրամշիի ձերբակալությունից (1926 թ. նոյեմբեր) հետո Պ. Տոլյատին գլխավորեց պարտիայի ղեկավարությունը, պարտիա, որն ընդհատակում շարունակում էր հերոսական պայքարը ֆաշիզմի դեմ, ձգտելով հաստատել հակաֆաշիստական միասնություն և առաջին հերթին՝ բանվոր դասակարգի միասնություն։ 1926 թ. Պ. Տոլյատին դառնում է ԻԿՊ գլխավոր քարտուղարը։ Այդ ժամանակ էլ նա Փարիզում կազմակերպեց և գլխավորեց պարտիայի «Արտասահմանյան կենտրոնը», որտեղից ուղղություն էր տրվում իտալական կոմունիստների ամբողջ աշխատանքին։*

*1931 թ. Քյոլնում կայացավ ԻԿՊ IV համագումարը, որը կարևոր որոշում ընդունեց ֆաշիստական մասսայական կազմակերպություններում կոմունիստների աշխատանքի մասին։ Կոմպարտիայի ղեկավարությունը Պ. Տոլյատիի գլխավորությամբ կարողացավ այդ բացառիկ բարդ իրադրության մեջ երկրում ստեղծել հակաֆաշիստական ճակատ, գործողությունների միասնության վերաբերյալ համաձայնություն կնքելով սոցիալիստական պարտիայի հետ։*

*1924 թ. Պ. Տոլյատին ընտրվեց Կոմինտերնի գործկոմի անդամ, իսկ 1928 թվականից դառնում է կոմունիստական ինտերնացիոնալի գործադիր կոմիտեի նախագահության անդամ։ 1935 թ. Կոմինտերնի VII կոնգրեսում նրան ընտրում են այդ կազմակերպության քարտու-*

-գար։ Նա հաճախ մամուլում հանդես է գալիս (Էրկոլի ծածկանունով) միջազգային կոմունիստական շարժման և ֆաշիզմի դեմ մղվող պայքարի հարցերի շուրջ, մերկացնում է ֆաշիզմի էությունը՝ որպես մոնոպոլիստական տիրապետության գործիքի։ 1935 թվականին, Հաբեշստանի վրա ֆաշիստական Իտալիայի ավազակային հարձակումից անմիջապես հետո, Պ. Տոլյատին մյուս կոմունիստների հետ միասին Բրյուսելում կազմակերպեց իտալական հակաֆաշիստների կոնգրես, որտեղ Մուսոլինիի ռեժիմը նշավակվեց որպես իտալական և եթովպիական ժողովուրդների թշնամի։ Իսպանիայում ֆրանկոյական խռովության և իտալա-գերմանական ինտերվենցիայի ժամանակ Պ. Տոլյատին իսպանական ռեսպուբլիկականների կազմում մարտնչած ինտերնացիոնալիստական բրիգադների կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկն էր։ 1939 թ. Պ. Տոլյատին փոխադրվեց Փարիզ, որտեղ ձերբակալվեց Դալադիեի կառավարության կողմից և բանտ նետվեց։

1941-ից մինչև 1944 թվականը նա էմիգրացիայի մեջ էր ՍՍՌՄ-ում։ Ֆաշիստական Իտալիայի ռազմական կրախից (1943 թ. հուլիս) հետո Պ. Տոլյատին առաջ քաշեց երկրի կենսականորեն կարևոր կենտրոնները գրաված գերմանական ֆաշիստների դեմ պայքարի ազգային լայն ճակատ ստեղծելու լոզունգը։ 1944 թ. մարտին Պ. Տոլյատին վերադարձավ Իտալիա։ Նրա նախաձեռնությամբ կոմպարտիան պետական կառավարման ձևի հարցի լուծումը հետաձգեց մինչև պատերազմի ավարտումը և իր ուժերը գործադրեց օկուպանտներին լիովին վռնդելու և դեմոկրատական լայն հիմքերի վրա ազգային միասնության կառավարություն ստեղծելու համար։ Պ. Տոլյատին անմիջական մասնակցություն ունեցավ 1945 թ. ապրիլի 25-ի հակաֆաշիստական ապստամբության նախապատրաստմանը, որի հետևանքը եղավ երկրի ազատագրումը։

Երբ 1944 թ. Բադոլիոյի կառավարությունը վերակազմվեց, Պ. Տոլյատին այնտեղ ստացավ անպորտֆել մինիստրի պաշտոն, հաջորդ կառավարություններում (մինչև 1947 թ. մայիսը) նա գրավում էր մինիստրների սովետի նախագահի տեղակալի և արդարադատության մինիստրի պաշտոնները։ 1946 թ. հունվարին Տոլյատին վերընտրվեց ԻԿՊ գլխավոր քարտուղար։ Նա գլխավորում էր կոմպարտիայի՝ ռեակցիայի դեմ երկրի առաջադիմական ուժերի համախմբված ճակատ ստեղծելու հսկայական աշխատանքը։ Բանվոր դասակարգի և բնակչության բոլոր աշխատավոր խավերի մասսայական պայքարի վերելքի պայմաններում ընդունված 1947 թ. կոնստիտուցիան արտացոլում էր իտալական ժողովրդի ձեռք բերած սոցիալական ու դեմոկրատական լուրջ նվաճումները։

1948 թվականից Պ. Տոլյատին շարունակաբար ընտրվում է պառլամենտի դեպուտատ։ Նա գլխավորում է կոմունիստների պառլամենտական խումբը։ ԻԿՊ-ի և դեմոկրատական մասսաների աճող ուժի հանդեպ ռեակցիան փորձում էր անցնել կոմունիստների դեմ ուղղված պրովոկացիաների ու հալածանքների կամպանիայի։ 1947 թ. մայիսին կոմունիստներն ու սոցիալիստները հեռացվեցին կառավարությունից։ 1948 թ. հուլիսի 14-ին Պ. Տոլյատիի կյանքի դեմ մահափորձ կատարվեց։ Իտալիայի աշխատավորներն այդ ոճրագործությանը պատասխանեցին ընդհանուր հզոր գործադուլով, որին մասնակցեց 7 միլիոն մարդ։

Պ. Տոլյատիի ղեկավարությամբ կոմպարտիան վճռականորեն հանդես եկավ արտաքին քաղաքականության հակաազգային՝ պրոատլանտյան քաղաքականության դեմ։ Նա հետևողականորեն մերկացնում էր «Մարշալի պլանի» իսկական նպատակները, ՆԱՏՕ-ի ագրեսիվ էությունը, մոնոպոլիաների քաղաքականությունը, որոնք երկիրը ներքաշում էին իտալական գյուղացիության համար ավերիչ «ընդհանուր շուկայի» մեջ և այլն։ Կոմպարտիան հանդես եկավ Իտալիայի տերիտորիայում ամերիկյան հրթիռային բազաներ տեղադրելու դեմ ժողովրդական մասսաների մղած պայքարի ավանգարդում։ Ներքին քաղաքականության բնագավառում կոմունիստական պարտիան հանդես եկավ որպես ռեսպուբլիկական կոնստիտուցիայի պաշտպանության, դեմոկրատական իրավունքների ընդլայնման համար ծավալված համաժողովրդական շարժման կազմակերպիչն ու ոգեշնչողը։

Ջախողվելով կղերական-մոնոպոլիստական դիկտատուրա հաստատելու փորձերում, քրիստոնեական-դեմոկրատական պարտիան (ՔԴՊ) վերջին տարիներս անցել է ավելի ճկուն, այսպես կոչված ձախ-ցենտրիստական քաղաքականության։ Մանր զիջումների և դեմոկրատական ռեֆորմներ խոստանալու օգնությամբ կառավարող շրջանները ձգտում են պառակտել աշխատավորների միասնությունը, մեկուսացնել նրանց ավանգարդին՝ կոմունիստական պարտիային։ Այդ կապակցությամբ Պ. Տոլյատին շարունակ ընդգծում է, որ ՔԴՊ-ի նոր տակտիկան իտալական բուրժուազիայի հարկադրական քայլն է, որ պարտադրվում է նրան բանվոր դասակարգի ակտիվ պայքարի, աշխատավորների միասնության հետևանքով։ Իսկական հաջողությունները, մատնանշում է Պ. Տոլյատին, կարող են ձեռք բերվել միայն աշխատավոր մասսաների պայքարի, բանվոր դասակարգի միասնության շնորհիվ։



Իտալիայի կոմունիստական պարտիայի՝ 1956 թ. դեկտեմբերին կայացած VIII համագումարը, հենվելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումների վրա, մշակեց իտալական կոմպարտիայի հետագա գործունեության ծրագրային ու տակտիկական դրույթները, որոնք այնուհետև զարգացվեցին 1960 թ. հունվարին կայացած ԻԿՊ IX համագումարում։ Իտալիայի կոմունիստական պարտիան ակտիվորեն պայքարում է հանուն խաղաղության և միջազգային լարվածության թուլացման։ Իտալիայի կոմպարտիայի 1962 թ. դեկտեմբերին Հռոմում կայացած X համագումարում, հանդես գալով «Աշխատավոր դասակարգերի միասնությունը սոցիալիզմի ճանապարհին դեմոկրատիայի ու խաղաղության պայմաններում» զեկուցմամբ, Պ. Տոլյատին հայտարարեց, որ իտալական կոմունիստները ջերմորեն հավանություն են տալիս Սովետական Միության և սոցիալիստական լագերի երկրների խաղաղ գոյակցության քաղաքականությանը։ Նա ընդգծեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով միջազգային կոմունիստական շարժման միասնության հետագա ամրապնդման անհրաժեշտությունը։

Պ. Տոլյատին քննադատության ենթարկեց կառավարական մեծամասնության պարտիաների փորձերը՝ խուսափելու նույնիսկ այն երկչոտ խոստումները կատարելուց, որ նրանք տվել էին «ձախ-ցենտրիստական» կառավարությունն ստեղծելիս։ Նա կոմունիստներին կոչ արեց վճռական պայքար ծավալել հանուն իսկական, ձախ շրջադարձի։

## ԹՈԴՈՐ ԺԻՎԿՈՎ

Բուլղարիայի կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար և Բուլղարիայի ժողովրդական ռեսպուբլիկայի Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Թոդոր Ժիվկովը միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ականավոր գործիչ է։

Թոդոր Ժիվկովը ծնվել է 1911 թ. սեպտեմբերի 7-ին Բոտևգրադի Օկոլիի Պրավից գյուղում, չքավոր գյուղացու ընտանիքում։ Պատանեկան տարիներից Թոդոր Ժիվկովը բուլղարական բանվոր դասակարգի փառապանծ բանակի ակտիվ մարտիկ է։ Տասնինը տարեկան հասակում նա դառնում է երիտասարդության կոմունիստական միության անդամ, իսկ 1932 թ. ընդունվում է կոմունիստական պարտիայի մեջ, որն այն ժամանակ պայքար էր մղում ընդհատակի ծանր պայմաններում։

Այդ ժամանակից սկսվում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների պանծալի ուղին։ Սկզբում ընկ. Ժիվկովը Սոֆիայում պարտիայի շրջանային կոմիտեի անդամ էր, իսկ 1934 թ. մինչև 1936 թ. մտնում էր ԲԿՊ Սոֆիայի օկրուգային կոմիտեի մեջ։

Գերմանական ֆաշիստների կողմից Բուլղարիան օկուպացնելուց և Սովետական Միության վրա ավազակային հարձակումից հետո Թոդոր Ժիվկովը դառնում է դիմադրության շարժման ղեկավարներից մեկը։ 1943 թ. նա գլխավորում է պարտիզանական շարժումը Բոտևգրադի Օկոլիում, իսկ 1944 թ. հուլիսին նշանակվում է Սոֆիայի Առաջին օպերատիվ գոտու հրամանատարի տեղակալ։

Ընկ. Ժիվկովը 1944 թ. սեպտեմբերի 9-ի հերոսական հակաֆաշիստական ապստամբության ակտիվ ղեկավարներից մեկն էր։ Ապստամբության հաղթանակից հետո նա պարտիական և պետական պատասխանատու աշխատանք է տանում։ 1945 թ. ընկ. Ժիվկովը ԲԿՊ Կենտկոմի անդամության թեկնածու է ընտրվում, իսկ 1948 թվականից նրան անընդմեջ վերընտրում են ԲԿՊ Կենտկոմի անդամ։ 1948—1949 թթ. նա ընտրվում է պարտիայի Սոֆիայի քաղաքային կոմիտեի քարտուղար. Հայրենական ճակատի քաղաքային կոմիտեի նախագահ, Սոֆիայի քաղաքային ժողովրդական խորհրդի նախագահ։ 1950 թ. պարտիայի Կենտրոնական կոմիտեն նրան ընտրում է քաղբյուրոյի անդամության թեկնածու և ԲԿՊ Կենտկոմի քարտուղար, իսկ 1951 թվականին՝ ԲԿՊ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։ 1954 թվականից ընկ. Թ. Ժիվկովը ԲԿՊ Կենտկոմի առաջին քարտուղարն է։

Թոդոր Ժիվկովը Բուլղարիայի ժողովրդական ժողովի բոլոր գումարումների դեպուտատ է, սկսած 1945 թ. ժողովրդական ժողովի նախագահության անդամ և Հայրենական ճակատի Ազգային խորհրդի անդամ։

Թոդոր Ժիվկովին կարևոր դեր է պատկանում Բուլղարիայի և Սովետական Միության միջև բարեկամությունն ամրապնդելու, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներն անշեղորեն կենսագործելու, խաղաղ գոյակցության լենինյան արտաքին քաղաքականության կիրառելու գործում։

1960 թ. Թոդոր Ժիվկովը գլխավորում է բուլղարական պատվիրակությունը ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի սեսիայում. Նա Բուլղարիայի անունից լիովին պաշտպանեց ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի ա-

պինվորից աճել է, կարգացել և հոկտեմբերյան պատմական օրերին մեր առջև կանգնել է որպես հեղափոխությունից ծնված գեներալ»:

*Մ. Վ. Ֆրունզե.*— Մյասնիկյանը հին բոլշևիկ լենինյան է, իր ուժերի մեծ մասը նվիրել է կարմիր գվարդիայի և բանակի շինարարությանը: Մյասնիկյանի անունը հեղափոխական սխրագործության օրինակ պիտի ծառայի...»:

Սերտ էր և անմիջական նրա կապը Լենինի հետ:

*1918 թվականի մայիսի 31-ին Լենինի հեռախոսային կարգադրությունից.*— «Մինչև Մյասնիկովի ժամանելը և գործերը նրան հանձնելը գնալն անհնարին է և անթույլատրելի... Երբ Մյասնիկովը ժամանի, նրան ուղարկեցեք ապարատի մոտ՝ ինձ հետ խոսելու համար...»:

Օրեր, ամիսներ:

## 4.

Մոսկվա: 1918-ի մարտից՝ սովետական մայրաքաղաք և միջնաբերդ:

Կոլչակ, Յուդենիչ, Դենիկին:

Անտանտա:

Մոսկվայի կոմիտե: Զինկազմակերպիչ:

Բանվորներն օրերով հաց չէին ստանում: Բանվորները թողնում էին Մոսկվան և գնում գյուղ՝ հացի համար:

Ալյոշան նստել է Լենինի դիմաց:

— Ինչպե՞ս են գործերը:

— Վատ, Վլադիմիր Իլյիչ... հաց չկա:

— Պետք է բացատրել, պետք է հասկացնել... համբերություն... մի ոստյուն ևս քաղցի և կարիքի վրայից, և մենք կհաղթենք...

Հետագայում նա գրի է առնում և տպում Լենինի խոսքերը.

— Այժմ մեր աչքերի առաջ հրաշք է կատարվում: Քաղցած ռուս բանվորներն ամբողջ աշխարհի գիշատիչների դեմ են և իհարկե կփրկեն Սովետական Ռուսաստանը: Այդ մեզ համար հրաշք կլինի, բայց այդ հրաշքը կլինի՛»:

Թշնամական կրակի գիծը շարժվում է դեպի Մոսկվա:

Մոսկվան վտանգի մեջ է:

Մինչև լույս վառվում են «Մոսկվայի պաշտպանության օպերատիվ շտաբի» լույսերը, որի պետն է նա:

Քուն չունեն և հարուստները: Նրանք խոստանում են պարգևատրել մեկ միլիոնով այն դեդին գնդին, որն առաջինը կմտնի Մոսկվա:

1919-ի սեպտեմբերի 25-ը: Մոսկվայի կոմիտե: Բազմամարդ ժողով: Նախագահում է նա:

Աշուն է Մոսկվայում:

— Շատ եք ծխում, ընկերնե՛ր, պատուհանը բացեք:

Խոսում է նա:

Թարմ օդը ներս է խուժում, թարմ օդի հետ մի ռումբ:

Դավաճանական ձեռքով նետված ռումբը պայթում է: 12 սպանվածների թվում են Մոսկվայի կոմիտեի քարտուղար Զագորսկին, Սաֆոնովը... հիսունհինգ վիրավոր:

Պայթյունի ուժեղ ալիքը նետում է նրան մի կողմ: Ուշաթափ է: Ուշքի է գալիս:

«Թշնամին իր հարվածն ուղղեց Մոսկվայի սրտին, բայց վրիպեց. միայն նրա կրծքից մի քանի հառաչանքներ պոկվեցին»:

Թաղում են զոհերին: Օրորվում է սև երիզներով՝ կարմիր դրոշակների անտառը:

Խոսում է նա:

— «Մոսկվայի կոմիտեում տեղի ունեցած պայթյունը... բանվոր դասակարգի դեմ բուրժուազիայի հանցագործությունների անվերջ շղթայի սոսկ մի օղակն է...

«Ի՞նչ կարող ենք մենք հակադրել դրանց: Մեր կազմակերպվածությունը, տոկունությունը...»:

Կազմակերպիչ էր նա և տոկուն:

Ընտրվում է Մոսկվայի կոմիտեի քարտուղար:

Հուլիսի 15-ին Իլյիչի հետ՝ Խոդինի ճամբարում:

1920-ի ապրիլի 23: Իլյիչի ծննդյան 50-ամյակը:

Մոսկվայի կոմիտեի նիստերի դահլիճ: Հանդիսավոր երեկո: Այստեղ են Գորկին, Լունաչարսկին:

Նախագահում է նա:

Իլյիչն անտեղյակ է այս «դավադրությանը», Իլյիչը տանը նստած պարապում է:

Ամբիոնի մոտ է հեղափոխության մրրկահավը՝ Գորկին:— «Պետք է շատ գնահատել նրան, պետք է շատ սիրել Լենինին, պետք է շատ օգնել Լենինին նրա մեծ, համաշխարհային, տիեզերական աշխատանքում: Լենինը՝ դա ռուսական պատմության հրաշքն է»:

Ռուսական հրաշք, ռուսական հրաշք, ահա քո արմատների արմատը:

Հեռագիր: Կարդում է նա. Թուրքեստանի ճակատից՝ 20 վագոն հացահատիկ՝ Մոսկվայի և Պետրոգրադի բանվորների երեխաներին: Անձամբ Լենինին:

Համերգային բաժին:

Վերցնում է հեռախոսափողը:

— Խնդրում եմ ներկա լինել երեկույթին:

— Հը՛մ: Հոբելյանական ճառեր չեմ ուզում լսել:

— Ճառեր չկան: Միայն համերգ:

— Ովքե՞ր են մասնակցում:

— Շորը, Կրեյնը:

— Գալիս եմ:

1920-ի մայիսի 1-ը: Համառուսաստանյան շաբաթօրյակ:



Իլյիչի հետ գերան են կրում: Աշխատում են քահով:

Ուշ գիշեր է: Վերադառնում են միասին բանվորական շրջաններից, մեքենայով: Մյասնիկյանը փաթաթել է վիզը: Անզինա:

— Մյասնիկյանի բնակարանը:

— Կարիք չկա, Իլյիչ, ես կգնամ:

— Մյասնիկյանի բնակարանը:

Իջավ մեքենայից, հրաժեշտ տվեց:

— Շա՞տ է ցավում:

— Դատարկ բան է:

— Տաք պահիր: Բարի գիշեր:

Նայեց հեռացող ավտոյի հետևից: Ժպտաց: Հիշեց Գորկու խոսքերը:

— Հրաշք, որին ստեղծեց ռուսական պատմությունը:

Ռուսական հրաշք, ռուսական հրաշք:

## 5.

Այնտեղ ուր հիմա գեղատեսիլ Երևանն է, 1920 թվականին Արարատի հովանու տակ կծկըվել էր գավառական մի գյուղաքաղաք, որը նույնպես Երևան էր կոչվում:

28 հազար հոգի էին ապրում այս քաղաքում, որի մի կցալի մասը տեղավորված էր հիվանդանոցներում, որբանոցներում և ընդհանուր կացարաններում, կամ, պարզապես՝ մայթերի վրա:

Տափակ կտուրներով, անբարեկարգ փողոցներով հնադարյան արևելյան մի քաղաք էր այս Երևանը, որի երկնաքեր բարձրություններն էին՝ ռուսական եկեղեցին, հայկական ժամերի գըմբեթները և պարսկական կապույտ մզկիթի վերասլաց մինարեն:

Երևան:

Սով: Համաճարակ: Եղբայրական գերեզմաններ:

Ահա այն, ինչ ժառանգություն ստացավ խորհրդային իշխանությունը:

Ահա այն երկիրը, ուր պիտի մեկներ Մյասնիկյանը Լենինի որոշումով:

Նստած է Լենինը համեստ իր աշխատանոցում, մի կտոր սև հացի, մի կտոր շաքարի և մի բաժակ թեյի դեմ:

Գրասեղանի մյուս կողմը նստած է նա, գլուխը հենած բռունցքին:

«Մոսկվայից մեկնելուց առաջ,— գրում է նա հետագայում,— ես ընկեր Լենինի հետ տեսակցություն ունեցա, որի ժամանակ մենք մանրամասն կրուցեցինք այն մասին, թե ինչպես պետք է աշխատել Կովկասում, ինչ ձևով պետք է հաշվի առնել ռուսական հեղափոխության փորձը, ինչ քաղաքականություն վարել Թուրքիայի նկատմամբ: Լենինը խորհուրդ էր տալիս զգույշ և նրբանկատ լինել Արևելքի ժողովուրդների նկատմամբ, որոնք արդեն արթնանում են, որոնք լուսավորության կարիք ունեն և որոնք լուսավորվելով իրենց մոտ կկատարեն ավելի վիթխարի հեղաշրջում, քան տեղի ունեցավ Ռուսաստանում»:

Չխմված թեյը հորանջում է բաժակում:

Թափվում է ձյունը Կրեմլի պարիսպներին:

— Գործը դժվարին է և պատասխանատու: Ցանկանում եմ ամենայն հաջողություն:

«Ես խնդրեցի Լենինին՝ համառոտ շարադրել իր մտքերը թղթի վրա, նամակի ձևով, որպեսզի այդ նամակը ես կարողանամ հասցնել Կովկասի ընկերներին, որ նրանք կարողանան ղեկավարվել նրանով իրենց ամենօրյա աշխատանքում: Լենինը սիրով համաձայնեց դրան»,—գըրում է նա հետագայում:

Դուրս եկավ նրա մոտից թևավորված: Ապրիլյան արևը շողում է Մոսկվայի վրա: Շինելը կոճկեց: Ձյունից հետո՝ ձնհալ:

«Հայաստանում հիմա գարուն է,— անցավ նրա մտքով: Ժպտաց:— Ծանր գարուն»:

Դեպի Անդրկովկաս, դեպի Հայաստան:

Ներս է մտնում սուրհանդակը:

— Վլադիմիր Իլյիչից:

Այս այն է, Լենինի նշանավոր նամակը՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնային հանրապետության կոմունիստ ընկերներին»:

Այս այն է,— «ավելի դանդաղ, ավելի զգույշ, ավելի սիստեմատիկ անցում դեպի սոցիալիզմ,— ահա թե ինչն է հնարավոր և անհրաժեշտ Կովկասի հանրապետությունների համար, ի տարբերություն ՌՍՖՍՌ-ի: Ահա թե ինչ է հարկավոր հասկանալ ու կարողանալ իրականացնել ի տարբերություն մեր տակտիկայի»:

Այս այն նամակն է, որը վերջանում է այսպես. «Նամակը պետք է գրեի շտապ կերպով, որպեսզի ուղարկեի ընկ. Մյասնիկովի հետ»:

Կուրսկի կայարան: Հատուկ գնացք: Նրա վագոնին կցված է 20 բեռնատար վագոն:

Հացահատիկ և կենսամթերք:

Իլյիչի առաջին օգնությունը Հայաստանին:

Գնացքը շարժվեց:

— Ցտեսություն, Մոսկվա՛:

## 6.

Բաքու:

Չկա Շահումյանը, չկան 26 կոմիսարները:

Ընկել էին նրանք Աղչա-Կույմայի ավազուտներում:

— Անժամանակ գնացիք, Ստեփանե՛, անժամանակ հրաժեշտ տվիք կյանքին, ձեր ընկերներին...

Նրա էջալոնը մեծանում է: Ադրբեջանը կցում

է նոր վագոններ: Բուսական յուղ և բրինձ:

— Հայաստանի համար՝ փլավ: Առայժմ... բուսական յուղով:

1921: Մայիսի 2: Կովկասյան բյուրոյի նիստ: Կիրով, Օրջոնիկիձե:

Կավբյուրոյի որոշումը.— «Մամուլում հրապարակել Լենինի նամակը»:

Շարժվում է գնացքը:

Դեպի Երևան:

Մայիսի 21-ը, 1921 թվականի: Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի պլենում:

Հայաստանի կառավարություն, նոր, խորհրդային Հայաստանի կառավարություն:

Շատ է սազում նրան զինվորական համազգեստը: Ժպտում է: Երազ չէ:

Ժողովրդական կոմիսարների խորհուրդ:

Ժողկոմխորհ: Հայաստանի ժողկոմխորհ:

Սև, քարաշեն երկհարկանի տուն Գուբերնսկայա փողոցի վրա, որը հիմա կրում է հերոս Ալավերդյանի անունը:

Ընտրվեց նաև ժողկոմխորհի նախագահ: Ու նորից դուրս չեկավ զինվորական շինելից: Որովհետև...

Որովհետև նա ընտրվեց նաև հանրապետության ռազմական ժողովրդական կոմիսար:

Արտաքին գործերի ժողկոմ է հաստատվում Ասքանազ Մռավյանը:

Խփում է նրա ուսին:

— Հիմա կարող ես ողջ Եվրոպային նոտա ուղարկել:

*7.*

...Եվրոպան հեռու է, բայց ահա Զանգեզուրը մոտ է:

Զանգեզուր: Հակասովետական ուժերի վերջին միջնաբերդը, ուր իշխում է հայկական Մախնոն, նորին գերազանցություն Նժդեհը:

Ով չի տեսել ազատ երկիր,
Թող գա Հայաստան.
Սպեկուլյանտին ազատ մեյդան,
Իսկ մեզ՝ կախաղան...

Չկա «ազատ» Հայաստանը, բայց դեռ դիմադրում է Զանգեզուրը:

Չկա կախաղան, բայց հայ Մախնոն իր «տղեբանցով» բոլշևիկներին Տաթևի ժայռերից անդընդախոր ձորերն է գլորում:

Եվ լեռնալանջերի ժայռերի ճեղքերից նայող կարմիր կակաչները ներկվում են նահատակների կարմիր արյունով:

Տաթևի՛ ժայռեր, Գնդևազի՛ լեռներ:

«Մենք չէինք ուզում այս կռիվը... Աշխատավորների անեծքը թող փովին ընկնի նրանց վրա», գրում է նա:

«Եղե՛ք անխնա դեպի թշնամին, դեպի բանդիտը: Բայց չդիպչեք խաղաղ ժողովրդին, պահպանեցե՛ք երկրում կարգ ու կանոն: Ոչ թե կանգեզուրցին է մեր թշնամին, այլ...»:

Կես գիշեր: Երևանյան ամառվա գիշերային շոգ: Բաց պատուհանի դեմ կանգնած է: Լուսնի շողերի տակ ցոլում են մեծ ու փոքր Արարատները:

Արարատներից այն կողմ բնաջնջվեց ու ցրիվ եղավ մեր ժողովրդի մեծ մասը:

Իսկ հիմա՝ նոր պատմություն: Ո՞ւմ է հարկավոր այս կռիվը Գնդևազի լեռներում: Ո՞ւմ է հարկավոր:

Հիշեց Իլյիչին:— «Լինել ավելի զգույշ»:

Զգույշ՝ ժողովրդի հետ, իսկ թշնամիների՞...

Թշնամու հանդեպ միշտ անողոք է եղել Իլյիչը:

Ուրեմն՝ կռիվ մինչև վերջնական հաղթանակը:

Եվ «1921 թ. հուլիսի 13-ին Զանգեզուրի վրա ծածանվում է Սովետների կարմիր դրոշը»:

*8.*

Լուռ է ռազմական կոմիսարի հեռախոսը, սակայն զոր ու գիշեր գործում է ժողկոմխորհի նախագահի հեռախոսը:

Ահա թե երբ պետք է լինել «զգույշ», «հաշվի առնել տեղական պայմանները»:

Գրում է. «Գյուղացուն չի կարելի կոմունիստ դարձնել հրահանգներով: Գյուղացին չի լինի կոմունիստ սոսկ ագիտացիայի միջոցով»:

«Գյուղացին կապված է բնության հետ,—շարունակում է նա,—վերջինիս նման նա էլ փաստ, առարկա և նյութ է սիրում: Կոմունիստական քարոզը գյուղում պետք է լինի իրական, նյութական, փաստական»:

Եզրափակում է. «Գյուղական կոմունան կամ արտելը չի ստեղծվի լոկ բարի ցանկությամբ կամ գեղեցիկ խոսքերով»:

Հիշեց Իլյիչին:

Նոր խնդիրներ, նոր հարցեր: Բանվորը թողնում է քաղաքը, գյուղ է գնում: Քաղաքի և գյուղի միջև սերտ կապ: Երկաթուղային տրանսպորտի հարցեր: Երկաթուղայինների վարձատրության բարձրացում: Որակյալ մասնագետներ: Շաբաթօրյակներ:

Հիշեց Իլյիչին:

Պայքար սովի, համաճարակի դեմ: Որբերի և գաղթականների ապահովման խնդիրը: (Տեղական, հայկական երևույթ, թվով քառորդ միլիոն...): Ամերիկյան փոխառության լուծումը: («Համարել միանգամայն նյութապես վնասակար պետության գանձարանին, իսկ քաղաքական նկատառումներով միանգամայն անընդունելի; ուստի համարել ոչնչացված»): Ներման



դեկրետ՝ փախստականների մասին: Դրամական սիստեմի կարգավորում: Մանկատներ ու մանկամսուրներ: 16—50 տարեկան քաղաքացիների անգրագիտության վերացում: «Շահումյանի մորը տալ հարվածային մթերաբաժին և խորհրդային իշխանության տարիֆի ամենաբարձր նորման ցմահ»: Երևանի պետական համալսարան: Պետական թատրոն: «Փոքրիկ աստղագետ» Վիկտոր Համբարձումյան,— ուսման գործը կարգավորել, ապահովել... (Հիշեց Ռոստովի բարեգործականը, իր մերժված դիմումը...): Գրականություն: Արվեստ: Կապ՝ Թումանյանի, Չարենցի, Մարտիրոս Սարյանի, Ռոմանոս Մելիքյանի հետ:

Նա գրում է.— «Երկաթուղի: Ջրանցքներ: Բամբակ: Հաց: Խաղող: Էլեկտրակայաններ... Մայրենի ժողովրդական լեզու: Տասնյակ ժուռնալներ և թերթեր: Հարյուրավոր գրքեր: Համալսարան: Գրադարաններ: Թանգարաններ: Տրոպիկական ինստիտուտ: Կոնսերվատորիա: Կոմերիտմիություն: Պատկոմներ: Կուսակցություն, դարձյալ և դարձյալ շատ բան... Երեք տարիներ, բայց ինչպիսի՜ նվաճումներ:

Մի ամբողջ դարաշրջան: Նոր կյանք: Նոր աշխարհ...»:

*9.*

Օրջոնիկիձե, Կիրով, Մյասնիկյան:— Անդրկովկասյան ժողովուրդների եղբայրության ստեղծագործ դարբինները:

Կովկասյան ֆեդերացիա: Օրջոնիկիձե, Կիրով, Մյասնիկյան:

Մեղվաջան, նախապատրաստական աշխատանք:

1922 թվական, փետրվարի 18: Անդրկովկասի կոմունիստական կուսակցությունների առաջին համագումարը:

Զինվորական համազգեստով ամբիոնի մոտ կանգնած է Լենինի զինվորն ու զինակիցը՝ միշտ խոհուն, միշտ համեստ:

Ժպտում է: Տրամադրությունը լավ է:—Հասկանալ իրար, խորամանկության և ոչ մի նշույլ: Կոմունիստական կուսակցությունը պետք է լիակատար կերպով բյուրեղյա մաքրություն ունենա:

ՌԿ(բ)Կ Անդրկովկասյան երկրային կոմիտե: Նախագահություն.— Օրջոնիկիձե, Կիրով, Մյասնիկյան, Նարիմանով...

«Մենք Անդրկովկասում կստեղծենք ամուր կոմունիստական բաստիոն»:

«Անդրկովկասյան ժողովուրդների եղբայրությունն ու դաշինքը չի կարելի ջնջել գրչով և չի կարելի կտրատել կացինով»:

Ահա՛ նա:

Ահա նա՝ «ազգային խաղաղության դրոշակակիրը Անդրկովկասում» (Ս. Օրջոնիկիձե):

Այդ նա է, Անդրերկրկոմի առաջին քարտուղարը, բոլորից սիրված Ալյոշան:

Օրեր, շաբաթներ, ամիսներ:

*10.*

Ձյուն: Սպիտակ քուրքի մեջ փաթաթված շնչում է Մոսկվան:

Գորկա: Այնտեղ է ապաքինվող Լենինը:

Դուռը բացում է Նադեժդա Կոնստանտինովնան:

— Ալյո՛շա:

— Անձամբ:

Հանում է շինելը:

— Ներս մտիր: Ուրախ կլինի:

Լենին... նա, համարյա թե չի փոխվել... Ուրախ է: Ծիծաղում է:

— Դեղե՞ր, դեղեր... Բժիշկներն ու Նադյան հոգիս հանեցին: Իսկ դու լավ արիր, որ եկար, Անդրկովկասյան ֆեդերացիա... ինչպե՞ս են գործերը... Հայաստանը... աչքը բացե՞ց... բամբա՞կը... ոռոգո՞ւմը... «ռուսական սվինների» մասին լռեցի՞ն հակառակորդները... — ծիծաղում է, —«ռուսական սվիններ»... իսկ ի՞նչ կլիներ երկրի դրությունն առանց ռուսական սվինների...

— Անհրաժեշտ է օգնություն, Վլադիմիր Իլյիչ...

— Օգնություն, հըմ, իսկ ո՞վ է կլացել: Մանուֆակտուրա՞... հացահատի՞կ... մեքենաներ՞... ոսկի՞ արտաքին առևտրի համար... (ծիծաղում է) ռուսական ոսկի: Ո՞վ է կլացել:

Գրում է, հեռախոսում:

— Աշխատել չի կարելի, դու բուժվում ես... Նադեժդա Կոնստանտինովնան է:

— Չասացի՞... Հոգիս հանում են... մի երկտող ևս և վերջ:

Դուրս է գալիս: Վերջին անգամ էր տեսնում իր ուսուցչին, հրամանատարին: Դուրս է գալիս, ինչպես ամեն անգամ՝ թևավորված:

— Շնորհակալություն, Իլյիչ, ցտեսություն Իլյիչ...

Ցտեսություն:— Օ՛, ո՛չ:— Մնաս բարով:

Ձյուն...

*11.*

...Թիֆլիս: Անդրերկրկոմ: Պետրոս Մեծի փողոցի վրա երկհարկանի մի տուն:

«Նա կանգնած էր կուսակցական, խորհրդային և բոլոր մյուս աշխատանքների գլխավոր ղեկի մոտ... նրա գրասեղանին է հոսում... այն բոլոր դառնություններն ու արցունքները, որոն-

ցով ցավում են աշխատավորները: Բայց նրա մոտ են կենտրոնանում նաև այն բոլոր ուրախությունները, որոնցով ապրում էին Անդրկովկասի աշխատավորները»:

Այսպես է գնահատել Կիրովը.

Կուսակցությունն անխառն չէ: Այնտեղ կան անառողջ խմբավորումներ:

«Իմ դիրքը պարտիայի դիրքն է»:

«Խոսքին մի հավատա, ավելի շատ գործին նայիր»:

«Ժամանակն է, որ մենք ձեռք քաշենք առանձին անձնավորությունների՝ «հերոսների» մասին մտքեր ունենալուց, պետք է կցալ մեր ընդհանուր կոլեկտիվը. մեր պարտիական օրգանիզմը, թանկոր դասակարգը»:

. . . . . . . . .

1924: Հունվարի 21:

Ինչպես սև կայծակ անամպ երկնքից:—

Մահացավ Իլյիչը:

Ցնցվեց Մոսկվա:

Կանգնել է նա ղեկավարի դագաղի մոտ քարացած կոպերով: Արցունք չկա. հոգին է լալիս անտես արցունքներով:

— Ինչո՞ւ այսպես շուտ թողիր մեզ, ղեկավա՛ր:

Մոսկվան է սգում, ո՛չ, ողջ սովետական երկիրն է սգում, ամբողջ երկրագունդն է սգում քո մահը, ղեկավա՛ր:

Ծփում է երկրագնդի շուրջը սգո սև ժապավենը:

Ինչո՞ւ այսպես շուտ թողիր մեզ, ղեկավա՛ր:

Թիֆլիս: Անդրերկրկոմ: Պետրոս Մեծի փողոցի վրա երկհարկանի մի տուն:

Կիրովն է այստեղ, Օրջոնիկիձեն, ինքը՝ Մյասնիկյանը:

Լենինյան վինվորներն են ու վինակիցները՝ առանց հրամանատարի:

Ուշ, վաղ գարնանային թիֆլիսյան գիշեր:

Արևմտյան Վրաստանում չէին հանգստանում խռովությունները:

Աբխազիայի մայրաքաղաք Սուխումիում գումարվում էր ինքնավար հանրապետության խորհուրդների համագումարը:

Հիմնական խնդիրը խռովությունների լուծարքն էր:

— Կգնանք մենք:

— Ովքե՞ր են այդ «մենք»-ը,— ժպտում է Օրջոնիկիձեն:

— Աթարբեկյանը, Մագիլևսկին և ես... «Յունկերս»-ով:

— Ինչո՞ւ անպայման «Յունկերս»-ով,— անհանգստանում է Սերգեյ Միրոնովիչը:

— «Յունկերս»-ով:

«Յունկերս», ինչո՞ւ դու չայրվեցիր այդ գիշեր:

## 12.

1925 թվականի մարտի 22:

«Լիտերատուրնայա գազետա»-ի Երևանի այսօրվա թղթակից և լրագրող Կոնստանդին Բագրատովիչ Սերեբրյակովին դեռ մանկությունից վիճակվել է ականատես լինել մեծ դեպքերի:

«— Մի քանի հոկտեմբերիկներով Թիֆլիսի քաղաքամաս Դիդուբեում խաղում էինք,— պատմում է նա:

— Սավառնա՜կ,— գոռաց տղաներից մեկը:

Պարզ, արևոտ երկնքի կապույտի վրա երևաց «Յունկերս»-ը:

Մենք թողինք խաղը և հետևեցինք նրա ընթացքին:

Ինձ թվաց, որ սավառնակը մի րոպե կորցրեց իր սլացքը: Ծխո՞ւմ է, ի՞նչ է:

— Ծո՛ւխ,— գոռաց տղաներից մեկը:

— Մոտորի ծուխն է,— բացատրեց մի լավատես:

Բայց ահա ողջ «Յունկերս»-ը բռնկվեց ծխով ու բոցով:

Սավառնակից պոկվեց մխացող մի կանգված, նրա հետևից՝ այրվող մեքենան դեպի վար, բաց դաշտը:

Մենք վազեցինք դեպքի վայրը:

Ծխում էին մարդկային մնացորդներն ու մեքենան:

Ավտոմեքենաները տեղ հասան: Այրվող դիակներին մոտեցան պատասխանատու աշխատողներ: Նրանցից շատերը լալիս էին...»:

Մահվանից առաջ նա գրեց իր «Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ» հոդվածը և առաջին անգամ տպեց... ծխախոտի գործարանի պատի թերթում:

*Վերջին տողերը.*— «Ես անչափ երջանիկ եմ և մինչև կյանքիս վերջը կհպարտանամ, որ եղել եմ Վ. Ի. Լենինի ժամանակակիցը, անձամբ ծանոթ եմ եղել, խոսել եմ հետը, սեղմել եմ նրա ձեռքը, ման եմ եկել, շրջագայել նրա հետ, եղել եմ այդ հսկայի, մեր ժամանակի հանճարի հետևողն ու փոքր աշակերտը»:

Ես այսօր հպարտ եմ քո հպարտությամբ, Ալեքսանդր Ֆեոդորովիչ:

Այդ հպարտությամբ էլ գրեցի այս սեղմ տողերը քո՛ մասին:

. . . . . . . . .



# Գիտությունը և կյանքը

## ՄԱԹԵՄԱՏԻԿԱՆ ՄԵՐ ՇՈՒՐՋԸ *


Բ. Վ. ԳՆԵԴԵՆԿՈ

*Մաթեմատիկոս, պրոֆեսոր, ՈՒՍՍՌ ԳԱ ակադեմիկոս*


Մեր օրերում գրեթե անհնար է հանրամատչելի նկարագրել այն կարևորագույն իրադարձությունները, որոնք մաթեմատիկայում տեղի են ունեցել վերջին տարում կամ մի քանի տարիներում: Ամենից առաջ մենք հանդիպում ենք հետազոտությունների ուղղությունների բացառիկ բազմազանության և նրանց լայն թափի: Ամեն տարի մաթեմատիկական ժուռնալներում տպագրվում են մոտ 10 հազար ինքնուրույն աշխատություններ. Լուրջ մաթեմատիկական բընույթի հոդվածներ երևան են գալիս տեխնիկական, բիոլոգիական, տնտեսագիտական և այլ պարբերական հրատարակությունների մեծ մասում: Եվ, բացի այդ, աշխատությունների գնահատմանը կարելի է մոտենալ տարբեր դիրքերից: Մի կողմից, դրանք կարելի է գնահատել վզալի դժվարությունների հաղթահարման տեսակետից, երբ հաջողվում է բացահայտել մեկուսացված օրինաչափությունը, որն անմիջականորեն կապված չէ ոչ մաթեմատիկայի ընդհանուր տենդենցների, կամ նրա բաժինների, և ոչ էլ ժամանակակից բնագիտության կամ տեխնիկայի վարգացման հետ: Մյուս կողմից, մաթեմատիկական հետազոտությունները կարող են արժանանալ բարձր գնահատման այն խոր գաղափարների համար, որոնք ապագայում վճռական ազդեցություն կգործեն մաթեմատիկայի կառուցվածքի վրա կամ թե ձեռք կբերեն լուրջ կիրառական նշանակություն: Վերջապես, մաթեմատիկական աշխատությունները կարելի է քննարկել նրանց անմիջական կիրառման արժեքի տեսակետից: Դժվար է ապագայի մասին կռահել, և այդ պատճառով էլ առանձին աշխատությունների գնահատման ժամանակ անխուսափելի է որոշակի սուբյեկտիվ դատողությունը:

Ահա այն պատճառները, որոնցից ելնելով նպատակահարմար է ավելի քիչ շոշափել առանձին գիտնականների նվաճումները, որքան էլ դրանք հիանալի լինեն և առավելագույն ուշադրություն դարձնել մաթեմատիկայի զարգացման ու պրակտիկայի հետ նրա ունեցած կապերի ընդհանուր տենդենցների վրա՝ բառիս ամենալայն իմաստով: Վերջին տարիներին այդ թեմայով շատ հետաքրքիր հոդվածներ են լույս տեսել, որոնցից կհիշեցնեմ այնպիսիները, ինչպես՝ «Նիկոլա Բուրբակի» կոչվող ֆրանսիական նշանավոր մաթեմատիկական կոլեկտիվի «Մաթեմատիկայի ճարտարապետությունը», ամերիկացի գիտնական Մարշալ Ստոնի «Մաթեմատիկան ու գիտության ապագան» և «Հեղափոխությունը մաթեմատիկայում», ինչպես նաև Ա. Ն. Կոլմոգորովի «Մաթեմատիկան» և Ա. Դ. Ալեքսանդրովի «Երկրաչափությունը»: Այդ բոլոր աշխատությունները տարբեր դիրքերից են մոտենում ժամանակակից մաթեմատիկայի առանձնահատկությունների ու նրա զարգացման շարժիչ կսպանակների պարզաբանմանը: Ստորև մենք որոշ չափով կօգտվենք դրանցում արծարծված գաղափարներից:

Ժամանակակից հասարակության կյանքում մաթեմատիկան գրավում է բացառիկ կարևոր տեղ: Ամենից առաջ նրա վրա են հենվում ֆիզիկայի, քիմիայի. բիոլոգիայի օրինաչափությունների ձևակերպումը, բոլոր տեխնիկական ու տնտեսական հաշվարկումները: Մաթեմատիկան դարձել է ժամանակակից գիտության իսկական լեզուն: Բնության ու տեխնիկայի պրոցեսների երևույթների ուսումնասիրությունը ո՛չ միայն նրանց քանակական յուրահատկության, այլև որակական տեսակետից անխուսափելիորեն պահանջում է մաթեմատիկական միջոցների ամենալայն օգտագործում:

Գիտությունն ու տեխնիկան անընդհատ զարգանում են: Բնության վրա ներգործող հին տեխ-

1 «Наука и человечество. 1962», изд. «Знания» стр. 106—117.

կորցրել էր: Այդ ռևոլյուցիոն նորամուծությունը երկար ժամանակ նախապատրաստում էին ֆիզիկոսները, որոնք իրենց հատուկ համարձակությամբ դիֆերենցում էին խկման ֆունկցիաները, ստանալով իմաստավորված ֆիզիկական արդյունքներ: Մաթեմատիկայի ու ֆիզիկայի գործունեության մեջ ընդհանրացված ֆունկցիաների ներմուծումը առաջ բերեց հետազոտությունների հզոր ալիք, որն էապես անդրադարձավ ժամանակակից մաթեմատիկայի բոլոր ճյուղերի մեկնաբանության վրա:

Մեր ժամանակի բնորոշ առանձնահատկություններից մեկը կարելի է և պետք է համարել պրակտիկայում վանական ավտոմատիկ սարքերի արմատավորումը, որոնք ընդունակ են կարգավորել այս կամ այն պրոցեսի ընթացքը: Այդ սարքերը կարելի է տեսնել գործարաններում, գիտական լաբորատորիաներում, տրանսպորտում և այլուր: Դրանց հանձնարարվում են շարունակ ավելի ու ավելի բարդ գործողություններ՝ նավի շարժման, ատոմային էլեկտրակայանի աշխատանքի, տիեզերակայանի կառավարումը: Ժամանակակից ավտոմատ սավառնորդը, օրինակ, ո՛չ միայն խստորեն պահպանում է ուղղությունը և հաշվում քամու ազդեցությունը, այլև ուշադրության է առնում արագության փոփոխումը, ուղղությունը փոխելու անհրաժեշտությունը մոտեցող վտանգի դեպքում և այլն:

Արտադրության, տեխնոլոգիական պրոցեսի կառավարման ավտոմատացումն առաջացել է տնտեսական անհրաժեշտությունից: Պարզվել է, որ ձեռքով մեքենաների կառավարումը թույլ է տալիս միայն փոքր ժամանակամիջոցում արտադրական պրոցեսը պահպանել այն մակարդակի մոտերքում, որի դեպքում ամենալավագույն ձևով են օգտագործվում սարքավորումն ու հումքը: Այսպես, թուղթ պատրաստող մեքենաների սիստեմատիկ դիտումները ցույց տվեցին, որ ձեռքով կառավարելիս նրանք աշխատում են օպտիմալ ռեժիմի սահմաններում միայն ժամանակի մոտ 10 տոկոսը: Մնացած ժամանակ հումքն օգտագործվում է ոչ բավականաչափ ռացիոնալ կերպով, մոտ 20—30 տոկոսը կորչում է, թողարկվող արտադրանքը զրկվում է իր հատկությունների կայունությունից, մեքենաներն ավելի քիչ արտադրողաբար են աշխատում: Այդ համոզիչ կերպով ցույց է տալիս, թե որքան կարևոր է թղթի արտադրության և շատ այլ պրոցեսների կառավարման ավտոմատացումը:

Ավտոմատ կառավարման հիմնական խնդիրը պետք է լինի կարգավորվող պրոցեսի ընթացքի և նրա բնույթը որոշող մեծությունների արագ հաշվարկումը, իսկ այնուհետև՝ ամենառացիոնալ կարգավորման ընտրությունը:

Այդ խնդիրը ամենաբազմազան տարբերակներով այժմ ծառանում է հետազոտողների բազմաթիվ կոլեկտիվների առջև:

Լավագույն, կամ, ինչպես ասում են, օպտիմալ կառավարման ընտրության մասին խնդրի առաջքաշումը նույնական չեն: Բանը ո՛չ միայն կառավարվող պրոցեսների բազմազանությունն է, այլև այն, որ յուրաքանչյուր դեպքում կարելի լինի հասնել վանական նպատակների՝ պրոցեսի արագացման, հումքի, էներգիայի և այլ ծախսումների նվազեցման:

Ինքն ըստ ինքյան հասկանալի է, որ մաթեմատիկոսները չեն կարող անցնել կառավարման օպտիմիզացիայի այն հսկայական պրոբլեմի մոտով, որ կանգնած է ողջ գիտության առջև և հետաքրքրում է հասարակությանը ամենաբազմազան տեսակետներից, մանավանդ որ այդ պրոբլեմը խոստանում է բուն մաթեմատիկայի նոր հետաքրքիր հարցադրումներ:

Ինչպես միշտ պատահում է, այդ դեպքում շատ տարբեր է մաթեմատիկոսների մոտեցումը. ոմանց հետաքրքրում է կոնկրետ խնդիրների մանրամասն լուծումը, մյուսներին հուզում է բացառապես այն ընդհանուր տեսության ստեղծումը, որը կարելի է այնուհետև կիրառել շատ մասնավոր խնդիրների նկատմամբ: Նորից անհրաժեշտ է ասել, որ այն մաթեմատիկոսների նվաճումները, որոնց հաջողվել է ստանալ ամենակարևոր լուծումներ, նախապատրաստվել են նրանց բազմաթիվ նախորդների և ժամանակակիցների կողմից:

Մաթեմատիկայի համար նորություն չեն այն խնդիրները, որոնք կապված են ամենամեծ և ամենափոքր արժեքների որոնման հետ: Կլասիկ անալիզում, որի հիմունքներն ուսումնասիրվում են ամեն մի բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատությունում, մեծ բաժին է նվիրված ֆունկցիաների առավելագույն ու նվազագույն արժեքներին: Վարիացիոն հաշվում, որը մշակվել է XVIII դարում և որը կենտրոնական դեր խաղաց մեխանիկայի ու ֆիզիկայի ընդհանուր սկզբունքների ձևավորման գործում, խնդիրն այլ կերպ էր դրվում: Պահանջվում էր բոլոր թույլատրելի ֆունկցիաներում գտնել այնպիսին, որը նվազագույնը տար ֆունկցիոնալին, այսինքն՝ ֆունկցիաների ընտրությունից կախված մի որոշ թվի:

Երկար ժամանակ հետազոտողները ձգտում էին օգտագործել կլասիկ վարիացիոն հաշվի մեթոդները օպտիմալ կարգավորման խնդիրների լուծման համար: Սակայն այդպիսի անմիջական կիրառումը հանգեցնում էր իսկական հարցադրման կցալի պարզեցման, իսկ երբեմն էլ՝ աղավաղման:

Օպտիմալ կարգավորման ընդհանուր խնդրի վերջին տարիներին առաջարկված մաթեմատի-



կական լուծումներից ամենահետաքրքիրը պատկանում է սովետական գիտնական Լ. Ս. Պոնտրյագինին՝ իր աշակերտների ու աշխատակիցների հետ միասին:

Լ. Ս. Պոնտրյագինի, Վ. Գ. Բոլտյանսկու, Ռ. Վ. Գամկրելիձեի և Ե. Ֆ. Միշչենկոյի, 1961 թվականին հրատարակված գիրքը՝ «Օպտիմալ պրոցեսների մաթեմատիկական տեսությունը», պարունակում է նոր սկզբունքների և որոշ խնդիրների մանրակրկիտ շարադրանքը: Լ. Ս. Պոնտրյագինի առաջարկած լուծումների նշանակությունն այնպիսին է, որ, իսկապես, հարկավոր է խոսել նոր, ոչ կլասիկ վարիացիոն հաշվումներ ստեղծելու մասին, հարմարեցնելով օպտիմալ կառավարման հարցերին: Այդ դեպքում կլասիկ վարիացիոն հաշվումը դրվում է նոր տեսության մեջ որպես նրա մասնակի դրսևորում:

Պրոցեսների օպտիմալ կառավարման հարցերը բացառիկ հետաքրքրություն են ներկայացնում ո՛չ միայն արտադրության կամ, ասենք, տրանսպորտի համար: Ոչ պակաս չափով այդ վերաբերում է պրակտիկայի մյուս բազմաթիվ բնագավառներին: Օրինակ, մինչև հիմա կշտամբանքի առիթ է տալիս այնպիսի մասսայական ու բոլորին հուզող պրոցեսը, ինչպիսին դպրոցական կրթությունն է: Աշխարհի բոլոր երկրներում բողոքներ են լսվում այն մասին, որ մաթեմատիկայի ուսուցումը շատ դեպքերում չի հասնում իր նպատակին: Ճիշտ նույնպես օտար լեզուների ուսումնասիրությունը պատճառում է բազմաթիվ անախորժություններ մանկավարժներին, սովորողներին ու նրանց ծնողներին: Բայց չէ՞ որ ուսուցումը հնագույն կառավարվող պրոցեսներից մեկն է: Պետք է խոստովանել, որ մարդկությունը դեռ չի սովորել օպտիմալ ուղիներ փնտրել ուսուցման, հատկապես մասսայական ուսուցման պրոցեսի կառավարման համար:

Վերջին ժամանակները բոլոր երկրներում մեծ ուշադրություն սկսեցին նվիրել ուսուցման վանական եղանակների գնահատման ոչ թե որակական, այլ քանակական մեթոդներին: Դեռևս վաղ է խոսել այն մասին, որ այդ ուղղությամբ կան լուրջ տեղաշարժեր, բայց առաջին արդյունքներն արդեն առկա են: Օրինակի համար ես կնշեմ մի փոքր էքսպերիմենտալ հետազոտություն, որը վերաբերում է ուսումնական կինոֆիլմերի օգտագործմանը և նյութի յուրացման վրա նրանց գործած ազդեցությանը: Այդ նպատակով հավաքվել և մշակվել է ընդարձակ վիճակագրական նյութ: Միաժամանակ պարզվել է, որ ֆիլմերի առանձին մասերի ցուցադրումով ուղեկցվող՝ մանկավարժի պատմածը հանգեցնում է լավագույն արդյունքների, ինչպես առանց ցուցադրման պատմածի, այնպես էլ ամբողջությամբ ներկայացվող ֆիլմերի համեմատությամբ:

Առարկայի արագ և հաստատուն յուրացումն ապահովող ուսուցման հուսալի միջոցների որոնումների կապակցությամբ, այժմ, քան երբեք անհրաժեշտ է մանկավարժական հետազոտությունների մեջ արմատավորել քանակական համեմատության օբյեկտիվ մեթոդները:

Մտածողության մաթեմատիկական մեթոդներն ու եղանակները կարող են լայնորեն օգտագործվել բիոլոգիայում և բժշկության մեջ: Բիոլոգների և, հատկապես, բժիշկների կզալի մասը, դժբախտաբար, համոզված է, որ կենդանի բնության մեջ տեղի ունեցող պրոցեսների ուսումնասիրման համար մաթեմատիկայի կիրառումը հնարավոր և իրավաչոր չէ: Կենդանի աշխարհի հոսունությունն ու բարդությունը, նրա առանձին ներկայացուցիչների անհատական անկրկնելիությունը, որոշ բնագետների կարծիքով, կենդանի բնության մաթեմատիկական մեկնաբանման բուն գաղափարը նաիվ և սխալ են դարձնում: Իսկ շատ հաճախ բիոլոգիայում մաթեմատիկայի օգտագործումը դիմադրության էր հանդիպում բիոլոգիական օրինաչափությունները մաթեմատիկականներով վերասերելու վախից: Իհարկե, այդ թյուրիմացություն է:

Ֆիզիկոսներին, օրինակ, լավ հայտնի է, որ մաթեմատիկան բնախույզի հավատարիմ օգնականն է թե՛ հետազոտման պրոցեսում և թե հայտնագործած օրինաչափությունների ձևակերպման ժամանակ: Մաթեմատիկայի հետ գրեթե երկու հարյուր տարի սերտ համագործակցելու ընթացքում ֆիզիկան չկորցրեց իր յուրահատկությունը, չհանգեցվեց մաթեմատիկային: Իսկ այնտեղ, որտեղ մաթեմատիկան դարձավ ֆիզիկայի մի մասը, որտեղ առանց հետազոտության մաթեմատիկական մեթոդի անհնար է ֆիզիկայի զարգացումը,— հենց այնտեղ մեր սերունդը ականատես եղավ իրենց ուժով և ընդգրկման լայնությամբ հիանալի հայտնագործումների: Բնության օրինաչափությունների մաթեմատիկական ձևակերպումները մեկ չեն հեռացնում նրա իմացությունից, այլ հնարավորություն են տալիս խուսափել այն անորոշությունից, որը հատուկ է բանավոր արտահայտություններին:

Մենք տեսնում ենք, թե ինչպիսի անսպասելի լրացուցիչ դժվարությունների է հանդիպում մաթեմատիկական մեթոդների օգտագործումը բիոլոգիայում ու բժշկության մեջ: Այնուամենայնիվ շատ դեպքերում անխուսափելի է մաթեմատիկայի կիրառումը՝ բիոլոգիական էքսպերիմենտների դրվածքի և ստացված տեղեկությունների մաթեմատիկական իմաստավորման ժամանակ:

որպեսզի նվազագույնի հասցվեն հումքի տեղափոխման ծախսումները:

Նման մեծ ու մանր խնդիրների լուծումը հանգեցնում է իսկայական տնտեսման: Օրինակ, երկաթուղային ճանապարհի տրասսայի ռացիոնալ ընտրությունը թույլ է տալիս տնտեսել նրա կառուցման միջոցների մոտ 10 տոկոսը:

Ճիշտ նույնպես շաքարի գործարանները շաքարի ճակնդեղի արտադրության վայրերին ճիշտ կցելը, տեղափոխումների ծախսերը կրճատում է առնվազն 12 տոկոսով:

Նշենք, որ մեր կողմից շոշափված պրոբլեմներն այս կամ այն ձևով հանգեցվում են օպտիմալ լուծումների որոնման: Դրանում զարմանալի ոչինչ չկա, քանի որ զարգացման օպտիմալ ուղիներ գտնելը գիտության կարևորագույն խնդիրներից մեկն է:

Սահմանափակվո՞ւմ են արդյոք մաթեմատիկայի հաջողությունները նշված աշխատանքներով: Իհարկե, ոչ: Մեծ և փոքր կարևոր արդյունքներ ստացվել են մաթեմատիկական գիտության բոլոր բաժիններում: Անցած տարիներին նա հաջողությամբ համագործակցել է ֆիզիկայի ու քիմիայի, լեզվաբանության ու տեխնիկայի, աստղագիտության ու ֆիզիոլոգիայի հետ: Պարզվել է, որ մաթեմատիկական մոդելները կարող են լուրջ օգնություն ցույց տալ երկրաբանական հետազոտություններում և եղանակի ձևավորման օրինաչափությունների ճանաչման գործում:

Բացահայտվեցին խոր կապեր մաթեմատիկայի ու պրակտիկ գործունեության շատ ուրիշ ուղղությունների միջև, որոնց շնորհիվ բացվեցին քանակական կանխագուշակումների ճանապարհներն այնտեղ, որտեղ մինչև հիմա հնարավոր էին միայն որակական հետևությունները:

Մաթեմատիկական մեքենաները դուրս են գալիս մանկական հասակից և նրանց կիրառման հնարավորությունները հեքիաթային կերպով մեծանում են: Եթե տասը տարի առաջ ֆանտաստիկ էր թվում մեկ վայրկյանի ընթացքում բազմանիշ թվերի հետ մի քանի հազար թվաբանական ու տրամաբանական գործողություններ կատարելը, ապա այժմ ստեղծվել են հաշվիչ մեքենաներ, որոնք ընդունակ են մեկ վայրկյանում կատարել միլիոնավոր թվաբանական գործողություններ: Հերթի է դրված այնպիսի մեքենաների ստեղծումը, որոնք տասնյակ և հարյուրավոր անգամ ավելի արագ են հաշվում: Այդ թույլ կտա օժանդակ հարմարանքների վրա դնել բազմաթիվ նոր դժվարագույն խնդիրների լուծումը:

Անցած հինգ տարիները դրեցին տիեզերքի նվաճման սկիզբը: 1957 թ. մարդկությունը կիսով չափ բացեց դեպի տիեզերք տանող դուռը. սովետական գիտնականներն արձակեցին երկրի առաջին արհեստական արբանյակը: 1961 թ. մարդը տիեզերական թռիչք կատարեց:

Տիեզերական թռիչքների հաջողությունը նախապատրաստեցին բազմահազար աշխատողներ, այդ թվում նաև մաթեմատիկոսներ: Այժմ, երբ հերթի են դրվել ավելի բարդ թռիչքները Երկրի շուրջը և դեպի մյուս մոլորակները, մաթեմատիկայի առջև նոր պատասխանատու խնդիրներ են ծագել: Դրանց լուծման վրա մաթեմատիկոսներն աշխատում են մեծ լարվածությամբ:

Այդ մեծ և գրավիչ աշխատանքում, ինչպես երբեք, պահանջվում է միջազգային համագործակցություն:

Եթե մինչև հիմա սովետական մաթեմատիկոսները լայնորեն օգտագործել են իրենց ամերիկացի, ֆրանսիացի, անգլիացի, շվեդացի կոլեգաների նվաճումները, իսկ նրանք էլ, իրենց հերթին, զարգացրել ու կիրառել են սովետական մաթեմատիկոսների աշխատանքի արդյունքները, ապա այժմ այդ կապերը հարկավոր է ո՛չ միայն ամրապնդել, այլև զարգացնել: Խաղաղ համագործակցության այդ ճանապարհին մաթեմատիկան մարդկությանը կտա նոր միջոցներ բնությունը ճանաչելու և նվաճելու ճանապարհին:

---


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.:

Բողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание*
*ЦК КП Армении тел. 2-02-24*

ՎՖ 05211 Պատվեր 48 Տիրաժ 9420 Գինը 25 կոպ.

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։* *Ստորագրված է տպագրության 30/I 1964 թ.*

*Հայկական ՍՍՌ կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։*







# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## Լույս են տեսել և վաճառվում են՝

*Արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան։ Դասագիրք (երկրորդ վերամշակված և լրացրած հրատարակություն)։ Ե., Հայպետհրատ, 1963, 746 էջ։*

*Պարտիական, տնտեսագիտական դպրոցների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանների, քաղաքական լուսավորության սիստեմի և ինքնուրույն ուսումնասիրողների համար։ Դասագիրքը վերամշակված է ՍՄԿՊ XXII համագումարի, Կենտկոմի և սովետական կառավարության որոշումների հիման վրա։*

ՋԱԼԵՍԿԻ Մ. Պ., ՆՈՎԳՈՐՈԴՈՎ Ա., ՆՈՎԻԿՈՎԱ Ա.—Գեղարվեստական գրականության օգնությունը ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողներին: *Մ. Պետքաղհրատ, 1963, 544 էջ։*

*Հեղինակներն ընտրել են գեղարվեստական գրականության մեծաքանակ ստեղծագործություններից ամենակարևորներն ու ամենաբնորոշները և քաղվածքներ են կատարել դրանցից։*

*Աշխատությունը շատ օգտակար է պրոպագանդիստների, պարտիական ակտիվի և պարտիայի պատմությունն ուսումնասիրողների համար։*

ՍՍՌՄ արտաքին քաղաքականության փաստաթղթերը: *Մ., Քաղհրատ, 1963, 8-րդ հատոր. ընդգրկում է 1925 թ. հունվարի 1-ից մինչև դեկտեմբերի 31-ը ընկած ժամանակաշրջանի փաստաթղթերը՝ պայմանագրեր, համաձայնագրեր, նոտաներ, հայտարարություններ, հաղորդագրություններ, նամակներ, հեռագրեր և այլն։*

Գյուղատնտեսական ձեռնարկության էկոնոմիկան: *Ուսումնական ձեռնարկ։ Մ., Պետքաղհրատ։ 1963, 528 էջ։*

*Հեղինակները լուսաբանել են սոցիալիստական գյուղատնտեսության ձեռնարկությունների էկոնոմիկայի թեորիական հիմունքները՝ կապված կոլտնտեսությունների ու սովխոզների պրակտիկ գործունեության հետ։*

*Դասագիրքն օգտակար է գյուղատնտեսության աշխատողների համար։*

Սոցիալիզմի քաղաքատնտեսություն: *Դասախոսությունների դասընթաց։ Մ., Մոսկվայի Համալսարանի հրատ.։ 1963, 688 էջ։*

*Ընդգրկում է կոմունիստական հասարակարգի առաջին փուլի՝ սոցիալիզմի և կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի քաղաքատնտեսության հիմնական թեմաները։*

Կոլտնտեսային և համաժողովրդական սեփականության մերձեցման իրավական հարցերը: *Մ., Պետիրավարան. հրատ.։ 1963, 424 էջ։*

*Գիրքը բաղկացած է հետևյալ բաժիններից՝ կոլտնտեսային և համաժողովրդական սեփականության մերձեցման իրավական ձևերի ընդհանուր բնութագրումը, սոցիալիստական սեփականության երկու ձևերի հետագա կատարելագործման ու մերձեցման իրավական կարգը, կոլտնտեսային ընդհանուր սեփականության մակարդակի բարձրացման հիման վրա ներկոլտնտեսային իրավական հարաբերությունների կատարելագործումը. սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման հիման վրա միջկոլտնտեսային և կոլտնտեսային-պետական հարաբերությունների զարգացումը։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Կրակը կտրում է գրանիտը

*Ջերմակտրիչը քար մշակելու գործիք է։ Այն ոչ մեծ սարք է, ատրճանակի տեսքով, փոքրիկ այրման խցիկով, որի մեջ թթվածին ու կերոսին է մղվում։ Նյութը քայքայվում է բոցի բարձր ջերմաստիճանի տակ։ Խցիկը սառեցնելու համար խողովակներից մեկով ջուր է տրվում։ Կրակի շիթը կառավարվում է երկու վենտիլներով, որոնց թափանիվները գտնվում են սարքի բռնակի վրա գործարկման փականի հետ միասին։ Ջերմակտրիչով մշակում են ջրաղացաքարերը, երեսպատիչ սալաքարերը, ճանապարհների եզրաշարդման քարերը։ Բացի դրանից, այդ սարքը կարող է կտրել բետոն, երկաթբետոն, դժվարահալ մետաղախարամ։*

## Նոր մեքենաներ ոռոգման համար

*Հիդրոտեխնիկայի և մելիորացիայի Ադրբեջանի գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները նախագծել են ինքնատիպ «ДН—1» անձրևող ապարատները։ Դրանք հարմարեցվում են ճնշումային խողովակաշարքի վրա։ Այդ երրորդ անձրևող հարմարանքն է, որ մշակել են ինստիտուտի աշխատակիցները վերջին ժամանակներս։*

*Բաքվի մեխանիկական գործարանը և Մինգեչաուրի գյուղատնտեսական մեքենաշինության գործարանը ձեռնամուխ են եղել ինքնագնաց ագրեգատների՝ «ДМ—60» անձրևող մեքենաների և անիվավոր անձրևող խողովակաշարքերի փորձնական նմուշների արտադրությանը։ Այդ հարմարանքները նախատեսվում են բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունները ոռոգելու համար։ Այդ նույն նպատակների համար այժմ կիրառվող մեքենաներից դրանք տարբերվում են կառուցվածքի պարզությամբ և մեծ արտադրողականությամբ։*

*Նոր անձրևող հարմարանքների մասսայական թողարկումը կսկսվի 1964 թվականից։*

## Ավելի սննդարար և էժան

*Ուրալի պոլիտեխնիկական ինստիտուտի գիտնական-քիմիկոսները մշակել են արժեքավոր հանքային պարարտանյութ՝ ամոնիումի ֆոսֆատ արտադրելու նոր տեխնոլոգիա։ Նոր պրեպարատը ամոնիումի սուլֆատի համեմատությամբ երեք անգամ ավելի սննդարար նյութեր է պարունակում և զգալի չափով էժան է։ Նախատեսված է երկրի մի շարք քաղաքներում հարմարանքներ ստեղծել ամոնիումի ֆոսֆատ արտադրելու համար։*

## Նոր շինանյութ

*Նոր արհեստական նյութ ապակեկրովելիտից կարելի է պատրաստել ծածկ, խոշոր բլոկներ, երեսպատման սալեր։ Նոր շինանյութը ստացվում է ավազից և ապակուց, որոնց վրա ավելացնում են ոչ մեծ քանակությամբ կրեմնեֆտորային նատրիում։ Գունավոր պոլիմերային շերտի հետ մամլված ապակյա կրովելիտն ունի գեղեցիկ դեկորատիվ տեսք։ Դրանից պատրաստված իրերը գործարանային մամլիչի տակից դուրս գալուց մեկ օր հետո կարելի է օգտագործել շինարարության մեջ։ Նոր արհեստական շինանյութը ստեղծվել է ՍՍՌՄ Գետշինի շինանյութերի ֆիզիկո-քիմիական մեխանիկայի Մոլդավական բաժանմունքում։*

## Գույնը զրահ է

*Բաղնիքների, լվացքատների, խոհանոցների և բարձր խոնավություն ունեցող այլ շինանյութերի պատերը և առաստաղները մշտապես «լալիս» են։ Ջրի կաթիլները քայքայում են ներկը և շինությունը շատ շուտ ստանում է անհրապույր տեսք։ Բայց ահա հակակոնդեսացիոն ներկով ներկված պատերը չեն վախենում խոնավությունից։ Այդ ներկը պատրաստվում է պոլիվինիլացետատային էմուլսիայի և հատավորված խցանի խառնուրդից։*